# ՏԻԳՐԱՆ Բ.

ԵՒ

# ՀԱՅ-ԼՈՒԿՈՒԼԼԵԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԸ

---

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԺԶ.

# ՏԻԳՐԱՆ Բ.

ԵՒ

# ՀԱՅ-ԼՈՒԿՈՒԼԼԵԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԸ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1926

ԿՈՒՐՏ ԷՔՀԱՐԴ

# ՏԻԳՐԱՆ Բ.

ԵՒ

# ՀԱՅ-ԼՈՒԿՈՒԼԼԵԱՆ ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԸ

---

ԱՇԽԱՏԱՍԻՐԵՑ

Հ. ԳԱՐԵԳԻՆ ԳԱՐԱՆՖԻԼԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1926

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Համբաւաւոր Պրոֆ. Լեման-Հաուպտի աշակերտներէն՝ Դր. Կուրտ Էքհարդի, տասնեակ տարի մը յառաջ "Լուկուլլոսի հայկական արշաւանքները "Die armenischen Feldzüge des Lukullus", (ի թերթին "Klio", Հտ. Թ. տետր 4, Հտ. Ժ. տետր 1 եւ 2. Լայպցիգ 1909—1910) անուն ի լոյս ընծայած լուրջ մէկ ուսումնասիրութիւնն առիթ ընծայեց մեզ ներկայ աշխատասիրութեանս:

Ուսումնասիրութեանս նիւթը կը կազմէ մեր անցեալի պատմութեան ամենափայլուն մէկ էջը. Տիգրան Բ.ի (95—54 ն. ք. Ք.) թագաւորութեան օրով Հայաստանի քաղաքային ու զինուորական անցքերու պատմութիւնը, ըստ յոյն եւ հռոմայեցի պատմագրաց: Եւ ինչպէս գործիս ընթացքէն պիտի տեսնուի, Դր. Էքհարդ՝ Տիգրանի անձին ու անոր մղած պատե-

բազմներուն մասին խօսող բոլոր աղբիւրները մի առ մի ուսումնասիրած, ու զանոնք յօրինուածական ամբողջութեան մը վերածելով, կազմած է՝ զուտ արտաքին աղբիւրներով, հայ-հռոմէական՝ պատմութեան մէջ այնչափ համբաւաւոր եղող պատերազմներուն կատարեալ, մանրակրկիտ ու քննական մէկ պատմութիւնը, ռազմագիտական-զինուորական ու տեղագրական-երկրագրական մանրամասնութիւններով:

Տիգրան Բ., իր աշխարհակալութիւններովն ու իր զինուորական ուժովը, ժամանակակից թագաւորներուն նշանաւորագոյնը համարուած էր: Անոր քառասնամեայ թագաւորութեան միջոցին Հայաստանի ներքին քաղաքականութեան մասին չունինք, դժբախտաբար, առոյգ տուեալներ, ժամանակակից տոհմային աղբիւրներու չգոյութեան պատճառով: Մեր տոհմային աւանդութիւնը այս “Մեծազօր արքայ„-ի (Կիկ.) ժամանակին ու հայ անցեալի այս ամենափայլուն էջին վրայէն վարկպարազի անցած է, եւ գրեթէ ոչինչ աւանդած մեզի, բացի չոր ու ցամաք “Մեծ„ ու “Արքայից արքայ„ մակդիրներէ: Եւ սակայն իրաւամբ կրնանք կոչել Տիգրանայ իշխանութեան

*ժամանակը իր աննման փառաւորու-թեանը հետ-թէև կարճ ժամանակ միայն- հայ ազգին անձնաւորութեան ժամանակը և բարձրակէտը Հայաստանի ազգային զարգացման: “Տիգրանէ առաջին պէտք ենք փնտռել հայ ազգ. Տիգրանէ անդին Հայը սաղմ՛ է անկերպարան. Տիգրանի օրով Հայը կը ծնանի, ի չափ կը հասնի ու կը ծերանայ միանգամայն„ (Լէօ. Պատմ. Հյց. Բ. 129):*

*Տիգրան Բ.ի արտաքին քաղաքակա-նութեան մասին մեր ունեցած բոլոր ծանօ-թութիւնները, գրեթէ առանց կամ՛ նուազ, ժամանակակից յոյն ու լատին աղբիւր-ներէ են, որոնց միջոցով կրնանք հա-կակշռել տոհմային քրիստոնեայ պատմա-գրաց անվստահելի աւանդութիւնները:*

*Դր. Էքհարդ, որ անծանօթ է հայ լեզուի, իր այս ընդարձակ ուսումնասիրու-թեան համար ո՛չ միայն յոյն ու լատին հին աղբիւրներն աչքի առջև ունեցած է, այլ նաև այն նիւթը շօշափող պատմական, աշխարհագրական, ուղեգրական են. նո-րագոյն գրականութեան հետեւած է քայլ առ քայլ:*

*Ներկայ ուսումնասիրութեանս բնա-գիրը կը բաղկանայ 99 մեծադիր էջերէ:*

*Սոյն էջերու մէջ խտացուցած է բազմահմուտ հեղինակը ոչ միայն հայ-հռոմէական այս պատերազմներուն լիակատար պատմութիւնը՝ անթերի քննութեամբ ու ռազմական դէպքերու մանրամասն նկարագրութեամբ, այլ եւ համոզիչ փաստերով ապացուցած եւ ճշգրիտ նշանակած է հնախոյզ պատմագէտներու միջեւ երկարամեայ վէճերու առարկայ եղող Տիգրանակերտ քաղաքին իսկական դիրքն ու տեղը, եւ այն կէտը՝ ուսկէ անցած էին Լուկուլլոսի հռոմէական լեգէոնները՝ Տիգրանակերտը գրաւելու համար:*

*Պրոֆ. Լեման-Հաուպտ, որ Տիգրիսի անցքի տեղւոյն մասին նախապէս հակառակ կարծեաց թեր էր, հեղինակիս անհերքելի փաստերէն յաղթահարուած՝ “Ես ալ այժմ կը յարիմ„, կը գրէ (տ.* Armenien einst und jetzt, I. Bd., 516) *“կարծեաց իմ աշակերտիս՝ Կուրտ Էքհարդի, որ Լուկուլլոսի հայկական արշաւանքներուն վրայ գրած իր ուսումնասիրութեանը մէջ բոլոր դրդապատճառները նկատի առնլով, պերճօրէն կ՚ապացուցանէ„ ու կը մատնանշէ Տիգրիսի անցքին ճշգրիտ տեղագրութիւնը:*

*Այս վկայութիւնն ինքնին, իր իսկ ուսուցչին բերնէն, պերճախօս ապացոյց մըն է արդէն, գիտնական աշխարհին առջեւ հեղինակիս ուսումնասիրութեան գտած բարձր գնահատութեան, որ գրաւական մըն է ինքնին հեղինակիս անձին, ու անոր այս՝ մեր ազգային պատմութեան համար անգնահատելի գործին՝ ներքին արժէքին:*

Հ. Գ. Գ.

## ԱՂԲԻՒՐՆԵՐ


### Ա. ԱՄՓՈՓ ԵՐԿԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

Th. Reinach: Mithradates Eupator König von Pontos. Übersetzt von A. Goetz, Leipzig 1895.

Th. Mommsen: Römische Geschichte, Band II und III. Berlin 1902/4.

B. Niese: Grundriss der römischen Geschichte. München 1906.

C. Neumann: Geschichte Roms während des Verfalles der Republik. Band II. Breslau 1884.

Drumann: Geschichte Roms, bearbeitet von P. Groebe, Band IV. Berlin 1899ff.

E. Schürer: Geschichte des jüdischen Volkes im Zeitalter Jesu Christi, Band I. Leipzig 1890.

Ed. Meier: Geschichte des Königreiches Pontos. Leipzig 1879.

Fr. Hommel: Geschichte des alten Morgenlandes. Leipzig 1904.

### Բ. ՄԱՍՆԱԳԻՏԱԿԱՆ ԳՈՐԾԵՐ

*ա) Հռովմէական կառավարութիւն:*

Marquardt: Römische Staatsverwaltung, Band II. Leipzig 1884.

*բ) Չափագիտականք:*

Fr. Hultsch: Griechische und römische Metrologie. Berlin 1882.

C. F. Lehmann-Haupt: Das altbabylonische Mass- und Gewichtssystem als Grundlage der antiken

Gewichts-, Münz- und Massystems. Stockholm 1889. (Vortrag vom VIII. internationalen Orientalisten-Kongress.)

գ) Ուղեգրականք, Աշխարհագրականք ևն·

H. B. Lynch: Armenia. London 1901.

H. v. Moltke: Briefe über Zustände und Begebenheiten in der Türkei. Berlin 1841.

L. E. Brcwski: Der obere Tigris, Globus 53. Braunschweig 1888.

Ritter: Erdkunde, Band IX und X.

K. Koch: Die kaukasischen Länder und Armenien nach Reiseschilderungen. Leipzig 1855.

F. Kaulen: Assyrien und Babylonien. Freiburg 1891.

C. F. Lehmann-Haupt: Կը տեղեկագրէ ուսումնական արշաւանքին ի Հայս. ի Թերթս Verh. d. Berl. anthrop. Ges. 1899. էջ 586–614. Mitteilungen der Hamburger geographischen Gesellschaft XVI, 1900 և. Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes XIV. Wien 1900.

W. Belck: Aus den Berichten über die armenische Expedition, Zeitschrift für Ethnologie, 31. S. 236ff. Berlin 1899 և. Der Weg Xenophons auf seinem Rückzuge bis in die Ebene von Alaschgert. Verh. d. Berl. anthrop. Ges., S. 661 ff.

H. Karbe: Der Marsch der Zehntausend vom Zapates zum Phasis-Araxes. Progr. d. Königstädt. Gymnasiums zu Berlin 1898.

C. F. Lehmann-Haupt: Armenien einst und jetzt. Reisen und Forschungen. Erster Band: Vom Kaukasus zum Tigris und nach Tigranokerta. Berlin 1910.

դ) Տիգրանակերտի դիրքի մասին:

H. Kiepert: Monatsberichte der Akademie d. Wissenschaften zu Berlin 1873.

H. Kiepert und Th. Mommsen: Hermes IX. Berlin 1875.

Sachau: Abhandl. d. kgl. Akademie d. Wissenschaften zu Berlin 1880.

C. F. Lehmann-Haupt: 1. Über Tigranokerta. Verhandlungen der 46. Versammlung deutscher Philologen und Schulmänner Leipzig 1902. 2. Verhandlungen der Berliner anthropologischen Gesellschaft 1899. S. 600 ff. եւ 3. Klio. Beiträge zur alt. Gesch. 1908, Heft 3 u. 4: Eine griechische Inschrift aus der Spätzeit Tigranokertas.

W. Belck: Zeitschrift für Enthnologie 31, 1899, S. 263 ff.

*բ) Քարտէզագրականք:*

Heinrich Kiepert: Atlas antiquus. Tabelle IV. Berlin 12. Auflage եւ Nouvelle carte générale des provinces asiatiques de l'empire Ottoman. Berlin 1884. 6 Blätter 1:1.500.000.

H. B. F. Linch: Armenia. London 1901.

Heinrich Kiepert: Zum Aufsatz von Sachau. 1889.

Richard Kiepert: Karte von Kleinasien. 24 Blätter 1:400.000. Berlin 1902—1906. Մեզի կարեւորներն են Մալաթիա եւ Դիարբեքիր.

## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Տիեզերական պետութեան համար Հռոմայեցի ժողովրդեան մղած բազմաթիւ պատերազմներու մէջէն նշանաւոր եղած էին Պոնտոսի թագաւոր՝ Միհրդատ Զ. Եւպատորի դէմ մղած երեք պատերազմները։

Եթէ Հռոմայեցիք չյաջողեցան այս պատերազմներն ալ, որ ոչինչ ընդհատութեամբ 25 տարիէ աւելի տեւեցին, մէկ հարուածով վերջացընել, պատճառն ոչ այնչափ անոնց այսքան երկար տեւողութիւնն էր եղած, որչափ նախ՝ յամառ դիմադրութիւնն ու անձկուն ոգին ասիացի բռնապետին, որ շարունակ ու նորանոր գունդեր կազմելով Հռոմէական լեգէոններու դէմ կը ղրկէր, եւ երկրորդ՝ Հռոմի մէջ ծագած յեղափոխութիւնն ու խառնակութիւնը, որ կը զուգադիպէր Միհրդատեան պատերազմներուն։

Պոնտոսի թագաւորն արդէն անգամ մը զգացած էր Հռոմէական զէնքերուն գերակշռութիւնը, երբ Սիլլա՝ պոնտացի զօրախումբերը մի առ մի պարտութեան մատնելէ ետքը, զինքն ալ ստիպած էր Դարդանոսի խաղաղութեան դաշինքը կնքելու։ Այսու հանդերձ Միհրդատի անհան-

դարու ոգին, որ չէր գիտեր վհատիլ, շարունակ նորանոր ծրագիրներ կը յօրինէր. թէ ինչ կերպ կրնար վերջ տալ իր մոլեգին թշնամիներէն։ Կնքուած խաղաղութեան ժամանակամիջոցն իրեն առիթ ընծայեց նոր պատերազմի մը պատրաստութեան ու սպառազինման։ Երբ ինքզինքը բաւական զօրաւոր զգաց թշնամւոյն հետ չափուելու, իսկոյն վերսկսաւ 74ի որոշիչ եւ իր վերջին պատերազմը։

Զարմանալի է թէ ինչպէս կրցեր էր այս ատենի, համեմատաբար փոքր թագաւորը այնչափ երկար դիմադրել հզօր Հռոմայ կիրթ ու վարժ բանակներուն, իր անվարժ ու անկարգ հրոսներովը։ Ասոր մեկնութիւնը սակայն պարզ է, եթէ նկատի առնունք քաղաքային կռիւներով պառակտուած հռոմէական հասարակապետութեան այն շրջանը, եւ այն յուզումնալից ու խառնակ կացութիւնը որ կը տիրէր նոյն ատենները աշխարհիս հզօրագոյն քաղաքին մէջ։

Այս պատերազմին այնչափ երկար տեւելուն մէջ սակայն նպաստեցին նաեւ կուսակցական նախանձընդդէմ ատելութիւնները, որով ծերակոյտը թոյլ չտուաւ հռոմէական բանակին քաջ հրամանատարին իր տարած յաղթութեանց պտուղը վայելել, այլ պաշտօնանկ ընելով զինք, տեղը անտաղանդ մէկը հրամանատար կարգեց։ Հռոմ խաղաղելէ եւ Պոմպէոս լիազօր իշխանութեամբ ընդհանուր հրամանատար կարգուելէ ետքը միայն կարելի եղաւ հասարակապետութեան այս ահաւոր ու ոխերիմ թշնամին զսպել։

Սակայն մինչեւ հոն՝ դեռ պէտք պիտի ըլլար կատարի ու արիւնահեղ պատերազմներ մղել։

Պատերազմին առաջին կիսուն յանձնուեցաւ հրամանատարութիւնը ազնուատոհմ Լիկինոս Լուկուլլոսի, որ արդէն յառաջագոյն, Սիլլայի ներքեւ, մեծ յաջողութեամբ մասնակցած էր Պոնտոսի թագաւորին դէմ մղուած պատերազմներուն։ Լուկուլլոս Թշնամւոյն գիրքերը մի առ մի գրաւելէ, ու Կաբիրայի ճակատը շահելէ յետոյ, ստիպեց զՄիհրդատ իր հայրենի ժառանգութիւնները թողուլ եւ իր փեսային՝ Տիգրանի, Հայոց արքային քով ապաստանիլ։ 72 թուին վերջերն էր, երբ երկրակործան թագաւորը մի միայն 2000 հեծեալներու ուղեկցութեամբ մտաւ Հայաստանի հողը՝ Ցալասուրա սահմանաբերդին քովէն անցնելով[1]։ Միհրդատ կը յուսար թէ իր փեսան պիտի փութար օգնել իրեն զէնքով ու զօրքով, իր պետութեան պաշարուած քաղաքները, որոնք դեռ յամառութեամբ իրենց զիրենք Հռոմայեցւոց դէմ կը պաշտպանէին, ազատելու, եւ կամ գոնէ Տիգրան ինքնին իր հայազգունդ զօրաց գլուխն անցած Լուկուլլոսի վրայ պիտի ուզէր քալել։ Միհրդատի յոյսն ի

¹ Plutarch, Luc. c. 19 եւ Appian, bell. Mithr. c. 82. Սահմանաբերդիս անուան յիշատակութիւնը Պլուտարքոսն է. անգլիայն գիրքն անհնար է ճշդել։ Ռամզայ, էջ 414. զայն Եուլէրէք-դաղի մօտ կը համարի Կիլիկարէ (Կարերա) Սըվազ (Սեբաստիա) երկարող պողոտային վրայ։ Այս Եուլէրէք-դաղը սակայն, ինչպէս անունէն յայտնի է, լեռնաշղթայ մըն է լոկ եւ ո՛չ թէ բնակավայր։ Հմմտ. նաեւ H. Kiepertի քարտէզը։

գերեւ եղած էր։ Սէգ հայը բնաւ չհետաքրքրուեցաւ իր ծերունի աներոջ վիճակովը, ոչ իր քովը հիւրասիրեց զայն եւ ոչ մխիթարական կամ քաջալերիչ խօսք մը խօսեցաւ անոր։ Մերժեց նոյն իսկ անոր ունկնդրութիւն շնորհելը[1], եւ ցոյց տուաւ անոր իր պետութեան մէկ հեռաւոր անկիւնը՝ ճախճախուտ, հետեւաբար խիստ վատառողջ տեղ մը, իբր բնակավայր[2]։ Թէեւ կարգեց Միհրդատի արքայավայել ռոճիկ մը[3], սակայն ինչ էր այս ամէնը, եթէ ոչ կալանաւորութիւն մը պատուաւոր։

Տիգրան, որ գիտնալու էր Հռոմի հետ վաղ թէ անագան պատերազմի մը բռնուելու անհրաժեշտ հարկը, պէտք չէր անսալ իր նենգամիտ խորհրդատուներուն, որոնք զինքը շարունակ իր աներոջ դէմ կը գրգռէին. նա պէտք էր պատեհ առիթը յօգուտ գործածելով՝ անյապաղ օգնութեան փութալ Միհրդատի, իր ամբողջ ուժովն ու զօրութեամբը։ Հոս է ահա Տիգրանի մեծագոյն սխալը՝ արդիւնք իր կարճամիտ ու կարճատես ամբարտաւանութեան։ Իրօք ալ յարմարագոյն վայրկեանն էր Հռոմայեցւոց վրայ գրոհ տալու, քանի ի սկզբան անհոգ ու անտարբեր էր եղած հայ զէնքին բախտը պոնտականին միացնելու։

Հռոմէական լեգէոնները շարունակական ճակատամարտներէ ի սպառ պարտասած՝ սաս-

---

[1] Memnon, c. 46.
[2] Plut., Luc. c. 22.
[3] App., Mithr. c. 82.

պողաբար պէտք ունէին դադարի, որպէս զի պոնտական պետութեան Հերակլիա, Սինոպէ, Ամիսոս, Եւպատորիա եւ Ամաստրիս գլխաւոր ամրոցները գրաւել կարենային։ Այն այս գիր-քերու մէջ ամրացած երկու թագաւորները, անշուշտ պիտի կարենային, ոչինչ աշխատու-թեամբ, Պոնտոսը վերագրաւել, եւ Հռոմայեցւոց ծանր հարուածներ տալ։ Սակայն փոխանակ ասոր, Տիգրան հայ մարտընտիր զօրաց գլուխն անցած՝ արշաւեց դէպի Ասորիք ու Փիւնիկէ, որպէս զի հարաւէն Հայաստանի սահմանները աւելի եւս ընդարձակէ[1],

---

[1] Plut., Luc. c. 21.





## ՀԱՏՈՒԱԾ Ա.

## ՀԱՅԱՍՏԱՆ ՏԻԳՐԱՆԻ ՕՐՈՎ՝ ՊԱՏԵՐԱԶՄԷ ՅԱՌԱՋ

—

### I.

*Տիգրանի աշխարհակալութիւններն ու Տիգրանակերտի հիմնարկութիւնը։*

Պարսից պետութիւնը Աղեքսանդր Մեծի ձեռքով կործանելէ ետքը, տակաւին Հայաստան առ ժամանակ մը եւս կրցաւ պահել իր քաղաքական անկախութիւնը. եւ որչափ կ'երեւայ Դիադոքներու եւ Եպիգոններու պատերազմներու միջոցին Հայաստանի ինկած դերը շատ աննշանակ եղած ըլլալու էր[1]։ Սելեւկեան թագաւորներու հանդէպ ալ, որոնց իշխանութիւնն Ասորիքի ու յառաջակողման Ասիոյ մէկ մեծ մասին վրայ կը տարածուէր, Հայաստանի ունեցած յարաբերութիւնը՝ հարկատուութեան վրայ կայացած, թոյլ հպատակութիւն մըն էր պարզ։

Անտիոքոս Գ.ի օրով, Քսերքսէս անուն բնիկ իշխանի մը պարտութենէն յետոյ միայն

---

1 Lehmann-Haupt, Armenien einst und jetzt, I. Bd., էջ 15։

Հայք կը մնեն սելեւկեան թագաւորներու իշխանութեանը տակ։ Այս նուաճման հետեւութեամբ Հայաստան երկու զատ մասերու կը բաժնուի, ու կը յանձնուի երկու բնաշխարհիկ սատրապներու կամ զօրավարներու։ Արեւելեան մեծագոյն բաժինը՝ որ է բուն Հայաստանը, կը տրուի Արտաշէսի, իսկ Եփրատի արեւմտեան կողմը տարածուող հողամասը, որ իւր մէջ կը բովանդակէր Ծոփաց աշխարհն իւր յարակից գաւառներովը՝ Զարիադրէսի։ Անտիոքոս Գ. Հռոմայեցիներէ չարաչար պարտուելով՝ անոնց հետ ամօթալից դաշինք մը կնքելու ստիպուելէն ետքը (188 Ն. ք. Ք.), երկու սատրապութիւններն ալ անկախութիւն կը հռչակեն, ու այս թուականէն սկսեալ գոյութիւն կ'ունենան երկու իրարմէ անջատ ու անկախ թագաւորութիւններ. Հայաստան, Արտաշատ գլխաւոր քաղաքով՝ Արտաշէսի, եւ Ծոփք, Կարկաթիոկերտ գլխաւոր քաղաքով՝ Զարիադրէսի սերունդներու իշխանութեանց ներքեւ։

Յամենայն դէպս, Հայոց ու Ծոփաց ձեռք բերած այս անկախութեան մասամբ մը նպաստած ու սատարած ըլլալու էր Պարթեւաց օրինակը, որոնք արդէն իսկ Անտիոքոս Գ.ի գահակալութեան սկիզբները սելեւկեան պետութենէն անջատուելով, հիմնած էին իրենց բնիկ թագաւորական գերդաստանին մականին ներքեւ՝ Արշակունեաց հարստութիւնը Արեաց նոր պետութիւն մը, որուն գոյութիւնը սակայն Հայաստանի համար՝ քաղաքային ու մշակութային գար-

գաղման կրկնակ տեսակէտէ մեծ ու ճակատագրական նշանակութիւն պիտի ունենար[1]։

Սելեւկեանց պետութեան վերջանալովը, հայ թագաւորի մը, Տիգրանի, սելեւկեան ժառանգութեան տիրանալու պարագան՝ անտեսնելու դէպք մըն է պարզապէս։

Այս Տիգրանը (Բ.)[2], Տիգրան Առաջնոյն մէկ որդին, եւ Արտաշէսի հիմնած հայ արքայական տան ծնունդը[3], իր մատաղ հասակին մէջ պատանդ էր տրուած Պարթեւաց, որոնց հետ թշնամացած էր իր հայրը։ Վերջնոյն մահուընէն ետքը, Թող տուին Պարթեւք հայ պայազատին իր հայրենիքը վերադառնալ, պայմանաւ սակայն որ այս հրամանին փոխարէն՝ Տիգրան խոստանայ իրենց թողուլ Հայաստանի արեւելեան ծայրագաւառներէն 70 հովիտ։

Իսկ 95ին[4], Հայաստանի հայրենաւանդ հողերուն տիրացաւ Տիգրան, մինչ հարաւարեւմտեան կողմը՝ Տոփաց աշխարհին վրայ, Զարիադրէսի սերունդէն, կ'իշխէր Արտանէս։ Ա՛յն ինչ հօրը գահը բարձրացած, երիտասարդն Տիգրան գահընկէց ըրաւ իր դրացին Արտանէսը, եւ անոր թագաւորութեան երկիրները

1 Ընդ.

2 App., Syr. c. 48.

3 Strabo, XI, 14, 15 (532), ուր նաեւ հետեւեալը։

4 Տիգրանի գահակալութեան տարին անկէ յայտնի է որ, 71—70ին ձմեռը, երբ Ապպիոս Կղաւդիոս՝ Լուկուլլոսի կողմէ դեսպանութեամբ Տիգրանի դրկուեցաւ, ատ տղէն քսանուհինգ տարիէ ի վեր կ'իշխէր (Plut., Sull., c. 21)։

նուաճելով՝ ինքն իշխեց երկու թագաւորութեանց վրայ միահեծան։

Այս ատենէն սկսաւ Տիգրանի՝ արուարձական պետութեանց դէմ մղած երկարամեայ պատերազմներուն շրջանը, որ միջոցին նա իր երկրին սահմաններն երթալով ընդարձակեց։ Տիգրան նախ արշաւեց Հայոց ոսոխ Պարթեւաց վրայ, ու ետ առաւ անոնցմէ իր տուած 70 հովիտները, կորզեց անոնց ձեռքէն նաեւ Նինուէի ու Արբելայի շրջակայ հողամասերը եւ Ադիաբենէ երկիրը։ Նոյնպէս իրեն հպատակեցուց Մեծ Մարաստանի ու Կորդուաց իշխանները, զորոնք իրեն հարկատուներն ըրաւ, եւ պարտաւորեց զանոնք, պատերազմներու ժամանակ, իրեն զօրահասոյց ըլլալ։ Ասոր վրայ անցաւ Միջագետք, կցեց զայն Հայաստանի, նուաճեց արար ցեղերը, որոնք Միջագետաց անջրդի ու անբերրի մասին մէջ կը բնակէին[1]։ Ցոյց տուաւ անոնց բնակութեան համար մարդաբնակ կողմեր, իր սահմաններուն աւելի մօտիկ պողոտաներ, ուր անոնք կարաւաններէ, հաւանօրէն ի հաշիւ Տիգրանի, ճանապարհավարձ կը գանձէին[2]։

Տիգրան այսպէս բոլոր արուարձականներն իրեն հպատակեցընելէ յետոյ, Փոքր Ասիոյ ներքին գործերուն եւս սկսաւ խառնուիլ, Կապադովկիոյ գահակալութեան կռիւներուն միջամուխ ըլլալով (իր 93ին)։ Այս յանդուգն քայլը

[1] Strabo, XVI, 1, 26 (747)).
[2] Անդ. XVI, 1, 27 (748).

առնլու զինքը դրդողն ու մղողն էր Միհրդատ, որ իւր գաղտնի պատրաստութիւնքը տեսնելու եւ պետութեան սահմանները ընդարձակելու նպատակաւ զՑիգրան իրեն գործիք առած՝ անոր միջոցաւը կ'իրագործէր իւր գաղտնի ծրագիրները։ Դիւրաւ կրցաւ Միհրդատ՝ երիտասարդ եւ տակաւին անփորձ ու փառասէր իշխանն իւր գաղափարներուն գործադրութեանը շահելով զայն ա՛յնպէս մը ուղղել, որ իւր բոլոր դիտաւորութեանցը գաղափարակից ըլլար ու մտադիւր հետեւէր իւր խորհուրդներուն։ Բայց որպէս զի Ցիգրանն աւելի եւս իրեն կապէ, եւ անոր վրայ կերպով մը առաւել ճնշում բանեցնել կարենայ՝ Միհրդատ անոր կնութեան տուաւ իւր Կլէոպատրա դուստրը[3]։ Այս միջոցով կ'երեւայ թէ Ցիգրանը բոլորովին իրեն շահած եղաւ, եթէ նոյն իսկ մասնաւոր պայման մը դրած չէր, ամուսնութենէն յառաջ, Հայոց կողմէ իրեն մատուցուելիք օգնութիւնը։ Որովհետեւ Ցիգրան իսկոյն Կապադովկիա արշաւելով հալածեց Արիոբարզանը, որ քիչ յառաջ Հռոմայեցւոց օգնութեամբը կապադովկեան գահը բարձացած էր, ու անոր տեղ, Միհրդատի թելադրութեամբը, զԳորդիոս Թագաւոր կարգեց Կապադովկիոյ վրայ (հաւանաբար 93ին)[1]։

Գահընկէց Թագաւորն իւր գանձերովը միասին շիտակ Հռոմ փախչելով, հոն Հռոմէական ծերակոյտէն օգնութիւն խնդրեց։ Ծերա-

---

1 Just. XXXVIII, c. 3, § 2.

կոյտը որ հաշտ աչքով չէր դիտեր ասիացի երկու մեծազօր թագաւորներու այս աստիճան զօրանալը, տեսնելով միանգամայն իրենց դաշնակից ու բարեկամ Արիոբարզանի երկիրներուն անոնց կողմէ գրաւուիլը, իսկոյն հրամայեց Կիլիկիոյ կուսակալ՝ Կոռնելիոս Սիլլայի, անյապաղ Կապադովկիա մտնել եւ Արիոբարզանն իւր թագաւորութեան մէջ վերահաստատել։ Սիլլա, 92ին, անցաւ Տաւրոսը սակաւաձեռն զնդով, զարկաւ շուտ մը Գորդիոսի զօրքն եւ նոյնին օգնութեան փութացող հայ պահակագունդը, վանեց զանոնք կապադովկեան սահմաններէն անդին, եւ Արիոբարզանը դարձեալ իւր նախկին իշխանութեանը մէջ հաստատեց[1]։

Այն միջոցներուն էր որ Իտալիոյ մէջ ծագեցաւ դաշնակցաց պատերազմը, որով Հռոմ իւր մտադրութիւնն այլուր սեւեռել ստիպուած ըլլալով, հարկադրուած էր նաեւ Ասիոյ զանազան կողմերը ցրուած իւր լեգէոնները Իտալիա փոխադրել։ Այս շատ նպաստաւոր պարագայ մըն էր Միհրդատի համար, իւր գաղտնի ծրագիրները գործադրելու։ Ուստի գրգռեց, համոզեց Հայերը դարձեալ երկրորդ անգամ Կապադովկիա արշաւելու։ Հազիւ թէ Սիլլա մեկնած էր Փոքր Ասիայէ, երկու զինակից արքաները իրենց դաշինքը նորոգելով՝ պայման դրին իրարու մէջ, երկուստեք եղած ծախքով մղուած

1 Livius, Epit. 70; App. Mithr. c. 57; Plut., Sull., c. 5.

յաղթական պատերազմներէ ետքը, նուաճուած երկիրները բաժին պիտի իյնային Միհրդատի, իսկ աւարը՝ Տիգրանի։ Եւ որովհետեւ, ըստ Յուստինոսի[1], մինչդ այս միջոցին տեղի կ'ունենար նաեւ Բիւթանիոյ թագաւոր՝ Նիկոմեդէս երեցին մահը, պէտք է, հետեւաբար, ընդունիլ, որ Հայոց այս երկրորդ արշաւանքը պատահած է 91ին[2]։ Այս յարձակումը Ապպիանոս ալ կը յիշատակէ[3]։ Ըստ վերջնոյս, Միհրան (Mithraas) եւ Բագուաս (Bagoas) կը հալածեն Արիոբարզանը, մինչ, նոյն պահուն Միհրդատ, զբաղած էր Նիկոմեդէս կրտսերը — նոյն ինքն անոր Սոկրատ Քրեստոս եղբօր ձեռքով — երկրէն դուրս վտարելու։ Նիկոմեդէսի արտաքսումը, Յուստինոսի պատմածին նայելով, տեղի ունեցած է անոր հօրը՝ Նիկոմեդէս երեցին մահուընէն անմիջապէս ետքը, որ պատճառ իսկ էր եղած այս պատերազմներուն։ Ակներեւ է ուրեմն որ Ապպիանոսէ ու Յուստինոսէ յառաջ բերուած երկու վկայութեանց ալ հիմը միեւնոյն դէպքն է որ կը կազմէ։ Ուստի եւ Միհրանով եւ Բագուասով մենք հասկընալու ենք Տիգրանի երկու զօրավարները։ Տիգրան՝ ի փոխարէն իր այս հաւատարիմ զինակցութեան, պարտուած Կապադովկիայէ Հայաստան կը փոխադրէ գերիներու անթիւ բազմութեան հետ նաեւ

---

[1] Գիրք 38. գլ. 3. § 4։

[2] Համմ. Հայոց Կապադովկիոյ վրայ ըրած այս արշաւանքը. Eduard Meyer, Geschichte des Königreichs Pontos, էջ 95 եւ 96։

[3] Mithr., c. 10.

անբաւ հարստութիւն. իսկ երկիրն իր բոլոր քաղաքներովը միասին կը գրաւուի ի հաշիւ Միհրդատի[1]: Կապադովկիոյ վրայ Հայոց երրորդ յարձակումն ալ կ'երեւայ թէ նոյնօրինակ սակարկութեան մը յանգած ըլլալու էր: Այս յարձակման վրայ, Ապպիանոս[2], իր պատմութեան մէջ, Միհրդատեան երրորդ պատերազմէն յառաջ կը ճառէ, ուր կ'ըսէ. «Բնակիչք Մաժաքայ, որպէս եւ այլոց մետասան քաղաքաց Յունաց, ընդ բնաւ իբրեւ բիւրք երեսուն՝ ածան առնել շէն մարդաշատ զնոր նիստ արքայից արքայի, ահաւորին Տիգրանայ»:

Իբր 83ին[3], Տիգրան ասորական սահմաններն անցնելով այն երկիրն ալ Հայաստանի կցեց, եւ հոն սատրապ կարգեց Մագադատէս[4] իւր զօրավարը: Այդպէս Ասորիքի ժողովուրդը, ինչպէս Յուստինոս կը պատմէ[5], ինքնակամ հրաւիրեց զՏիգրան՝ սելեւկեան թագաւորներու ներքին ու անվերջանալի պատերազմներէն ձանձրացած, թէ այս վերջինս ինքնաբերաբար գործած էր այս յարձակումը հին սելեւկեան պետութեան վերջին մնացորդներուն վրայ. այս կէտը մեզի համար կարեւորութիւն չունի այստեղ. առաջինը սակայն ստոյգ է, որ Տիգրան

1 Just. XXXVIII, c. 3, § 5.
2 Mithr., c. 67.
3 Տես տարեթիւիս մասին App., Syr., c. 48, ուր կը յիշատակուի թէ 69ին Տիգրան 14 տարիէ ի վեր կ'իշխէր:
4 App. Syr., c. 48.
5 Just. XL, c. 1, § 3.

առանց դժուարութեան այդ երկիրն ալ իր իշխանութեանը ենթարկեց, որովհետեւ երկրին ու անոր վրայ իշխողներուն զօրութիւնը կատարելապէս սպառած լմնցած էր, ներքին ու պառակտիչ պատերազմներու երեսէն։

Հոս, Անտիոքոս Կիւզիկենոսի որդւոյն՝ Անտիոքոս Ժ. Եւսեբոսի, — որ Տիգրանի Ասորիք մտած ատեն, նոյնին արդէն մեծագոյն մասին վրայ կ'իշխէր, — եւ Անտիոքոս Ը. Գրիւպոսի հինգ որդւոցը իրարու դէմ մղած եղբայրասպան պատերազմներէն վերջը դեռ անոնցմէ երեքը կ'ապրէին. Փիլիպպոս, Դեմետրիոս, որոնք փոքրիկ մաս մը միայն կրցեր էին շահիլ, եւ Անտիոքոս ԺԲ[1]։ Ըստ երեւոյթին Տիգրանի միջամտութիւնն ալ օգուտ մը չէր կրցած ունենալ, շարունակական պատերազմներով քայքայած ու վատթարացած այս դժբախտ երկրին մէջ բաղձացուած խաղաղութիւնը վերահաստատելու։ Անտիոքոս Եւսեբոս Պարթեւաց դէմ մղած պատերազմի մը մէջ կը մեռնի։ Ասոր մահուան վրայ Փիլիպպոս եւ Դեմետրիոս անոր հողերուն կը տիրանան ու զանոնք իրարու մէջ կը բաժնեն։ Ի վերջոյ սակայն իրենք եւս իրարու հետ զարնուելով, Դեմետրիոս գերի կ'իյնայ ու կը սպաննուի։ Հիմայ ալ Անտիոքոս ԺԲ. Փիլիպպոսի գահին թեկնածելով՝ երբ կը պատրաստուէր անոր վրայ

---

1 Անտիոքեան այս յաջորդութիւնները տես Schürer անդ. էջ 135 եւ 136. Յիշեմ նաեւ Wilckenի Antiochosի վրայ գրած յօդուածը (տես Pauly-Wissowaի), որ սակայն շատ կէտերու մէջ Schürerէ կը տարբերի։

քալել, Արետաս՝ տաճիկ իշխանին դէմ մղած մէկ ճակատին մէջ կը զարնուի, եւ իւր թագաւորութեան երկիրը, խոր Ասորիք, անկէ կը գրաւուի[1]։

Այսպէս ուրեմն Տիգրանի գերիշխանութիւնն անգամ, որ ամբողջ Ասորիքի վրայ՝ մինչեւ եգիպտական սահմանները կը տարածուէր[2], չկրցաւ այս խռովայոյզ երկրին խաղաղ ու անդորր կեանք մը պարգեւել։ Ասորիքը Հայաստանի կցելէ ետք, Տիգրան իր իշխանութեան սահմանները տարածեց մինչեւ արեւելեան Կիլիկիա, եւ ապա, դաշտային Կիլիկիոյ վրայ եւս, որով Հայաստան անմիջական կերպով սահմանակիցն եղաւ Հռոմայեցւոց, որոնք արդէն 102է (Ն. Ք. Ք.) ի վեր գրաւած էին քարուտ Կիլիկիան[3]։

Հսկայածաւալ պետութեան մը համար, որպիսին էր Տիգրանի կազմած նոր հայ պետութիւնը, ի հարկէ նոր ու պատշաճաւոր մայրաքաղաքի մը պէտքն զգալի պիտի ըլլար։ Հինը, Արտաշատ, որ Մեծ Հայոց միջնաշխարհին արեւելեան կողմը՝ Երասխի հովիտը հաստատուած էր, բացարձակապէս անյարմար էր այլ եւս իբր կենդրոն ծառայելու մեծատարած պետութեան մը, որուն ծանրութեան կենդրոնը հետզհետէ դէպի հարաւ ու հարաւ-արեւմուտք փոխա-

1 Այս ժամանակաշրջանի մասին ամէնէն մանրամասն կը խօսի Յովսեփոս, Antiquit. XIII, 13, 4—16, 4։ Նոյնպէս Եւսեբիոս, Chron. I, 259—262. Յուստինոս, գիրք 38—40 եւ Ապպիանոս, Syr., գլ. 48 եւ 69։

2 Appian, Syr., c. 48—49.

3 Mommsen, Röm. Gesch. II, 133.

գրուած էր։ Տիգրան իսկոյն ըմբռնեց այս անպատեհութիւնը, եւ հարկ համարեցաւ փնտռել յարմարագոյն վայր մը, ուր կարենար իւր նոր մայրաքաղաքը հիմնել։ Եւ այս ամենայարմար նկատեց Մայաֆարկինի (Նփրկերտ) քաղաքին դիրքն ու անոր միջավայրը։

Այս առթիւ կ'ուզեմ հոս՝ Տիգրանակերտի դիրքին հետ առնչութիւն ունեցող գիտական հակաճառութեանց մասին՝ քանի մը խօսք ընել։

Խնդիր էր հնախոյզ գիտուններու միջեւ, թէ արդեօք Տիգրանակերտ քաղաքը Տիգրիսի ձախակողման եզերքը, որ է ըսել՝ հայկական բարձրաւանդակի սարաւանդին քովերը փնտռելու է, թէ աջակողման եզերքը՝ Միջագետքի մէջ։ Այս շատ կարեւոր խնդրոյ մասին հոս ըսելիքս հարեւանցի ակնարկ մը պիտի ըլլայ լոկ, որովհետեւ արդէն Լեհման-Հաուպտ, որուն անսութիւնը շատ ընդունելի կը գտնեմ, այն խնդրոյ մասին իւր ունեցած վարկածը, իւր ուղեգրական ուսումնասիրութեանց մէջ, մանրամասնօրէն բացատրած է եւ զօրաւոր փաստերով ապացուցած[1]։

Մինչ բազմաթիւ հնախոյզ գիտուններ[2] Տիգրանակերտի դիրքին մասին մասամբ յայս-

[1] C. F. Lehmann-Haupt, Armenien einst und jetzt. Reisen und Forschungen. Erster Band: Vom Kaukasus zum Tigris und nach Tigranokerta. Գլ. 12 եւ 15։

[2] Հմմտ. այս մասին W. Belck, Aus den Ber. der arm. Expedition, S. 266 ff., ուր մանրամասնութիւնն ամփոփ կերպով զատուորուած է։

կոյս, մասամբ յարևկոյս Տիգրիսի արտայայտուած էին. Մոմմսէն իւր խիստ տեսակէտովը հարցն ի նպաստ աջակողմեան եզերքին լուծեց[1]։ Անոր յառաջ բերած պատճառաբանութիւններէն ազդուած՝ Հ. Կիպերտ ևս լքեց իր տեսութիւնը, որուն ի նպաստ գիպող փաստեր յառաջ բերած, և գիրքը ձախ եզերքին վրայ որոշած էր[2], թէև կրնար կարեւոր կէտ մըն ալ ձախ գիրքին ի նպաստ յիշել[3]։

Այս նոր տեսը, զոր Կիպերտ հին հայաքաղաքին հետ կը նոյնացընէր, Սախաու թէև համոզիչ կերպով մերժեց, սակայն միւս կողմէ՝ աջակողմեան եզերքը հաստատուն պահեց. Նա կը կարծէր, Մարդինի մօտ՝ Թէլ-Էրմէնի աւերակոյտին մէջ գտած ըլլալ հին Տիգրանակերտը, սակայն միտ չէր դրած որ անոր կողքին մղուած ճակատամարտին տորոպագրութեան մէջ հին աւանդութեան հետ չէր կարելի համաձայնիլ[4]։

Հակառակ այս ամենուն, Լեման-Հաուպտ վճռական կերպով անգամ մը ևս — և այն

---

1 Mommsen, Die Lage von Tigranokerta, Hermes IX (1875), S. 129 և Ges. Schriften, Bd. IV, S. 323. Հոն սապէս կը վերջացընէ իւր խօսքը. «Ով որ այս [illegible] Հայկական եզերքը կը զետեղէ, այնպիսին [illegible] պատմութիւնը այնպէս, ինչպէս եթէ [illegible] [illegible] ալ [illegible] ուզէր» (էջ 332)։

2 [illegible] (Monatsbericht der Akad. der Wissenschaften zu Berlin. 1873).

3 Hermes IX (1875), S. 130.

4 Abhandlungen der kgl. Akademie d. Wissensch. zu Berlin. 1880.

թերեւս ընդ միշտ — ջրեց Մոմսէնի ազդեցութեան տակ եղած ենթադրութիւնը, ու փոխադրեց Տիգրանակերտը դէպի Մայաֆարկին (Նփրկերտ), Տիգրիսի ձախակողմը[1]: Իսկ այս տեսութեանը ձեռնտու էր նաեւ Մոլտկէի կարծիքը, որ՝ թէեւ առանց մանրամասն փաստեր յառաջ բերելու, Նփրկերտը՝ Տիգրանակերտ կը համարէր[2]:

Յամենայն դէպս սակայն այս մեկնութիւնը ուղղակի կը հակառակէ Տակիտոսի[3] եւ բացայայտ վկայութեանը, թէ Տիգրանակերտը միմիայն 37 հռոմէական մղոն, հետեւաբար իբր 55 քիլոմետր Մծբինէ հեռու կը գտնուէր: Հեռաւորութեան այն աստիճանը մատնանիշ կ'ընէ մեզի Թուր-Աբդինի լեռները, սակայն ոչ՝ Տիգրիսի ձախակողմը գտնուող ոեւէ մէկ գիրը: Նմանապէս Ստրաբոնի այս մէկ հատուածը τὸ Μάσιον, τὸ ὑπερκείμενον τῆς Νισίβιος ὄρος καὶ τῶν Τιγρανοκέρτων[4] մեր տեսութեան բոլորովին ներհակը կը վկայէ պիտի ըսենք, եթէ Մասիոս անուամբ, ինչպէս սովորաբար ընդունուած է, այն լեռնաշղթան միայն հասկընանք, որ գետին աջա-

---

1 Verhandlungen der 46. Versammlung deutscher Schulmänner und Philologen, Strassburg եւ' Eine Inschrift aus der Spätzeit Tigranokertas. Klio VIII (1908), S. 497—520.

2 Briefe aus der Türkei, Nr. 48, S. 287. Վերջերս Ռիթերը Կիպերտ եւս, իր Փոքր Ասիոյ քարտէսին մէջ, Լեման-Հաուպտի այս տեսութեանը յարեցաւ:

3 Տարեգիրք ԺԵ. գլ. 5:

4 Strabo XI, 12, 4 (522).

կողման եզերքին երկայնութեան զուգահեռապէս կը ձգի։

Եթէ այդպէս է, ապա ուրեմն Սոփաքան եւս քաղաքը գետին աջակողման եզերքը գտնուած ըլլալու էր, ինչ որ կը հաստատուի յոյն աշխարհագրին Տիգրանակերտը յիշատակող ուրիշ երկու հատուածներէն ալ[1], որոնց մէջ նա այն վայրը Միջագետքի մաս կը համարի, եւ ըստ այնմ, զայն Մծբինի՝ ինչպէս նաեւ վերը, Խառանի ու Նիկեփորիոնի կից կ'անուանէ։ Յայտնի է թէ այդ քաղաքները կը գտնուէին Մասիոսի հարաւակողմը, հետեւաբար Միջագետքի մէջ[2]։

Հակառակ այս ամէն վկայութեանց, Կիբերտ սրամիտ կերպով մտադիր ըլլալ[3], որ Տակիտոսի քով նշանակուած յիշեալ թիւը, յամենայն դէպս, սխալ աւանդուած ըլլալու է. որով փոխանակ septem et trigintaի թերեւս շատ աւելի ճիշդ ըլլայ եթէ centum et triginta սրբագրուի։ Գալով Սոփաքանի վկայութեանց, անոնք այլապէս եւս կրնան մեկնուիլ եւ ըստ այնմ ալ հակիրճուիլ, ինչպէս Լեման-Հաուպտ կ'ապացուցանէ[4]։ Վերջնոյս մէկ մանրակրկիտ հետազօ-

---

1 XII, 1, 9 (539) եւ XVI, 1, 23 (747).

2 Բոլորովին անդրադարձական կը ձգայ՝ ապաւաղուած ըմբռնում. չորրորդ անգլիր մ'ալ, ուր Սոփաքան մեր քաղաքը կը յիշատակէ XI, 14, 15 (532). πλησίον τῆς Ἰβηρίας μεταξὺ ταύτης τε καὶ τοῦ κατὰ τὸν Εὐφράτης Ζεύγματος.

3 Akademie der Wissenschaft, 1873.

4 Philologentag, S. 30. Ըստ իւր տեսութեան, «Տաւրոս, որուն արեւելեան իբր Մասիոս նշանակուած մա-

տութեան համեմատ, Հայոց լեռները կը պատկանին Մասիոս լեռնաշղթային, որ Տիգրիսի թէ աջակողմը եւ թէ ձախակողմը կ'երկարի։ Եւ որովհետեւ Միջագետք ըսելով, ի հնումն, ոչ միայն Եփրատի ու Տիգրիսի միջեւ տարածուող երկրամասը կը հասկցուէր, այլ եւ շատ անգամ — ըստ քաղաքական ու վարչական (նահանգային) բաժանման — նաեւ Տիգրիսի ձախակողմեան ափունքը՝ անդրտիգրիսեան երկիրները, մինչեւ Հայոց լեռները, ասկէ կը հետեւի որ, Ստրաբոն, հակառակ իր ակներեւ տարաձայնութեանը, մեզի հետ կը միաբանի լիովին[1]։

Մեր այս տեսութեան կռուան մըն է նմանապէս այն պարագան, որ Տակիտոսի յիշատակած[2] Նիկեփորիոսը՝ Պլինիոսի քով նշանակուած է իբր ձախակողմեան մէկ գետակիցը Տիգրիսի[3]։ Մեծ նշանակութիւն ունի դարձեալ մեզի համար Եւտրոպիոսի[4] մէկ վկայութիւնը, զոր Լիւիոսէ առնլով կ'ըսէ, թէ Տիգրանակերտը Աղձնեաց (լա. Arzanene) երկրին սահմաններուն մէջ կը

ափն կը վերաբերին Հայոց-գաղթերը կոչուած կարեւոր լեռնագօտին, կ'երկարի արեւելեան-հարաւ-արեւելեան ուղղութեամբ, ու կ'անցնի արեւմտեան Տիգրիսը. յարաբերաբար այս վերջինէն ներքեւ եղող Հաստորէկի կոչուած վայրը. այս ընդունմամբ Թուր (Թուր-Աբդին) կը կազմէ արեւելեան-հարաւ-արեւելեան առաջնը Տաւրոսի։

1 Lehmann-Haupt, անդ. էջ 31։

2 Տարեգիրք ԺԵ. ԳԼ. 4։

3 Nat. hist. VI, 27, § 129. Համմ. Kiepert, Hermes IX, էջ 141, ծանօթ. 4. եւ Lehmann-Haupt, Philologentag, էջ 28. ընդդէմ Մոմմզէնի։

4 Breviarium VI, c. 9.

գանուէր, որով անուղղակի կերպով կը մատնանշէ մեզ գիրք մը, զոր պէտք է Տիգրիսի Հիւսիսակողմը որոնել։

Տիգրանակերտի դիրքի մասին Հայ Հնագոյն տեղեկութեանց՝ Լեման-Հաուպտ միայն մտադիր եղած է[1]։ Փաւստոս[2] կ'ըսէ. «Այն աւերեցին (Պարսք առ Շապհով) զմեծ քաղաքն Տիգրանակերտ որ էր ի գաւառին Աղձնեաց յիշխանութեան բդեշխին,» «Նմանապէս կը պատմէ նոյն պատմագիրը[3], թէ սուրբն Եպիփան՝ Մեծ Ծոփաց Մամբրէ անապատին մէջ ապրելէն ու Ծոփքը քրիստոնէական լոյսի առաջնորդելէն ետքը, անցաւ Աղձնեաց աշխարհը, ու հոն եւս քրիստոնէութիւնը քարոզեց, վանքեր հիմնեց, եւ Տիգրանակերտի մէջ վկայարան մըն ալ հաստատեց ի յարգանս քրիստոնեայ վկայից որոնք հոն նահատակեցան Դ-րդ դարուն։

Այն մարտիրոսաց ի պատիւ Տիգրանակերտ այնուհետեւ Մարտիրոսաց քաղաք (Martyropolis) անուանուեցաւ, որ արաբի բարբառով Miyāfāriqīn (= Նփրկերտ[4]), իսկ աւելի յետոյ արաբական տիրապետութեան օրով Maijā-

---

1 Lehmann-Haupt, Verhandl. d. 46. Versammlung deutscher Philol. u. Schulm. 25 ff.

2 Փաւստոս Բիւզ.՝ Պատմ. Հայոց. Վենետ. 1832. էջ 142.

3 Ընդ. 221.

4 Մ եւ Ն սկզբնատառերու ձայնադարձման նկատմամբ Հմմտ. Հայ. Մծբին եւ ասոր. Nṣīwīn (Nisibis). Հիւբշմ. Հին Հայոց տեղւոյ անունները էջ 165 (Թրգմ. Հ. Բ. Պիլեզիկճեան, Վիեն. 1907. Ազգ. Մտ. Ն-Գ.).

fariqin ձեւն առաւ (Թրք. Սիլվան, Ֆարկին, կամ՝ քարտէսներու մէջ սովորաբար արաբական հնչմամբ՝ Մայաֆարկին)[1]։

Զգիտեմ թէ ինչ հիման վրայ կը կարծէ Սախաու, թէ Փաւստոս եւ իրեն ժամանակակից պատմագիրները՝ Տիգրանակերտի դիրքն ու անդ-ւոյն մասին իրենց բոլոր պատմածները Պաղատ-ուէ առած, կամ գոնէ անկէ ազդուելով գրած ըլլան[2]։

Հետեւաբար Լիւիոս-Եւտրոպիոսի եւ Փաւստոսի իրարմէ անկախաբար գրած երկին վկայութիւնը իրարու կատարելապէս համաձայնելով՝ կու գան հաստատել մեր ըսածը, թէ Տիգրանակերտ Աղձնեաց սահմաններուն մէջ կը գտնուէր։ Ասոնց տուած վկայութեան կը ձայնակցին, առ հասարակ, բոլոր հին աշխարհագիրները, որոնք նմանապէս կ'ընդունէին մեր քաղաքին՝ գետին ձախակողմը գտնուած դիրքը, ինչ-

[1] Յետնագոյն ժամանակի, ինչպէս նաեւ արդի Հայ գրականութեան մէջ շատ անգամ կրկնուած սխալ մըն է Դիարպէքիրի քաղաքին Տիգրանակերտ անուանումը։ Ա՛ս աշխարհագրական վրէպ մըն է լոկ, զոր հարկ է ուղղել։ Մեր հին Տիգրանակերտը կը համապատասխանէ, ըստ ամենայնի, այսօրուան Ֆարկին կամ Մայաֆարկին (Սիլվան) քաղաքին, մինչդեռ Դիարպէքիր՝ ներկայ անունն է հնագոյն ու տարբերատեսակ արձանագրութեանց մէջ իսկ յիշատակուած Ամիդա քաղաքին (Հյ. Ամիդ. Ամիթ)։ Սոյն այս քաղաքին նախնական անունը առկուին այսօր իսկ կը գործածուի թուրք պաշտօնական շրջանակներու մէջ, տալով նոյնին Կարա-Ամիթ (սեւ Ամիթ) անունը. (Համմ. նաեւ H. Kiepert, Nouvelle Carte générale des provinces asiatiques de l'empire ottoman.

[2] Հիւբշմ., անդ, էջ 415։

պէս յայտնի կը տեսնուի Պեւտինգերեան ու Պտղոմեան քարտէսներէն[1]։

Վերջապէս, խնդրոյ առարկայ քաղաքին դիրքին ու տեղւոյն մասին արտայայտուած անյա-չափ այլազան կարծիքներէ ու բուռն վիճաբանութիւններէ մը յետոյ, Լեման-Հաուպտ, որ մեր բնագաւառին անծանօթ մնացած շատ մը կողմերը թզաւ ու քըլաւ չափած, եւ յատկապէս Տիգրանակերտի կնճռոտ խնդրոյն վերջնական լուծումին իր գիտական ուշեւորութեան նպատակակէտը դրած էր, Հայաստանի անցեալին ու ներկային ծանօթ իր հիանալի ուսումնասիրութեանը մէջ, մանրամասն պատճառաբանութեամբ ու անհերքելի փաստերով վերջնականապէս ապացուցուց, որ արդի Սիլվան կամ Ֆարկին քաղաքն է հարազատ ու անվիճելի ներկայացուցիչը, մեր հին Տիգրանակերտ ոստանին[2]։

Եթէ տեղւոյն դիրքը նկատի առնուինք, պիտի միտինք ըսել, թէ յիրաւի Տիգրան լաւագոյն ընտրութիւն մը չէր կարող ընել։ Այն վայրն արդէն Տիգրանի համար պատմական մեծ նշանակութիւն ունեցած էր. որովհետեւ երբ նա Հայաստանի արեւելեան ծայրագաւառներէն մեծամեծ երկիրներ՝ իբր փրկանք իր պատան-

---

1 Երկու քարտէսներն ալ Կիպերտի քով (Akad. d. Wissensch., 1873). Պեւտինգերեան քարտէսը տես նաեւ Սախաուի քով (Akad. d. Wissensch., 1880). Տիգրանակերտի դիրքը ճիշդ նշանակուած Ptolem. V, 13. § 22.

2 Armenien einst und jetzt. Հատ. Ա. գլ. 13 եւ 16.

դութեան, Պարթեւաց թողլով, յաջողած էր Հայաստան մտնել ու իւր հօրը պայազատել, հոս, Տիգրիսի ձախ եզերքը կապած էր իր գլուխը իւր նախնեաց թագը։ Այս պարագան միայն ինքնին, զոր Ապպիանոս կը յիշատակէ[1], բաւական համարուելու է տարամերժելու գետին աջակողմը գտնուող ոեւէ դիրք։ Ստրաբոն բացայայտ կ'ըսէ[2], թէ Տիգրան՝ Արտանէսը պարտութեան մատնելէ ու Հայաստանի հարաւարեւմտեան երկիրները՝ որ է ըսել, Ծոփքն իւր գաւառներովն հանդերձ, Հայաստանի կցելէ ետքը, հետզհետէ իւր պետութեան սահմանները ընդարձակեց նորանոր աշխարհակալութիւններով, որոնց կարգին կը յիշատակէ նաեւ Միջագետքը։ Ասկէ կը հետեւցնենք, որ Տիգրանի գահակալութեան միջոցին՝ Ծոփաց աշխարհը Մեծ Հայոց մաս չէր։ Ակներեւ է ուրեմն, որ Տիգրան հայրենի հողը մտնելէն ետքը՝ Տիգրիս գետն ի վեր յառաջացած, եւ Տարօնեան շղթային Հազրու լեռնագօտին՝ այժմեան Սիլվանի քով, հասնելէ ետքը՝ հայ արքայական թագն իւր գլուխը կապած է։ Հոս այս լեռնագօտին բնական սահման մը կը գծէ դէպի հարաւ։ Ե՛ս եւս համակարծիք եմ Լեման-Հաուպտի[3], թէ սոյն այս լեռներն էին որոնք բուն Հայաստանի նոյն ատենուան հարաւային սահմանագլուխը կը կազմէին, ինչպէս տակաւին

---

1 Mithr. c. 67.

2 XI, 14, 15 (532).

3 Հմմտ. վերը էջ 31, ծան. 4 եւ էջ 32, ծան. 1։

այսօր ակներեւ կը տեսնուի ի Հարկէ. Հայաստանի սահմանները քաղաքականապէս յարափոխ ըլլալուն, պետութեան յառաջակողման մասերուն կամ Հարեւան երկիրներուն սահմանները ճիշդ գծել կարելի չէ. վասն զի այդ Հողերը մերթ Հայոց մերթ Պարթեւաց ձեռք կ'անցնէին։ Սակայն ընդհանրապէս խօսելով՝ կարելի է Տիգրիսը քաղաքական սահման նկատել Հայաստանի Հարաւակողման. եւ արդէն Հայ բարձրագաւառին աշխարհագրական կազմութիւնը ճիշդ ալ սոյն Հազրու ծայրալեռներէն սկիզբ կ'առնու։ Ներկայիս իսկ, Տիգրիսի քովերէն այս կողմերն այցելուին մտադրութիւնը կը գրաւէ Նփրկերտի ունեցած եզական ու առաջնակարգ դիրքը. շատ Հաւանական է որ Տիգրանակերտի ծագումէն յառաջ ալ Հոն, միեւնոյն տեղւոյն վրայ, ուրիշ՝ Տիգրանի նախնեաց կողմէն կերտուած քաղաք մը եւ կամ գիւղ մը գոյութիւն ունեցած ըլլայ։ Ուստի եւ Տիգրան, բնական է որ, թագաւորութեան Հանդէսն ոչ թէ իր պետութեան ձեւէ մէկ անկիւնը, այլ՝ արդէն իսկ գոյութիւն ունեցող — ըլլա՛յ ան նոյն իսկ բոլորովին աննշանակ — մէկ վայրը սարքել ուզած պիտի ըլլայ։ Հետեւաբար Տիգրանակերտի հիմնարկութիւնը ստեղծագործութիւն մը չէ ոչինչէ, հապա՝ աւարտումն է նախնաբար փոքրիկ քաղաքի մը, որուն ունեցած նպատակայարմար դիրքը գրաւած էր Տիգրանի մտադրութիւնը։

Ուղղակի Հայլու լերանց ստորոտը[1], սակայն Տիգրիսի համեմատութեամբ — ուսկէ անդին գետինն արագ արագ կը սկսի բարձրանալ — բարձրահայեաց դիրք ունեցող այս քաղաքը՝ ռազմագիտական տեսակէտով իսկ լա՛ւ յենակէտ մը կ'ընձեռէ։ Քաղաքին արեւմտեան ու հիւսիսային կողմերը պաշտպանուած են բնական ամրութիւններով, մինչ անոր հարաւային ու արեւելեան մասերը նուազ պաշտպանուած են։ Յատկապէս քաղաքին արեւելակողմը՝ գետինը համեմատաբար աւելի տափարակ է։ Տիգրան՝ իր այս դաստակերտը համաչափ հիմերով օժտելու նպատակով, քարէ պատուարի մը կառուցանել տուած էր, որուն վրայ յետոյ բարձրացուց յիսուն կանգուն բարձրութեամբ ստուար պարիսպները, որոնց ներքնակողմը՝ անջրպետներն օգտագործելու նպատակով, զետեղել տուաւ ապաստաններ ու շտեմարաններ։ Արեւմտեան ու հիւսիսային կողման պարիսպները մեկնակ էին ու պարզ, եւ միայն տեղին տեղին հսկայ աշտարակներով ամրապնդուած։ Իսկ ասոր ներհակ, քաղաքին արեւելեան կողմը կանգնել տուած էր եզական ամրութեամբ երկպատիկ պարիսպներ ու պատնէշներ։ Այսքան ու այսպիսի հաստատուն ամրութիւններով օժտուած իր մայրա-

---

1 Յաջորդին համար հմմտ. Լեման, անդ, եւ Sitzungsber. der anthrop. Gesellschaft (21. Oktober 1899) եւ W. Belck: Aus den Berichten d. arm. Expedition. Zeitschr. für Ethnologie, 1899, S. 283 ff.

քաղաքը գրեթէ անառիկ ըլլալու աստիճանի հաստ էր։ Քաղաքամէջը, սակայն մի դէպի արեւմուտք, կը բարձրանար տասնուհինգ մետր բարձր բլրակը, որուն վրայ կը հանգչէր ամրակուռ միջնաբերդը քաղաքին։ Այն միջնաբերդէն կրնար զննուիլ լեռնագաւառին բովանդակ առաջակողման մասերը՝ մինչեւ Բասմանսու, հարաւակողմը՝ մինչեւ մեծ միջագետեան տափաստանին հիւսիսային սահմաններն եզերող սարաւանդները։ Քաղաքին մօտերէն կը բղխէ Ֆարկին-սու գետակը, որուն ջուրերը պատնէշներու շուրջը հոսելով, բնական ամրարտակներ ձեւացուցած էին հոն։ Մայրաքաղաքին ջրամբարին պաշտպանութեանը համար, մօտակայ տեղ մը, ական մը եւս կանգնել տուաւ[1], որուն աւերակները ցայսօր կ'երեւան[2]։

Այս էր գիրքը Հայ պետութեան նորակերտ մեծ ոստանին, որուն նախկին մեծութեան ու ամրութեան պերճախօս վկաներն են տակաւին այսօր՝ Նփրկերտի աւերակները։

Հնութեան այս մեծ քաղաքն իւր մեծութեանը համեմատ մարդաշատ ընելու տենչէն վառուած՝ չվարանեցաւ Տիգրան բնական միջոցներու եւս դիմել։ Այս մտադրութեամբ քալեց 77ին Կապադովկիոյ վրայ, եւ բնակիչներէն 300.000 հոգի հորդան տուաւ Հայաստան, որոնց մէկ մասն իւր նոր մայրաքաղաքը նստե-

1 Տիգրանակերտի շինութեան մանրամասն տարագրութիւնը՝ Համմ. App. Mithr. c. 84։

2 Համմ. Belck անդ՝ էջ 272։

ցուց[1]։ Գլխաւորաբար Մաժաք[2] շատ մեծնացաւ այս ահաւոր արշաւանքէն։ Տիգրան իւր զօրքովը Տաւրոսն անցնելով՝ մտաւ Կիլիկիա, եւ ասպատակեց մինչեւ Փիւնիկէ[3]։ Ընդ ամէնը տասներկու ծաղկեալ քաղաքներու բնակիչները խաղացուց դէպի Հայաստան, որպէս զի իւր դաստակերտը մարդաշատ ընէ[4]։ Տիգրանակերտի բնակչութիւնը կազմող այլեւայլ ցեղերու կարգին՝ Պլուտարքոս յատկապէս կը յիշատակէ Ասորեստանցիներ, Մարեր ու Կորդուացիներ[5], զորոնք նմանապէս բռնադատած էր Տիգրան։

Եթէ այսքան նեղած ու տառապեցուցած էր Յոյները՝ քաղաքացիներու ընտիր կորիզ մ՚իւր նոր քաղաքին մէջ ունենալու բաղձանքէն մղուելով, նուազ խիստ վերաբերմունք չէր ցոյց տուած նաեւ իւր թագաւորութեան ազնուատոհմ աւագանւոյն հանդէպ, զորոնք եւս բռնադատեց՝ իրենց կալուածները յարքունիս գրաւելու սպառնալեօք, փոխել իրենց բնակավայրերը, եւ երթալ բնակիլ Տիգրանակերտ, որպէս զի քաղաքը շքեղութեան հետ՝ շռայլութիւն ու զեղխութիւն եւս ցուցադրէ[6]։ Գեղարուեստն անգամ նկատի առաւ Տիգրան այնու, որ յոյն դերասանական խումբ մը վարձեց՝ Տիգրանա-

1 App. Mithr. c. 67 եւ Plut. Luc. c. 21.
2 Strabo XII, 2, 9 (539).
3 Strabo XIV, 5, 2 (669).
4 Strabo XI, 14, 15 (532).
5 Luc. c. 27.
6 App. Mithr. c. 87 եւ Plut. Luc. c. 27.

կերտի մէջ բացուած ընդարձակ ու շքեղ թատրոնին համար[1]։

Այսքան յարատեւ ոգւով ի գործ դրած բռնական միջոցներով հասաւ վերջապէս Տիգրան իր նպատակին. այն փոքրիկ ու աննշանակ քաղաքը, որուն վրայ երբեմն իր նախնիքն իշխեր էին, գոգցես հմայելով, ծաղկեալ ու բարգաւաճ նոր քաղաքի մը վերածեց, որ ամէն տեսակէտով արժանի էր՝ փայլուն յաղթանակներով ընդարձակուած ու զօրացած Հայաստանի մը մայրաքաղաքը հռչակուելու, եւ որուն բնակիչները կարող էին, մեծ դիւրութեամբ, իրենց ապրուստը հայթայթել՝ քաղաքին բարեբեր ու ջրաշատ շրջականերէն։

Այսպէս յաւիտենականութեան համար կարծես շինուած այս շքեղ քաղաքը չկարողացաւ եւ ոչ իսկ առաջին թշնամի յարձակման տոկալ, ու տակաւին լիովին իսկ չաւարտած՝ քայքայեցաւ ու զոհ գնաց ահաւոր փլուզման։

2.

Հայաստանի մշակութային վիճակը։

Այսպիսի չարաբաստ վախճան մը Տիգրան մտքէն անգամ դեռ չէր անցուցած, երբ իր աներն իրմէ օգնութիւն խնդրեց։ Նա տակաւին իւր զօրութեան գագաթնակէտը կը գտնուէր, եւ իւր բարձրամիտ ամբարտաւանութիւնը չափ ու

---

1 Plut. Luc. c. 29.

սահման չէր ճանչնար։ Մարական Ատրպատականի եւ Ադիաբենէի թագաւորներն իր հարկատուներն էին[1], Կորդուաց իշխանը պարտաւոր էր իր ամբողջ զինուորական ուժովը Տիգրանի զօրավիգ ըլլալ։ Աղուանք ու Վիրք դաշինքով իրեն հետ կապուած էին[2], եւ մինչեւ իսկ Պարսից ծոցին հեռաւոր եզերքները բնակող Տաճիկները, եւ դեռ ուրիշ բազմաթիւ փոքր ցեղեր մասամբ անկէ նուաճուած եւ մասամբ դաշինքով անոր վերին իշխանութիւնը ճանչնալ ստիպուած էին։

Որոշ կը նկարագրէ Պլուտարքոս[3] Տիգրանի վարած արքունի կեանքը։ Հպատակ թագաւորներէն շատերը սպասուկի նման անոր կը ծառայէին շարունակ։ Երբ արքայն տեղ մը ձիավարէր, անոնցմէ չորսը՝ հետիոտն ու կարճ պատմուճան մը միայն վրանին առած՝ անոր կը հետեւէին։ Այգորելի ժամերուն, չորս ձեռատունկ թագաւորները, յոտնկայս, արքայական գահոյից շուրջը կը շարուէին ձեռնամած, ցուցադրելով այսու իրենց ստրկութիւնն ու խորին հպատակութիւնը։ Տիգրան իր հագած զգեստներու մէջ անգամ չէր ուրանար իր ասիացի բռնակալ մ'ըլլալը։ Ծիրանաթոյր ու սպիտակ ժապաւէններով ընդելուզուած արքունի պատմուճանին վրայէն կը կրէր համակ ծիրանիէ խոյրխորշան տառատոկը. իսկ գլուխը պսակուած էր

---

1 Plut. Luc. c. 26 եւ 27.
2 Plut. Luc. c. 26.
3 Plut. Luc. c. 21.

բարձր ու աստեղազարդ խոյրով, որուն շուրջը փաթթուած էր ասիացի թագաւորներու յատուկ ապարօշը[1]։

Այսպիսի կիսաբարբարիկ ասիականութեան հետ ուզած էր նա հաշտեցնել Հելլէն մշակոյթը։ Սակայն զայն Հայաստանի հողին վրայ պատուաստելու համար ձեռք առած միջոցներն, ինչպէս նաեւ անոր ասիական կենցաղը յայտնի կը ցուցընէին որ ինք տակաւին ըմբռնած չէր Հելլէն քաղաքակրթութեան նշանակութիւնը, եւ թէ պարզապէս իբր արտաքին շպար ուզած էր զայն գործածել՝ առանց անկէ օգտուիլ ուզելու, եւ կամ՝ անոր յառաջ բերելիք բարիքն ըստ արժանւոյն գնահատել իսկ կարենալու։ Փոխանակ առեւտրական յարաբերութիւններ մշակելով Յոյներն իւր երկիրը հրապուրելու՝ թշնամաբար յարձակեցաւ անոնց բարգաւաճ ու ծաղկած քաղաքներուն վրայ, ու անոնց բնակիչները՝ մէկ հրամանով, իւր նորակերտ ոստանը քշեց, հոն վայելելու համար յոյն քաղաքացիներու առաւելութիւնները, առանց ամենեւին խիղճ ընելու, թէ քանի քանի զարգացած մշակոյթ այս կերպով ոչնչացուցած կ'ըլլար իւր փառասիրական նպատակին հասնելու համար, եւ թէ այս ճամբով երբեք չէր կարող շահիլ իւր յոյն հպատակներուն սէրն ու համակրանքը։ Յամենայն դէպս, ինքը միայն չէր այս մասին

1 Cassius Dio, B. 36, c. 35. Այս նկարագրական գլխազարդը հայ դրամներու վրայ կը տեսնուի. տես պատկերները Ռոյնոսի քով էջ 69է անդին։

պարսաւելի։ Արդէն իրմէ շատ յառաջ ալ Փոքր Ասիոյ բոլոր մեծ քաղաքներն անով ծնունդ առին, որ անոնց իշխանները բազմաթիւ գիւղեր անխորհուրդ կերպով իրարու հետ ձուլեցին. միայն սա տարբերութեամբ որ անոնք յոյն իշխաններ էին, որոնք յունաբնակ հողամասերու մէջ համասեռ տարրները իրարու հետ միացուցին, մինչդեռ, Տիգրան, ինք օտարազգի ըլլալով, Յոյներն օտար երկիր մը փոխադրեց։ Երբ Լուկուլլոս Տիգրանակերտը գրաւեց, այն ժամանակ Տիգրանի գործին ինչ արժէք ունենալը հասկցուեցաւ։ Յոյներու հոն բնակութիւնը բռնի եղած էր. այս իսկ պատճառաւ անոնք հոն երբեք իրենց՝ հայրենիքը չէին նկատած։ Ստոյգ է թէ այս բնակութեան տեւողութիւնն ալ շատ կարճատեւ եղաւ, եւ այս սուղ ժամանակի մէջ յոյն ժողովուրդը ո՛չ նոր կարգ ու սարքին կրնար վարժիլ, եւ ո՛չ ալ՝ ինչպէս այլուր շատ մը տեղեր, յունական քաղաքակրթութեան թումբ մը կրնար հանդիսանալ զինքը շրջապատող բարբարոս ժողովրդեան մէջ։ Եւ բնաւ զարմանք չէ որ Յոյները, երբ պատեհութիւնը ներկայացաւ, ցնծութեամբ վերադարձան իրենց նախկին բնակավայրերը, դրուատելով զԼուկուլլոս իբր իրենց նոր հիմնադիրն ու բարերարը[1]։

Սակայն Տիգրանի կինը, Կղէոպատրա, Միհրդատի դուստրը, որչափ կ՚երեւայ, յունական դաստիարակութիւն ստացած ըլլալու էր. ասոր

1 Plut. Luc. c. 29.

ապացոյց է իր կողմէն Հայ արքունիք հրաւիրուելն աթենացի Ամփիկրատէս անուն հռետորին, որ սիրայօժար յանձնառու եղած էր Հայաստան գալ, մինչ յառաջ արհամարհանօք մերժած էր սելեւկեան արքունիքն երթալ բնակիլ։ Սակայն այս մարդն ալ չկրցաւ երկայն ժամանակ Տիգրանի շնորհքը վայելել, որովհետեւ վերջնոյս կասկածն իր վրայ հրաւիրած, ու անոր աչքէն ինկած ըլլալուն համար՝ ինքզինքը դժընդակ սովամահութեան մը դատապարտեց, եւ ինչպէս Պլուտարքոս կ'աւանդէ, բնաւ սնունդ առնուլ չուզելով՝ վերջ տուաւ իր կեանքին[1]։ Կղէոպատրա թագուհին մեծ շուքով անոր մարմինը թաղել տալէն ետքը՝ յիշատակարան մը եւս կանգնել տուաւ Սամփիկէի մօտ։

Մետրոդոր սկեպսացին ալ, Միհրդատի խորհրդականը, որ իր տիրոջ բարկութենէն ազատելու համար Հայ արքունիքն ապաստանած էր, ի վերջոյ Տիգրանէ Միհրդատի ձեռքը յանձնուելով՝ անդէնիտեղ գլխատուեցաւ[2]։ Ի զուր ջանաց Տիգրան այս մատնութեան արատն իր վրայէն սրբել՝ անոր ի պատիւ մեծաշուք յուղարկաւորութիւն մը սարքել հրամայելով։ — Թէ Տիգրան յոյն դերասաններու խումբ մըն ալ

---

1 Plut. Luc. c. 22.

2 Նոյնպէս Plut. Luc. 22. Հմմտ. նաեւ Strabo: XIII, 1, 55 (609/10). Ըստ այս վերջնոյս, Մետրոդոր փախուստի միջոցին կը մեռնի, սակայն չըսեր թէ հիւանդութեամբ կը մեռնի թէ բռնամահ, կ'ըսէ Միհրդատի հրամանով։

վարձած էր իր թատրոնին համար, վերեւ արգէն յիշատակեցինք։

Այսպէս ուրեմն Տիգրան հետամուտ եղաւ — ի հարկէ իր գիտցած կերպովը — հելլէնացնելու իր տէրութիւնը։ Սակայն իր այս ձեռնարկին ալ՝ նորակառոյց մայրաքաղաքին նման, տակաւին կիսով չափ իսկ չէր աւարտած, երբ յանկարծակի վրայ հասաւ Լուկուլլոս, որով այս այնքան կարճ ժամանակամիջոցի մը մէջ ուռճացած ու ընդարձակուած պետութեան մէջ յոյն մշակոյթն ու քաղաքակրթութիւնը չկրցաւ հաստատապէս արմատանալ։ Հաւանաբար Տիգրան պիտի յաջողէր իր առաջադրած նպատակին հասնիլ, եթէ յաղթական Հռոմայեցին անոր ժամանակ ձգած ըլլար։

3.

Հայաստանի բնութիւնը։

Յառաջ քան հայ-լուկուլեան պատերազմին նկարագրութեան անցնիլը՝ ակնարկ մըն ալ նետենք Տիգրանի հայրենատուր պետութեան վրայ։ Ընդհանրապէս կը բաւէ, եթէ Ստրաբոնի[1] այս երկրին մասին տուած տեղեկութիւնները նոյնութեամբ յառաջ բերենք։

Հայաստանի հարաւակողման աշխարհագրական սահմանը կը կազմէր Տաւրոսի լեռնաշղթան, որ Հայաստանը Միջագետքէն կը բաժ-

1 Strabo XI, 14, 1 (526/27).

նէր։ Ստրաբոնի այս վկայութենէն կը տեսնուի, որ նա ոչ միայն Եփրատի ու Տիգրիսի միջեւ տարածուող երկիրը Միջագետք կ'անուանէ — ինչ որ մենք միայն կ'ընենք — այլ նաեւ Տիգրիսի ձախակողմը գտնուող հարթավայրերը այս անունով կը նշանակէ. այսու առաւել եւս կը հաստատուի Լեման-Հաուպտի այս մասին ունեցած տեսութիւնը։ Արեւելքէն սահմանակից էին Հայոց՝ Մեծ Մասատան եւ Մարական Ատրպատական, հիւսիսէն, Աղուանից աշխարհը, Վրաստան եւ Մոսխեկան բարձր լեռները՝ Սեւ ծովու եզերքը, արեւմուտքէն՝ Պարխար լեռներն ու Եփրատ գետը։

Այս սահմաններն իրենց մէջ կը պարփակեն լեռնադաւառ մը, ուր խիստ արգաւանդ ու բերրի հովիտներու կողքին՝ անանցանելի ու ցուրտ լեռնաշղթեր իրարու կը յաջորդեն անընդհատ։ Այս հարուստ երկիրը՝ հակառակ իր անհուն բարձրաւանդակ մ'ըլլալուն, բաժնուած էր, ըստ Պլինիոսի[1], 120 գաւառներու։ Հայաստանի հիւսիսային բաժնին մէջ զարգացած էր բովագործութիւնը, մինչեւ իսկ ոսկւոյ հանք մը կը շահագործուէր հոն, Կարալլայի մօտերը՝ Սպեր գաւառին մէջ։ Շատ համբաւաւոր էր, ի հնումն, Հայաստանի տափաստանիկ ձիերու ցեղը՝ հայկական նմոյշ կոչուած, որ գլխաւորաբար Կոմիսենէի եւ Որքիստենէի բացավայրերը կը բուծանուէին։ Այս սրընթաց նմոյշներու պատճառաւ

[1] Nat. hist. VI. 27.

էր, գլխաւորաբար, որ Հայ զրահաւոր հեծելազօրը, որուն յետոյ պիտի անդրադառնանք, այնքան սարսափ ազդած էր թշնամի բանակներու. Հայ ազատորեարը — Եւրոպայի միջնադարեան ասպետներու նման — դաշտօրէից վրայ տիրող բարձրակառոյց ու ամուր դղեակներու մէջ կը բնակէր[1], եւ Հայ արքունի բանակին զրահաւոր ու կուռ վառեալ հեծելազօրաց գունդերը կը կազմէր. Ռայնախ[2] արդէն մատնանիշ ըրած էր որ Հայ զրահաւոր հեծելագունդերը միմիայն ազատորդիներէ կը բաղկանային, յար եւ նման Եւրոպայի միջնադարեան ասպետութեան. Այս զրահաւոր հեծելազօրուն ծագումն անպայման ասիական ըլլալու է, որովհետեւ ճիշդ միեւնոյն ձեւով կը տեսնենք նաեւ Պարսից, ինչպէս նաեւ Պարթեւաց քով[3].

Տիգրան մասնաւորաբար հոգ տարած էր նաեւ պատերազմական ճոխ գանձեր ամբարելու. Ողական ամրոցը Եփրատի վրայ, եւ Թողբերդ՝ Երասխի հովիտը, ինչպէս նաեւ Արտագերք[4] ամրոցը լի եւ լի էին ամբաւ հարստութեամբ.

Այսպիսի ճոխութեամբ ու հարստութեամբ պերճացած Տիգրանը կրնար այլ եւս արհամար-

---

1 Tacitus, Ann. XV, c. 27.

2 Նոյն. էջ 340.

3 Համեմ. ի մէջ այլոց Plut. Crassus c. 24.

4 Այս բերդաքաղաքը տխրահռչակ անուն ստացած պատմութեան մէջ, որովհետեւ Օգոստոսի մէկ թոռը՝ Կ. Կեսար հոս 9 Սեպտ. երկրորդ տարւոյն (յ. Ք.) [illegible] կերպով վիրաւորուելով նենգաւոր մատնիչէ մը, [illegible] վէրքերու հետեւութեամբ քիչ յետոյ մեռաւ.

հանդով վերաբերուիլ իւր փախստական ու երկրակորոյս աներոջ հանդէպ, եւ նոյն իսկ մերժել անոր ունկնդրութիւն շնորհել։ Սակայն իւր երկրին մէջ Միհրդատի ասպնջականութիւն տալովն արդէն առիթը տուած եղաւ Հռոմայեցւոց պատերազմի գրգռուելուն։

---

## ՀԱՏՈՒԱԾ Բ.

### 69Ի ՊԱՏԵՐԱԶՄԻ ՏԱՐԻՆ

—

### *Գլուխ Ա.*

*Մինչեւ Տիգրանակերտի պաշարումը.*

*I.*

*Լուկուլլոս կը մտնէ պատերազմ:*

Կաբիրայի ճակատով (72ին) Լուկուլլոս պոնտական բանակը փարատելէ, եւ զՄիհրդատ մինչեւ Հայաստանի սահմանները հետապնդելէ ետքը՝ ետ դարձաւ, Պոնտոսի հարթագաւառին արձակ քաղաքներին առաւ մի առ մի, եւ Միհրդատի մեծափարթամ գանձատուները ձեռք անցուց։

Պոնտոսն այսպէս գրեթէ անաշխատ իրեն հպատակեցընելէ յետոյ, Լուկուլլոս իւր զէնքերը երկրին ծովային ու ցամաքային ամրութեանց վրայ դարձուց, որոնք դեռ եւս քաջութեամբ կը դիմադրէին։ Պաշարման գործողութիւնները մինչեւ 70 տեւեցին։ Քանի հռոմայեցի լեգէոններու դիրքը ապահով չէր Պոնտոսի մէջ՝ Լուկուլլոս

հանգիստ թողուց զՄիհրդատ Հայաստանի մէջ. սակայն պաշարման գործողութեանց վերջանալուն՝ երբ ամրոցները սկսեր էին մի առ մի անձնատուր ըլլալ, իսկոյն որոշեց Տիգրանի դեսպանութիւն ղրկելով՝ անկէ Պոնտոսի արքային յանձնումը պահանջել։

Լուկուլլոս բոլոր պարագաները լաւ կշռած ու քաջ համոզուած էր, որ իր այս քայլը գրգիռ պիտի ըլլար նոր ու վտանգաւոր պատերազմի մը, եւ այն՝ օտար ու բոլորովին անծանօթ երկրի մը մէջ. վասն զի նա կարող էր գուշակել որ իր այս յանդուգն պահանջովը կրնար սէգ Տիգրանի դիւրազգած ամբարտաւանութիւնն այնպէս մը վիրաւորել, որ նա իրեն բացէ ի բաց մերժէր իր աներոջ յանձնումը։ Սակայն միւս կողմէ եւս համոզուած էր, որ հարկ էր այս արմատական միջոցին դիմել, վասն զի արդիւնքէն դատելով, լաւ ըմբռնած էր թէ Պոնտացւոյն դէմ տասնութ տարիներէ ի վեր առանց մեծ հետեւանքի մղուող արիւնահեղ պատերազմներուն վերջ կը տրուի միայն այն ատեն, երբ Հռոմայ ընդդիմամարտութեան Ասիոյ գլխաւոր ազդակը Հռոմայեցւոց ձեռքը դառնայ։ Բաց աստի, Հռոմայեցւոց համար կենսականնշանակութիւն ունեցող հարցերէն մին էր նաեւ Տիգրանի հետ իրենց բաց մնացած հաշիւներուն կարգադրութիւնը, ու անոր՝ հայկական սահմաններէն անդին աշխարհակալած բոլոր հողամասերուն յետս գրաւումը։ Տիգրանի հետ Սիլլա իր հաշուեյարդարը վաղուց արդէն աւարտած կ'ըլլար անկասկած, եթէ նոյն միջոց-

ներուն Հռոմի խառնակ կացութիւնը — որ իր անմիջական ներկայութիւնը հոն կը պահանջէր — զինքն ստիպած չըլլար դաշնակից թագաւորներու հետ Դարդանոսի խաղաղութիւնը շտապաւ կնքելով Հռոմ փութալու։ Այս պատճառաւ Սիլլա հարկադրուած եղաւ թշնամիներուն շատ նպաստաւոր պայմաններ առաջարկել, ինչ որ ուրիշ պարագաներու տակ անոնք պիտի չկարենային երբեք յուսալ։

Թէեւ Տիգրան զգուշութեամբ մերժեց իր ծերունի ու երկրակործան աներն իր քովն ընդունիլ եւ անոր ունկնդրութիւն շնորհել, այսու ամենայնիւ Միհրդատ Տիգրանի ձեռքը Հռոմէացւոց դէմ զէնք մըն էր ահաւոր, որուն հետեւանքները, ի հարկէ, չէր կարող Լուկուլլոս անտեսել։ Հայ-հռոմէական պատերազմի մը պարագային կարող էր Տիգրան զՄիհրդատ բաւականաթիւ հայ զօրքով Պոնտոս արձակել՝ Հռոմէացւոց բանակը կռնակէն զարնելու, եւ այսու անոնց բանակներն երկու կրակի մէջ առնելու։ Վտանգը մեծ էր այս կողմէ ստուգիւ, եւ ա՛յնչափ աւելի՛ որչափ պոնտացի ժողովուրդն անհաշտ ատելութեամբ մը լեցուած Հռոմէացւոց դէմ՝ մեծ ուրախութեամբ պիտի տեսնէր ու ողջունէր իր ծերունի արքային դարձն ի Պոնտոս։ Այս վտանգին առաջքն կրնար առնուլ միայն Միհրդատի մահը։

Թէ ո՛ր աստիճանի թիւր հասկացողութիւն ունէին, Հռոմի մէջ, իրերու հանգամանքի մասին, անկէ յայտնի է, որ Լուկուլլոսի հակառակորդները իր երեսը զարկին ու զինքը մեղադրեցին

որպէս թէ առ փառասիրութեան սկսած ըլլայ այս նոր պատերազմը, որպէս զի իր նախարար շահած գաւառներուն վրայ նոր մը եւս աւելցընել, եւ իր ճոխաբար վարած հրամանատարութեան պաշտօնը տեւականօրէն յառաջ վարել կարենայ։ Եւ սակայն իր բախտ մը Տիգրանի հետ ուղղակի հետեւանքն էր կանխապէս մղուած պատերազմներուն։

Ի հարկէ, մայրաքաղաքին կուսակցութիւններուն նոյն առեննուան քաղաքագիտական հայեացքը այնչափ հեռու չէր երթար, որ անոնք տեւական յաջողութեան համար պէտք եղած վերջին քայլը հետեւողաբար առնուին։ Փոքր զօրավարին փայլուն յաղթանակներն ակնթարթի մէջ զգլխեցին թէեւ ռամիկ դասակարգը, սակայն ռամկին այս խայտանքը՝ խանդանքը միայն շարժեց Լուկուլլոսի նախանձոտ հակառակորդներուն։ Ստոյգ է որ այս դոռոզ ազնուականը բնաւ հասկցած՝ փորձած անգամ չէր ռամկին համակրանքը շահելու անհրաժեշտութիւնը քաղաքական ասպարէզին վրայ։ Նա իր ազնիկամի ու քմահաճ գործերու կերպերովը, եւ ուրիշներու դիտողութիւններն ու առարկութիւնները հպարտութեամբ քամահրելովը՝ իրեն դէմ հանած էր մեծազդեցիկ թշնամիներու ահաւոր խմբակ մը։ Ա՛յն ինչ որ երջանկութիւն պատճառած էր Ասիա նահանգին աղքատ ու հարստահարեալ բնակիչներուն՝ պարտքերու խնդրոյն նպաստաւոր լուծմամբը, ճիշդ ալ այդ մարդասիրական գործը գլխաւոր դրդապատճառներէն մին էր եղած իրեն դէմ

հանելու ոխերիմ ու անհաշտ թշնամութիւնը ազդեցիկ ասպետներու՝ Հոռոմայեցի գրամապաշտ ազնուականութեան։ Անոնք բացերես կամ գաղտնաբար զօրավարին դէմ այնուհետեւ գրգռեցին, եւ հեշտիւ իրենց կողմ շահեցան ոչ միայն ռամիկը, այլ եւ կաշառման միշտ հակամէտ ցեղապետները գլխովին, որոնք նմանապէս սկսան Լուկուլլոսի դէմ գրգռել կամազուրկ ամբոխը։ Այսպէս ուրեմն Տիգրանի վրայ արշաւանք ընելու իր դիտաւորութիւնը՝ մնացածին պատճառաբանութիւններով՝ շահախնդրական շարժառիթներու վերագրել ուզեցին իր հակառակորդները, եւ այնպէս ալ ցոյց տուին քննախնդիր ռամկին, որ արդէն ազնուականաց դէմ ակռայ կրճտելուն՝ դիւրաւ հաւատաց ամէն ըսուածին։

Սակայն ժողովուրդին այս արուեստապէս արծարծուած թշնամութիւնն ի հարկէ այնպիսի հետեւանքներ հազիւ թէ ունենար, եթէ՝ ուղիղ 70 տական թուականին, Պոմպէոսի եւ Կրասոսի հիւպատոսութեամբը սիլլայական ազնուապետական կառավարական ձեւէ դէպի ռամկավարութիւն ամբողջական յեղաշրջում մը տեղի ունենար։ Այս յեղաշրջումէ առաջին տուժողներէն մին եղաւ նոյն շրջանի նշանաւորագոյն ազնուական եւ Սիլլայի ձեռնասունը՝ նոյն ինքն Լուկուլլոս։ Զարմանալի չէ հետեւաբար, որ կացութեան այս կերպ տիրացած կառավարութիւն մը բացէ ի բաց մերժէր անոր ո՛եւ է կերպով սատարել, որով նո՛յն իսկ ծերակոյտը՝ որ նմանապէս — թէեւ ակամայ — ռամկավարներու աղ-

գեցութեան տակ կը գտնուէր լիովին, ամփոփուե-ցաւ զայն լքել։ Հետեւաբար Լուկուլլոս իւր անպհական միջոցներուն միայն ապաստանած, առանց անհրաժեշտ եղած ույժերը համախմբել իսկ կարենալու, յանգգնեցաւ իր յղացած խիզախ գաղափարն իրականացընել։ Այս կերպ ահա վիժեցաւ, ի վերջոյ, այնքան ճարտարօրէն սկսուած ձեռնարկ մը։

Լուկուլլոս պէտք էր իր հրամանին տակ գտնուող հինաւուրց զինուորները, որոնց ծառայութեան շրջանն արդէն լրացած անցած էր, արձակել, եւ զանոնք երիտասարդ ու թարմ ույժերով փոխարինել. անոնք այլ եւս ձանձրացած էին պատերազմէլէ, ու ակամայ կը հետեւէին իրենց հրամանատարին ձայնին։ Մինչ անոնք իրենց շահած բազմաթիւ յաղթութեանց պտուղը վայելել կը սպասէին, այժմ կը հրամայուէր անոնց հզօրագոյն թշնամւոյ մը վրայ արշաւել, եւ այն՝ Եփրատէ անդին տարածուող լեռնային ու վտանգներով լի, համակ անծանօթ երկիր մը, ուր դեռ եւս ո՛չ մի հռոմէական արծիւ չէր համարձակած մտնել։ Խրախուսել կը խրախուսէին զինուորները՝ երկրին հարստութեանը մասին անոնց առասպելայօդ պատմութիւններ հիւսելով, սակայն անոնք այլ եւս լաւ ըմբռնած էին որ այդ ըսուած հարստութիւններէն իրենց բաժին պիտի չիյնար ամենեւին։ Արդարեւ, շատ զարմանալի է, որ Լուկուլլոս չէր կրցած, ինչպէս ի Հռոմ՝ ժողովուրդին, նմանապէս ալ հոս իր զինուորներուն համակրութիւնը շահիլ, ինչ որ

շատ դիւրաւ կարող էր ընել։ Նա իր նուաճած երկիրներուն գանձերն ու աւարն իրեն միայն կը սեպհականէր, իսկ զինուորներուն երբեք չէր թոյլատրեր աւարել։ Այսու թէեւ նա իր ժամանակին մարդասիրագոյն զօրավարի համբաւը կրցեր էր շահիլ, սակայն ոչ՝ սէրն ու համակրանքն իր զինուորներուն, որոնք կապտելու ու կողոպտելու փափագէ միայն մղուած կը կռուէին, եւ հետեւաբար կ՚ախորժէին միայն այնպիսի հրամանատարներէ, որոնք իրենց լիուլի ազատութիւն կու տային պարտուած քաղաքներն աւարի տալու։ Զինուորները կատարելապէս համոզուած էին — եւ այն իրաւամբ — որ այս ամէն պատերազմներէ իրենց համար ոեւէ շահ չկար՝ բացի տաժանքէ ու տառապանքէ, այս պատճառաւ, ակամայ ու բռնի կը հետեւէին իրենց հրամանատարին։ Հոս է ահա որ առաւելապէս կը ցոլանայ Լուկուլլոսի անուրանալի արժանիքը, ու այս առթիւ գլխաւորաբար կը նշմարուի անոր աննկուն ոգին։ Հակառակ ծերակոյտի եւ ժողովուրդին պատերազմի դէմ արտայայտած վճռական կամքին, հակառակ նոյն իսկ իր հրամանին ներքեւ գտնուող զինուորներուն իր անձին դէմ սնուցած աննպաստ տրամադրութեան, լոկ իւր փորձուած քաջութեան վրայ վստահացած եւ իւր բախտին միայն ապաստանած՝ որոշեց իր սեպհական միջոցներովը պատերազմ յայտարարել, եւ Միհրդատի յանձնումը պահանջել Տիգրանէ։

2.

*Լուկուլլոս դեսպան կը ղրկէ Տիգրանի.*

Մինչ Լուկուլլոս Ասիա գաւառին ներքին գործերովը զբաղած էր, 70/71ի ձմեռը, իր աներբ՝ Ապպիոս Կղաւդիոսը Տիգրանի ղրկեց հրեշտակութեամբ, որպէս զի Միհրդատի յանձնումը պահանջէ անկէ, եւ մերժման պարագային՝ պատերազմ յայտարարէ անոր։ Միեւնոյն ատեն Կղաւդիոս պաշտօն մը եւս ստանձնած էր Լուկուլլոսէ, այս է՝ գաղտ լրտեսել Տիգրանի հպատակ իշխաններուն անոր անձին հանդէպ տածած տրամադրութիւնները, եւ, եթէ հնար է, ջանալ գոնէ անոնցմէ ոմանց հետ սերտ յարաբերութիւններ մշակելով՝ զանոնք իր կողմը շահիլ. այնպէս որ, պատերազմի մը պարագային, Լուկուլլոս գոնէ անոնցմէ ոմանց գործակցութեան ու օժանդակութեան վրայ վստահիլ կարենար։

Ճիշդ ալ իր յանձնարարութեան այն այս երկրորդ մասին կատարման համար Տիգրան Հռոմէական դեսպանին բաւականաչափ ժամանակ տուաւ։ Տիգրան նոյն միջոցին Փիւնիկէ կը գտնուէր[1], ուր կ'աշխատէր իր գրութիւնն ամրապնդել, ու տակաւին իր տիրապետութեան չենթարկուած քանի մը ամուր բերդաքաղաքներն ալ գրաւել, որոնք դեռ եւս Սելեւկեանց իշխանութեան տակ կը գտնուէին։ Ուստի եւ փափագելի էր Տիգրանի որ իրեն տհաճոյ դեսպա-

[1] Plut. Luc. c. 21.

նութեան մը ունկնդրութիւն շնորհելու ժամանակը որքան կարելի էր անորոշ ժամանակի մը յետաձգուէր։ Տիգրան տակաւին Աստղիկի գործերը վերջնականապէս չկարգադրած՝ չէր ուզեր նոր պատերազմի մը ձեռնարկել։ Ա՛յս իսկ նպատակով Կղուդիոսի ուղեցոյցները հրահանգ ստացեր էին զինքը մանուածապատ ու խոտորնակի ճամբաներով առաջնորդել, որպէս զի այսու ժամանակ վաստկուի։ Ի վերջոյ սակայն ասորի ազատագրեալ մը ուղիղ ճամբան անոր ցոյց տալով՝ հասկըցաւ դեսպանը հայ ուղեցոյցներուն հետապնդած նպատակը, զանոնք արձակեց, եւ ինքն ուղիղ ճամբով Եփրատի վրայէն անցնելով հասաւ Անտիոք, ուր հրամայեց անոր Տիգրան իր գալուն սպասել, մինչեւ որ ինքը Փիւնիկէի մէջ սկսած զինուորական գործողութիւնքն աւարտէ։

Հռոմայեցի դեսպանն այս պարապոյ ժամերն յօգուտ գործածելով՝ սկսաւ գաղտ բանակցիլ Հարաւան երկիրներու իշխաններուն հետ, որոնցմէ շատերը դիւրաւ իր կողմը շահեցաւ։ Նո՛յն իսկ Կորդուաց հզօր իշխանը՝ Զարբիենոս, որուն երկիրը Տիգրան գրաւած ու իրեն հարկատու ըրած էր, զօրավիգ ըլլալ խոստացաւ Հռոմայեցւոց՝ պատերազմի պարագային։ Եւ դեռ ուրիշ շատ մը Տիգրանէ նուաճուած քաղաքներ Կղուդիոսի դիմելով Հռոմայեցւոց ձեռնտուութիւնը խնդրեցին։ Այս դեսպանութիւնը, ստոյգ է, յուսացուածէն շատ աւելի սատարեց պատերազմին յաջող ելքին՝ ի նպաստ Լուկուլլոսի, որովհետեւ վերջինս դէպի Տիգրանակերտ կա-

տարելէք արշաւանքին ճամբան հարթուած եղաւ. անոր առջեւ անարգել՝ բարեկամ երկիրներու մէջէն անպատերազմ անցնելը հնարաւոր ընելով շարունակաբար մինչեւ Տիգրանակերտ. մինչ հակառակ պարագային, մինչեւ հոն հասնելու համար՝ ստիպուած պիտի ըլլային Հռոմայեցիք շարունակ կռուելով՝ իրենց ճամբայ բանալ։ Կղաւդիոսի շատ մեծ աշխատանք չէր արժած Տիգրանի հպատակ իշխանները սիրաշահիլը։ Գլխաւորաբար Յոյներն էին, որ զզուած հայ աշխարհակալին քմահաճ վերաբերմունքէն՝ անտանելի կը գտնէին անոր լուծին տակ մնալ, եւ զինքը ոգւով չափ կ'ատէին։ Այս հանգամանքը Լուկուլլոսի ծրագրին յաջողութեանը բարեգուշակ էր ինքնին, որով նա իրաւամբ կրնար յուսալ, նա թէ վստահ իսկ ըլլալ լիովին, որ երբ զինուորական չուն սկսէր շարժիլ, բոլոր այդ դժգոհ տարրերը պիտի փութային գալ իրեն միանալ՝ թեւ ու թիկունք ըլլալու հասարակաց թշնամւոյ մը դէմ։

Տիգրան այս միջոցներուն, ինչպէս վերեւ յիշատակած էինք, Փիւնիկէի ծովային ամրութիւնները պաշարելու զբաղած էր, եւ կ'ուզէր անոնց տիրանալէ ետքը միայն պաղեստինեան Ներքնաշխարհն աշխարհակալել։ Պտղոմայիդ ամրոցը (այժմեան Ակկոն), ուր Սելինէ դշխոյն ամրացած էր, ամբողջ ձմեռ մը զՏիգրան զբաղեցընելէ յետոյ անձնատուր եղաւ, եւ Սելինէ յաղթականին ձեռքն ինկաւ գերի։ Այս յաջողութեան վրայ Տիգրան առ ժամանակ մի դադրե-

ցուց իր արշաւանքը, որովհետեւ պատերազմաշունչ ամպերն արդէն իսկ սկսեր էին կուտակուիլ իր գլխուն վերեւ[1]։ Իւր միւս ծրագիրներուն գործադրութիւնը անդրադարձ ժամանակի մը յետաձգելով՝ փութաց Անտիոք, ուր Հռոմէական դեսպանը՝ արեւելեան իշխանակալի մը յատուկ մեծաշուք ու մեծապատիւ փառաւորութեամբ իւր ներկայութեանն ընդունեցաւ, ան յուսով որ թերեւս այսու կարենար երիտասարդ Հռոմայեցին շլացընել ու անոր վրայ կերպով մըն ալ, ահ ու երկիւղ ազդել։ Սակայն յուսախաբ եղաւ։ Ապպիոս դէմ յանդիման Տիգրանի, աներկիւղ ու ազատադէմ, յանձնումը պահանջեց Միհրդատի՝ որովհետեւ նա իւր զօրավարին ձաղանքին համար հարկաւոր էր, եւ մերժման պարագային պատերազմ սպառնաց Տիգրանի։ Դիւրին է գուշակել Տիգրանի զարմանքը։ Առաջին անգամն էր այս որ նա իւր կեանքին մէջ այսպիսի համարձակ լեզուի մը կը հանդուրժէր։ Շուրջն եղողները նշմարած էին անոր դիմագծին վրայ ծանր դժկամակութիւն մը, զոր թէեւ բանի ժպիտով մը բարեկել կամ պարտկել կը ջանար։ Տիգրան առանց վարանելու պատասխանեց թէ՝ Եթէ իւր ամուսնոյն հայրը Լուկուլլոսի յանձնելու ըլլայ, բոլոր աշխարհի այպն ու նախատինքն իւր վրան հրաւիրած պիտի ըլլայ։ Ինքն ալ գիտէ որ Միհրդատ ստորին մարդ մըն է, սակայն ինչ ընէ. ընտանեկան պատիւ մը կայ, զոր պարտաւոր

---

[1] Հմմտ. Josephus, Antiqu. Jud. XIII 16, 4 եւ Bell. Jud. I 5, 3.

է ամէն գնով նկատի առնուլ[1]։ Բայց եթէ Հռոմայեցիք այս իսկ պատճառաւ պատերազմիլ կ'ուզեն, շատ լաւ, ինքն ալ կարող է ինքզինքն անոնց դէմ պաշտպանել։ Այս իմաստ ունէր նաեւ Հռոմայեցի զօրավարին Հասցէին ուղղած իր պատասխան նամակին բովանդակութիւնը։ Եւ որովհետեւ Լուկուլլոս իր առ Տիգրան գրած նամակին մէջ անոր "Արքայից արքայ" տիտղոսը չէր տուած՝ այլ պարզապէս "Առ Տիգրան արքայ", անուանած էր զայն, Տիգրան եւս փոխարէն հատուցում ընելու համար, իր նամակին մէջ զլացաւ տալ անոր „Imperator" յորջորջանայ անունը։ Տիգրան շատ զայրացած էր իր անձին դէմ եղած այս մեծ անարգանքէն, եւ այնչափ աւելի, որչափ *Βασιλεὺς βασιλέων* յորջորջանքն իբրեւ պարզ ինքնահաւանութեան տիտղոս մը չէր կրեր իր վրան, ինչպէս կ'ուզէ հասկընալ Ռայնախ[2]։ Թագաւոր մը որ իր իշխանութեան ներքեւ բազմութիւն մը հպատակ թագաւորներու կամ ծորաներու ունէր, կարող էր, ամենայն իրաւամբ, նոյն տիտղոսն իր վրայ կրել. եւ այնու իսկ որ Լուկուլլոս իր նամակին մէջ մերժեր էր տալ Հայոց արքային "Արքայից արքայ" տիտղոսը, մերժած կ'ըլլար, ըստ Հեա-ւորգի, ճանչնալ նաեւ անոր վերին իշխանութիւնը հպատակ թագաւորներու եւ իշխաններու վրայ,

---

1 Այս յառաջբերութիւնները Մեմնոնի յօդ. գլ. 46. իսկ շարունակութիւնը Պլուտարքոսի յօդ. Լու. կ. գլ. 21 յիշատակուած են։

2 Անդ. էջ 340։

եւ միանգամայն վարուած կ՚ըլլար անոր հետ այնպէս՝ իբրեւ թէ աննշանակ ցեղի մը մէկ փոքր իշխանաւորն եղած ըլլար Տիգրան։ Սակայն եւ այնպէս այս ծանր թշնամանքը չկասեցուց զՏիգրան՝ մեծազօր արքայի մը վայել կերպով մեծարելէ իւր ոխերիմ թշնամւոյն ներկայացուցիչը։ Երբ դեսպանը հրաժեշտ առած պիտի մեկնէր, Տիգրան պատուել ուզեց զայն հարուստ ընծաներով, զորոնք սէգ Հռոմայեցին մերժեց թէեւ ու չուզեց ընդունիլ, սակայն Տիգրան կարծելով որ գուցէ թէ սակաւութեան համար մերժած ըլլայ զանոնք, դեռ այնչափ մըն ալ զրկեց։ Ապպիոս այս անգամ բաժակ մը միայն քովը պահելով՝ մնացածներն ամբողջութեամբ ետ դարձուց, եւ ինքն ասոր վրայ փութոյ պնդութեամբ դէպի հռոմէական բանակատեղի՝ իւր հրամանատարին քով շտապեց։

3.

Լուկուլլոսի պատրաստութիւնն ու զօրութիւնը:

Այլ եւս բախտորոշ քայլն նետուած էր եւ նոր պատերազմն անխուսափելի։ Լուկուլլոս սակայն յարմար չէր տեսած 70ին իսկոյն յարձակողականի սկսիլ. նա ուզած էր նոր գրաւուած երկիրներու զինուորական վերջին ոյժն ալ խորտակել, որպէս զի իւր թիկունքն ապահովէ։ Արիոբարզան, Կապադովկիոյ թագաւորը, որ Հռոմայեցւոց կողմն անցած էր, հրաման ստացաւ Լուկուլլոսէ՝ հոգ տանիլ որ հռոմէական լեգէոնները առանց դժուարութեան Եփրատն անցնիլ

կարենան, վասն զի արշաւանքը Հայոց Հարեւան այս երկրէն պիտի սկսէր[1]։

69ի գարնան, պոնտական բոլոր թշնամի գիրքերն Հռոմէացւոց ձեռքն անցած էին արդէն, Միհրդատի որդիներէն մին անգամ, Մաքարէս, որուն յանձնած էր Հայրը բոսպորական պետութեան սատրապութիւնը, Հռոմայ հետ հաշտութեան դաշինք կնքած[2], եւ Հազար ոսկւոյ արժողութեամբ պսակ մըն ալ նուէր ղրկած էր Լուկուլլոսի՝ ինչան բարեկամութեան։ Այսպէս ահա վերջացաւ նոր պատերազմին առաջին մասը։ Եւ որովհետեւ Հայկական արշաւանքին զինուորական պատրաստութիւններն ալ աւարտած էին, Լուկուլլոս առանց յամելու գրոհ տուաւ Տիգրանի վրայ, եւ գրաւած ամէն մէկ գլխաւոր կենդրոններու վրայ բաւականաչափ թուով պահակազօր կեցուց։ Բանընթաց քայլերով կարեց անցաւ Լուկուլլոսի բանակը Կապադովկեան բարեկամ երկրին սահմանները, եւ կարճ ժամանակի մը մէջ հասաւ Եփրատի ափունքը, որ կը գծէր սահմանն ընդ մէջ Հայոց եւ Արիոբարզանի պետութեան։

Հռոմէական արշաւախումբին ոյժն ու քանակն ստոյգ որոշելու համար, հարկ է նախ՝ միհրդատեան պատերազմին սկիզբը Լուկուլլոսի

1 Մեմնոնի գլ. 56 եւ Սալլուստիոսի Պ. Հատուածոյ 59ի մէջ յիշատակուած վկայութիւնք՝ հաւանական ցոյց կու տան Արիոբարզանի գործակցութիւնն այս պատերազմին։

2 Plut. Luc. c. 24. Appian. Mithr. c. 83; Memnon c. 54 եւ Livius, Per. 98.

ունեցած զօրաց թիւէն սկսիլ։ Լուկուլլոս Իտալիայէ մեկնելու ատեն հետն ունէր միմիայն նորագիր զինուորներու լեգէոն մը, որուն վրայ աւելցան յետոյ Ասիա գաւառին չորս ուրիշ լեգէոնները, այսինքն երկու Վալերեան-Փիմբրիաննեան եւ դեռ ուրիշ երկու լեգէոններ. այնպէս որ ընդ ամէնը հինգ լեգէոն ունէր իւր տրամադրութեան տակ, որ կը համապատասխանէ 30.000 հետեւակամարտ զինուորներու[1]։

Հեծելազօրաց թիւը 1600 կը նշանակէ Ապպիանոս, մինչ Պլուտարքոս 2500ի կը բարձրացընէ զայն։ Սակայն որովհետեւ երկուքին եւս յառաջբերութիւնը որոշակի կերպով միեւնոյն աղբիւրը կը մատնանշեն, հետեւաբար թիւերու այս տարբերակը պարզապէս ընդօրինակողներու անուշադրութեանը վերագրելու է։ Հոս սակայն խնդիր կը ծագի թէ ո՞րն է այս կրկին թիւերէն ճշգրտագոյնը, եւ կամ՝ գոնէ բնագրին աւելի մերձաւորը։ Անշուշտ թէ մեծագոյնը՝ Պլուտարքոսինը պիտի համարինք, եթէ նկատի առնունք մտադրութեան արժանի այն պարագան, որ Հռոմ երբ պատերազմ կ'ունենար ասիացի ազգաց բանակներուն դէմ, գիտնալով անոնց այրուձիուն թուական գերակշռութիւնը, կը ջանար միշտ անոնց դէմ, որչափ հնար է, շատ թիւով ձիաւորաց վաշտեր զրկել։ Այսու ամենայնիւ Պլուտարքոսի քով նշանակուած այդ բարձր թիւն

1 Plut. Luc. c. 7/8; Appian. Mithr. c. 72. Photius, Քաղուածոյք Փլեգոնի Ողիմպիադէն, հատուածք 12 (Müller FHG. III).

անգամ՝ բաղդատութեամբ Թշնամի այրուձիուն ունեցած Թիւին, դեռ շատ նուազ էր։ Կարող ենք սակայն սոյն Համարիլ, որ Լուկուլլոսի Հեծելազօրաց Թիւը, պատերազմին սկիզբները, 2500ը չէր անցներ։ Որով անոր Հրամանին ներքեւ գտնուող Հռոմէական բանակին ամբողջական ոյժը բաղկացած ըլլալու էր 30.000 Հետեւակէ, որոնք բաժնուած էին իւրաքանչիւրը 6000ական Հինգ լեգէոններու, եւ 2500 Հեծելազօրէ, որոնց վրայ բնականաբար աւելցած ըլլալու էին յետոյ նաեւ Թեթեւազէն օգնական գունդեր եւս՝ գաւառներու բնակիչներէ կամ դաշնակիցներու կողմէ ժողվուած, զորոնք պարտաւոր էին Հայթայթել ու տալ Հռոմայեցւոց այն ժողովուրդները, որոնց երկրին մերձակայ շրջանի մը մէջ տեղի կ՚ունենային ռազմական գործողութիւնք։ Այս կարգի զինուորներու Թիւը սակայն անյայտ է՝ առ ի չգոյէ ոեւէ յիշատակութեան։ Այն այս բանակով Հռոմայեցի զօրավարը Հինգ յաղթական պատերազմ մղելէ վերջ՝ վեցերորդ տարին ալ որոշեց Տիգրանի վրայ արշաւել։ Դիւրին է անկէ ենթադրել որ այդ պատերազմներուն մէջ եԹէ Հիւանդութեամբ կամ մահուամբ, եԹէ նոյն իսկ դասալքութեամբ իր զինուորներէն բաւական պատկառելի Թիւ մը Հարկաւ Թէ պակսած ըլլալու էր, զոր պէտք է անպատճառ լեցնել 69ի պատերազմին մասնակցող զօրաց շարքերէն։ Գլխաւորաբար մեռեալներու Թիւը կարելի չէ քիչ Համարել, Թէեւ Լուկուլլոս՝ իր վարպետին Սիլլայի օրինակին Հե-

տեւելով, անոնց թիւը՝ իր տուած անշեկագիրներուն մէջ, սակաւ ցուցընէ[1]։ Եթէ նկատենք թէ քանի՛ աՀաւոր ճակատներ մղեց իր բանակն ընդ ծով եւ ընդ ցամաք, եւ որպիսի՛ ծանր պաշարումներու դիմագրաւեց ան ամիսներով, ստիպուած պիտի ըլլանք ընդունիլ որ անոր կրած կորուստն եւս աՀաւոր եղած պիտի ըլլայ։ Առոնց վրայ աւելցընելու ենք նաեւ այլեւայլ Հիւանդութիւններէ ու վէրքերէ յառաջ եկած մաՀերը, որոնք Համեմատաբար շատ աւելի յաճախադէպ էին այդ ատենները քան այսօր, նկատելով մանաւանդ այդ շրջաններու առողջապաՀական սպասարկութեանց վատթար ու անկերպարան վիճակը։

Այս գունդերուն վրայ՝ որոնց անդամին ի սկզբանէ կը Հրամայէր Լուկուլլոս, 70ին դեռ աւելցան իր ընկերոջ՝ Կոտտա զօրավարին Հռոմէացի Հետեւակ ու Հեծեալ գունդերը, զորոնք այս վերջինս՝ Հերակլիա քաղաքը գրաւելով Իտալիա վերադառնալէն յառաջ, Լուկուլլոսի ղրկած էր, դաշնակից Հետեւակազօրն արձակելով[2]։ Այս գունդերը սակայն Հազիւ թէ նշանակութիւն մը ունենային Հայաստանի մէջ գործող բանակին Համար. ըստ որում՝, անոնք, իբր քաղաքապաՀ զինուոր, զետեղուած էին գրաւուած քաղաքներու մէջ, ուստի եւ մարտավայրէն շատ Հեռու։ Հետեւաբար, Հայկական արշաւանքին Համար Լուկուլլոս իր տրամադրութեան տակ ունէր միայն Հինգ լեգէոն, որոնց իւրաքան-

[1] Զոր օրինակ Պլուտ. Լուկ., գլ. 28։
[2] Memnon, c. 52.

չիւրին ունեցած զօրութիւնը՝ լեգէոնէ մը պահանջուած 6000 ական թիւէն զգալաբար պակաս էր։

Այս գունդէն զօրաւոր ջոկատ մը, յամենայն դէպս, Թողուց Պոնտոսի մէջ, որպէս զի միգուցէ Միհրդատ, որ անհամբեր յարմար առթին կը սպասէր, օր մը յանկարծ կրկին Պոնտոս արշաւելով՝ իւր հայրենի երկրին տիրանայ, եւ այսու Հռոմայեցւոց Թիկունքը վտանգուի։ Պոնտոսի պաշտպանութեան գործը յանձնուեցաւ Սոռնատիոսի, որուն այս նպատակաւ 6000 զինուոր ալ տրամադրուեցաւ։ Մնացած գունդով Լուկուլլոս Տիգրանի վրայ քալեց։ Պլուտարքոս անոնց թիւը կը նշանակէ 12.000 հետեւակ եւ ոչինչ նուազ քան 3000 հեծեալ[1]։

Հոս, այս յիշատակուած թիւերուն մէջ անկայն յայտնապէս կը նշմարուի սպրդած կարեւոր սխալ մը։ Վասն զի Տիգրանակերտի քով մղուած ճակատամարտին առթիւ[2] նոյն ինքն Պլուտարքոս հետեւեալ թիւերը կը նշանակէ. Մուրենա 6000 զինուոր, Լուկուլլոս 24 վաշտ (cohors) = 10.000 լեգէոնական (= ὁπλῖται) եւ բոլոր հեծելազօրը (= 3000), ինչպէս նաեւ 1000 թեթեւազէն։ Եթէ հեծեալներուն թիւը 24րդ գլխոյն մէջ նշանակուած չափովն ընդունինք, այժմէն արդէն Լուկուլլոսի ամբողջական բանակաթիւը 20.000ի բարձրացուցած պիտի ըլլանք՝ փոխանակ 15.000ի, զոր ունէր զօրախաղացի պահուն։ Այս վրիպակին Թէեւ մաս-

[1] Luc. c. 24.
[2] Luc. c. 27.

դիր եղած էր Ռոյնաս[1], այսու ամենայնիւ անփոփոխ պահած էր իր հաշիւներուն մէջ 20.000ի զօրութիւը։ Նա սակայն քայլ մ՚աւելի յառաջ պիտի երթար։ Բայց նախ մեր զննենք այն պայմաններուն ու հանգամանաց որոնց մէջ տեղի ունեցաւ Տիգրանակերտի ճակատամարտը։

Լուկուլլոս առաջին իսկ յաղթանակով Տիգրանակերտը պաշարեց։ Քաղաքը, որուն պահակազօրը յոյն եւ կիլիկեցի վարձկաններէ կը բաղկանար, քաջաբար դիմադրեց, եւ մինչեւ իսկ 6000 հեծեալներու հայ գունդ մը գիշերանց ճեղքեց պաշարող բանակը, ու տարափանման նետեր հռոմայեցի պահանորդներու վրայ տեղացնելով՝ մտաւ քաղաք, եւ Տիգրանի հարճերն ու մեծագին գանձերն առնելով ետ դարձաւ։ Այս ամէն կռիւները բնական է որ Լուկուլլոսի զօրաց բաւական վնաս հասուցած ըլլալու էին սպաննուածներով, բայց աւելի՛ վիրաւորեալներով. այնպէս որ ճակատամարտի մը համար չունէր այլ եւս այն թիւը նա իր տրամադրութեան տակ, ինչ որ ունէր տարւոյն սկիզբը։ Արդ, Մուրենայի՝ Տիգրանակերտի պաշարումը շարունակելու համար 6000 զինուոր յանձնելէ ետքը, իրեն կը մնար ճակատեցնել 10.000 լեգէոնական։ Ենթադրելով որ նախ քան ճակատամարտ տեղի ունեցած այս կռիւներու եւ յարձակումներու միջոցին մեռեալներու եւ վիրաւորեալներու կորուստը 2000 լեգէոնական եղած

[1] Ընդ. էջ 355։

ըլլայ, արշաւախումբին թիւը 12.000ի իջած պիտի ըլլայ՝ առանց հաշուի առնելու Մուրենաի վաշտը։ Այս հաշուով կ'ունենանք այն թիւը, զոր տուած էր Պլուտարքոս իր 24րդ գլխոյն մէջ, հետեւակազօրաց՝ այսինքն յարձակման բանակի լեգէոնականներուն քանակն նշանակելու ատեն։

Ասկէ յայտնապէս կը հետեւի ուրեմն, որ Պլուտարքոս զօրաթիւին յիշատակութիւնն ըրած ժամանակ — որովհետեւ ձիաւորներունը երկու անգամն ալ նոյն էր — մոռցած է Մուրենաի գունդը յիշատակել։ Թեթեւազէններու զօրաթիւն ալ չէր նշանակուած հոն նախնաբար։ Ջանոնք կը յիշատակէ միայն այն ժամանակ, երբ ճակատը կը սկսի յարդարուիլ, որ միջոցին, բնականաբար, ամէն մէկ զինուոր հանդէսի կ'անցնի։ Այս վրիպածին առիթը տուած են 6000 զինուորէ բաղկացած այն երկու ջոկատները, որոնց միոյն կը հրամայէր Սոռնատիոս եւ միւսին Մուրենա։ Արդ, արշաւախումբին քանակին մասին իր ըրած հաշիւներուն մէջ Սոռնատիոսի զօրագունդը փոխանակ սկզբնական ու ընդհանուր զօրաբանակէն միայն զեղչելու՝ զայն անգամ մը եւս զեղչած է արշաւախումբէն, որով եւ Մուրենաի 6000 հոգինոց ջոկատին յիշատակութիւնը պակսած է 24րդ գլխուն մէջ։ Ասով ուրեմն մեկնուած կ'ըլլայ այդ սխալը։ Յարձակման յատկացուած բանակը, հետեւաբար, բաղկացած էր 18.000 լեգէոնականներէ, 3000 հեծեալներէ եւ մերձաւորապէս 1000ի մօտ թեթեւազէններէ, որոնց համագումարը կ'ըլլայ 22.000։

Ասոր ներհակ Եւտրոպիոս, ինչպէս նաեւ Ռուփոս՝ որ առաջնոյն հետ, ինչպէս շատ տեղեր, նմանապէս հոս այս կէտիս մէջ բառ առ բառ կը համաձայնի, Տիգրանակերտը պաշարող Լուկուլլեան բանակին թիւը 18.000 ռազմիկ (milites) կը հաշուեն, մինչդեռ Փրոնտինոս 15.000 զինուոր (armati) միայն կը համարի[1]։

Փրոնտինոսի քով[2] սա հատուածը կը կարդանք. Lucullus adversus Mithridatem et Tigranem in Armenia maiore apud Tigranocertam, cum ipse non amplius quindecim milia armatorum haberet,... hostium aciem invasit. Այս վկայութիւնը յիշատակութիւնն է լոկ Տիգրանակերտի ճակատամարտին, որուն ելքը քանի մը համառօտ խօսքով կ'արձանագրէ պատմագիրը։ Այս տողերէն սակայն յայտնի կը տեսնուի պատմագրին հետապնդած նպատակը, որ կ'ուզէ ճակատամարտի մէջէն Լուկուլլոսի ունեցած զօրութիւնը նշանակել պարզապէս։

Միեւնոյն տպաւորութիւնը կ'ունենանք, երբ Եւտրոպիոսի[3] սա հետեւեալ տողերը կարդանք. Ipsum regem... decem et octo milia militum habens ita vicit, ut magnam partem Armeniorum deleverit.

Այս խօսքերը, ինչպէս նաեւ Ռուփոսի վկայութիւնը[4] ուղղակի կերպով պատերազմին

---

1 Eutrop. VI c. 9; Ruf. c. 15; Front. II 1, 14.

2 Strateg. II 1, 14.

3 Brev. VI, c. 9.

4 Brev. c. 15. Tigranem, Armeniorum regem... cum decem et octo milibus Romanorum vicit.

չէն հայիր, թէեւ առաջին հայեցուածքով մարդ կը միտի այնպէս կարծել. այդ մասին միայն Փրոնտինոս է որ ճշգրիտ տեղեկութիւններ կը հաղորդէ, մինչ անոնք կը գոհանան պարզապէս համառօտ ակնարկով մը՝ նետուած արշաւանքի մը մասին, որուն նպատակը, ստուգիւ ալ ուրիշ բան չէր, եթէ ոչ ճակատ մը տալ Թշնամւոյն եւ Տիգրանակերտը գրաւել։ Եթէ այդ այդպէս է, այն ատեն Եւտրոպիոս հոն պարզապէս թիւերը նկատի առած է, զորս Լիւիոս արշաւանքին սկիզբը տուեր էր, եւ ոչ թէ այն պատահական շեղումները, որոնք հոն կը տեսնուին թէ՛ նկարագրութեանընթացքին մէջ, եւ թէ, գլխաւորաբար, ճակատամարտի պահուն։ Հետեւաբար այդ 18.000 զինուորով մենք պէտք չենք հասկնալ Տիգրանակերտի ճակատամարտին մէջ Հռոմէյեցւոց ունեցած զօրաթիւը, այլ՝ արշաւախումբին ոյժը՝ արշաւանքին սկիզբը, երբ տակաւին ան կորուստներով ու հատուածներով չէր տկարացած։

Ուրիշ կէտ մը եւս։ Մինչ Փրոնտինոս quindecim milia armatorum կը գրէ, Եւտրոպիոս եւ Ռուփոս decem et octo milia militum կ'ըսեն։ Արդ, որովհետեւ հռոմէական լեգէոնականներուն սովորական անուանակոչութիւնը miles է եւ ոչ թէ armatus, այս պատճառաւ կարող ենք ենթադրել, որ Եւտրոպիոսի ու Ռուփոսի խօսքերը 18.000 լեգէոնական զինուորներու մասին են։ Փրոնտինոս սակայն իւր quindecim milia armatorum բացատրութեամբն ամէն կարգի զինուորները կը հասկընայ, հե-

տեւապար նաեւ հեծեալներն ու թեթեւազէնները։

Այս ամէն պարագաները նկատի առնելով՝ մենք հետեւեալ եզրակացութեան կը յանգինք. Լուկուլլոս միմիայն 18.000 լեգէոնականներով՝ առանց ի միասին հաշուելու նաեւ ձիաւորներն ու թեթեւազէնները (Եւտրոպիոս ու Ռուփոս), Հայաստան կ'արշաւէ, եւ Տիգրանի հսկայ բանակը Տիգրանակերտի քով կը զարնէ 15.000 հոգւով՝ ի միասին առեալ նաեւ բոլոր ձիաւորներն ու օժանդակ գունդերը (Փրոնտինոս), 6000 հոգիէ բաղկացած գունդ մը — ինչպէս Պլուտարքոսէ տեսանք — իր կողմէ գրաւուած քաղաքներու մէջ զետեղելէ ու բազմաթիւ կորուստներ ունենալէ ետքը։ Այսպէս ուրեմն կարող ենք մեկնել այս զանազան աղբիւրներու իրարմէ շեղումները, թէեւ այլուստ երեք պատմագիրներն ալ իրենց տեղեկութիւններն վերջ ի վերջոյ Լիւիոսէ է որ կը քաղեն, որ իրենց պատմագրութեան իբր գլխաւոր աղբիւր ծառայած է։ Եթէ ձեռք բերուած այս արդիւնքը բաղդատենք Պլուտարքոսէ մեր հանած հետեւութեանց հետ՝ կատարելապէս իրարու համաձայն պիտի գտնենք մեր բոլոր աղբիւրները, նոյն իսկ եթէ անոնք — այլ եւ այլ պայմաններու ու հանգամանքներու բերմամբ — սակաւ ինչ մեծագնած ըլլան։ Արդ, Եւտրոպիոսի եւ Ռուփոսի աւանդած 18.000 զօրաթիւը՝ Պլուտարքոսի քով յիշատակուած 18.000 լեգէոնականներն են, զորս կ'ունենանք, եթէ Մուրենայի

6000նոց գունդը՝ զոր Պլուտարքոս մոռցած է յիշատակել. 24րդ գլխուն մէջ նշանակուած 12.000 զինուորի վրայ յաւելունք: Նմանապէս Փրոնտինոսի խօսքը Պլուտարքոսի վկայութեամբը կը հաստատուի, սա՛ տարբերութեամբ միայն, որ հոս մերձաւորապէս 14.000 զինուոր Տիգրանակերտի պատերազմին կը մասնակցին, մինչ Փրոնտինոս կլոր հաշուով 15.000 կը դնէ այդ ճակատին մասնակցող զօրաց թիւը:

Ապպիանոսի[1] քով ևս կը հանդիպինք ձիաւորաց մասին յիշատակութեան մը, որուն համաձայն՝ անոնք 500 հոգիէ բաղկացած ըլլալու էին: Սակայն մենք վերև տեսած էինք, որ Լուկուլլոս, նախնապար, 2500 ձիաւոր միայն ունէր, որուն վրայ յետոյ աւելցաւ նաև Կոտտայի հեծելազնդերու վաշտը: Եթէ այս թիւէն ալ զեղչելու ըլլանք պատահած հաւանական կորուստները, դարձեալ՝ ինչպէս վերն ալ, Պլուտարքոսի տուած թիւը (ոչ լման 3000) ուղիղը կը մնայ, իսկ Ապպիանոսինը կրկին մերժելի:

Անցնինք այժմ հռոմէական յառաջխաղաց բանակին բաժանման: Ինչպէս վերև ըսած էինք, Լուկուլլոս հինգ լեգէոն միայն ունէր իր հրամանին ներքև, որոնց համագումարը 30.000ը չէր անցներ պատերազմին սկիզբը: Նոյն գումարէն, ինչպէս արդէն բացատրած էինք, անպատճառ պէտք էր զեղչել բանակին կրած բազմաթիւ անձի կորուստները: Արդ. Պլուտարքոս[2] — եթէ

1 Mithr. c. 84.

2 Plut. Luc., c. 24 և 27.

նկատի առնունք անոր վրիպանքն — կըներկայա-ցընէ մեզ 24.000նոց ույժ մը[1], զոր Հռոմայեցի զօրավարն, Հայկական արշաւանքին համար, իր տրամադրութեան տակ ունէր։ Լեգէոն մը սակայն բնականոն վիճակի մէջ պէտք է ունենայ 6000 զինուոր, մինչ հօս մենք կը տեսնենք նոյնին թիւը 4800ի ամփոփուած, եւ վաշտինը (cohors) 480ի։ Զօրաթիւին $^{1}/_{5}$ի այս կորուստը, ստոյգ է, թէեւ քիչ մը չափազանց շատ է, սակայն հարկ է նկատի առնուլ որ զօրաբանակը հինգ տարի շարունակաբար պատերազմած էր։

Ապպիանոսի պատմածին համաձայն[2], Լուկուլլոս՝ իր Հայկական արշաւանքին համար, երկու ընտիր լեգէոն պատրաստ ունէր։ Յայտնի է որ այսու նա հինօրեայ ու մարտընտիր Վալերիանեան-Ֆիմբրիանեան վաստակաւոր լեգէոնականները կը յիշատակէ, որոնց ույժը սակայն, մեր տեսութեան համաձայն, անկարելի է որ 9600է աւելի եղած ըլլայ։ Մենք արդէն վերը տեսած էինք որ Լուկուլլոս նոյնին գրեթէ կրկինը՝ այսինքն 18.000 լեգէոնական զինուոր հետն ունէր։ Որով ուրեմն յայտնի կ'երեւի որ դեռ ուրիշ զօրախումբեր եւս արշաւանքիս համար զատած ու տարանջատած ըլլալու էր։

Մեր այս ենթադրութեանը հաստատուն կռուան մըն է նաեւ Պլուտարքոս, որ բացորոշ կերպով կը պատմէ, թէ Տիգրանակերտի քով

---

1 6000 (Սորնատիոս)+12.000 (յուռաքիողաց զօրաբանակ. գլ. 24)+6000 (Մուրենա, գլ. 27)=24.000։

2 Mithr., c. 84.

մղուած ճակատին մէջ Լուկուլլոս 24 վաշտ միայն ունէր իւր հրամանին ներքեւ[1]։ Այսու ահա այժմէն չորս վաշտ աւելի ունեցանք. վասն զի, ինչպէս յայտնի է, երկու լեգէոն քսան վաշտ միայն կրնար ունենալ՝ ոչ աւելի, ոչ պակաս։ Եւ երբ մտածենք, թէ՝ քիչ յառաջ, Սուրենայի հրամանին տակ 6000 զինուոր Տիգրանակերտի պարիսպներուն առջեւ թողուած էր, ստիպուած պիտի ըլլանք ընդունիլ, որ բանակին համագումարը 24 վաշտէ շատ աւելի եղած պէտք էր ըլլալ։

Արդ որովհետեւ Լուկուլլոս՝ հայկական արշաւանքին համար 24 000 զինուոր իւր տրամադրութեան տակ ունէր, եւ իւրաքանչիւր վաշտ գրեթէ 480 զինուորէ կը բաղկանար, ասկէ կը հետեւցընենք ուրեմն, որ հինգ լեգէոններու բովանդակած յիսուն վաշտերէն առնուազն 37 վաշտ միայն հետն առած ըլլալու էր, ինչ որ մերձաւորապէս 18.000 լեգէոնականներու թիւին կը համապատասխանէ[2]։ Ապպիանոս սակայն երկու լեգէոններու անունը կը յիշատակէ. որով մենք ստիպուած ենք ընդունիլ որ անոնք, իբր լիաթիւ միութիւններ, անոր ընկերացած ըլլալու էին։ Բացակայ 17 վաշտերը յետոյ այնպէս մը կը բաժնուին միւս երեքին վրայ, որ անոնցմէ երկուքը վեցական, իսկ երրորդը՝ հինգ վաշտ կու տան յառաջխաղաց բանակին։

Կայսրութեան շրջանին շատ ստէպ պատահած երեւոյթ մըն էր այս առանձնայատկութիւնը,

[1] Lue., c. 27.

[2] ճիշդ 17.760։

որուն համաձայն լեգէոն մը իւր միութիւն իւր գոյութիւնը պահելով հանդերձ՝ որոշ տեղաց մը իւր զօրաթիւէն ուրիշ ձեռնարկներու եւս կը յատկացընէր։ Այսու կ'ուզուէր լեգէոնի զօրակայանին մէջ այն տպաւորութիւնը յառաջ բերել, որ իբր թէ ամբողջ լեգէոնը ներկայ եղած ըլլար հոն։ Այս պատճառաւ ալ նոյն իսկ փաշտոն անվամ յաճախ իւր միութիւն շարունակած էր ձեւալ՝ հարկաւոր եղած զինուորներն իրմէ անջատուելէ ետքն ալ։ Հաւանական է որ հոս եւս նոյնը պատահած, եւ Լուկուլլոս այս կերպով մէն մի զինուոր ուրոյն ուրոյն փաշտերու բաժնած ըլլայ։ Սակայն մեր այս դէպքին մէջ ինձ շատ աւելի հաւանական կը թուի որ նա ամբողջական փաշտեր անջատած ըլլալու էր։

Արդ, ի մի ամփոփելով ցարդ ըսուածները, կը յանգինք հետեւեալ եզրակացութեան. Լուկուլլոս իւր հրամանին տակ ունէր Վալերիանեան երկու լեգէոնները, ու մնացեալ երեքին 17 փաշտերը. ընդ ամէնը 18.000 հետեւակ, 3000 հեծեալ եւ 1000 թեթեւազէն։

4.

*Հռոմէական լեգէոնները Եփրատը կ'անցնին, եւ Ծոփքը կտրելով Տիգրիսի ափունքը կը յառաջանան։*

Այսպէս էր ուրեմն Լուկուլլոսի զօրաց թիւը, երբ 69 ի գարնան Եփրատի եզերքը հասաւ։ Թէեւ Արիոբարզան, ինչպէս վերեւ յիշատակած էինք, հռոմէական բանակին Եփրատէ անցքն դիւրացը-

նելու համար ամբողջ ձմեռը հոգ տարած էր կուրերը ու նաւակներ կազմելու[1], սակայն ձիւնահալքի ժամանակ ըլլալուն՝ գետայարուցքի պատճառաւ, անկարելի էր եղած գետին վրայէն անցնիլ։ Այս անակնկալ ու չնախատեսուած արգելքը պահ մը թէեւ հռոմայեցի զօրավարին համբերութիւնը սպառեց, սակայն յետոյ գիշեր մը յանկարծ ջուրերուն նուազելովը՝ Հռոմայեցիք մեծ դիւրութեամբ, գրեթէ հետիոտն, գետին ձախակողմը ոտք կոխեցին[2]։ Եփրատէ անցքն պաշտպանուեցաւ գետին հայկական ափունքէն, այս է՝ Ծոփաց երկրէն, Տոմիսա բերդով, որ առենօք թէեւ Կապադովկիոյ սահմաններուն մէջ կ'իյնար, սակայն յետոյ Ծոփաց իշխանութեան ծառայած էր[3]։ Տոմիսա նոյն է այսօրուան Իզօլիի հետ[4]։ Կապադովկիոյ

---

1 Sallust. IV, հատուածք 59։

2 Plut. Luc. c. 24 եւ Sallust. IV հատուածք 60։

3 Strabo, XII, 2. 1 (535).

4 Զայս առաջին անգամ մատնանշեց Լեման (Verhandlungen des 46. Philologentages, S. 30)։ Տոմիսա բերդին մասին մանրամասնօրէն համմտ. Ստրաբոն ԺԲ 2. 1 (535). ուսկէ կ'իմացուի որ սոյն վայրը Եփրատի ձախակողմը կը գտնուէր, որովհետեւ Ստրաբոն՝ Մելիտինէի մասին՝ որ Ծոփաց հանդէպ Եփրատի միւս եզերքը կը գտնուի (ἀντίκειται δὲ τῇ Σωφηνῇ, μέσον ἔχουσα τὸν Εὐφράτην ποταμόν) ըսելէ ետք, այսպէս կը շարունակէ ἔστι... ἐν τῇ περαίᾳ Τόμισα. Երկրորդ տեղիքը. Ստրաբոն ԺԴ. 2. 29 (663). Τόμισα χωρίον τῆς Σωφηνῆς կը մատնանշէ, բայց իմ կարծեօքս, աւելի աշխարհագրական դիրք մը, քան թէ քաղաքական սեպհականութիւն մը. ուստի եւ բուն իսկ Ծոփաց մէջ գտնուող վայր մը, եւ ոչ թէ վայր մը որ երբեմն յընդարձակ միտս այդ երկրին կը վերաբերէր։ Առաջին հայեցուածքով արդէն կը տեսնուի որ Տոմիսա արդեան Իզօլիի

այս կողման միջին ու գլխաւոր հունն էր այս, ուսկէ կարելի էր Եփրատի միւս կողմն անցնիլ անվտանգ։ Հոսկէ էր որ կ'անցնէր նմանապէս կապադովկեան մեծ պողոտան, որ Տիգրիսի ուղղութեամբ մինչեւ Ամիդ յառաջանալէ ետք՝ Մծբինի, հին Նինուէի եւ Հօշի վրայով կ'երկարէր մինչեւ Հնդկաստան։ Տակաւին այսօր իսկ նոյն պողոտան է որ կը գործածուի սակաւ ու աննշանակ շեղումներով[1]։ Թէ ո՛ր աստիճանի կարեւոր էր Եփրատի այն անցքին տիրապետութիւնը ռազմական տեսակէտով, այդ յայտնի կը հասկցուի մեր վերեւ յիշատակած Ստրաբոնի[2] մէկ տեղիքէն, որուն համաձայն Ծոփաց թագաւորը Տոմիսա բերդը

դիրքին չի համապատասխաներ, որովհետեւ այս վերջինս, մեր գլխաւոր քարտէսներուն վրայ, գետին աջ եզերքը նշանակուած է (հմմտ. Kiepert, Nouvelle carte générale եւ Lynch), թէեւ Կիպերտ զայն Սախասուի (անդ) յօդուածին առթիւ գծած քարտէսին վրայ ձախ եզերքին վրայ ալ նշանակած է։ Լեմանի ուղեգրական վերջին ուսումնասիրութիւնն աչքի առջեւ ունենալէ ետք՝ ես կատարելապէս համոզուած եմ եւ ի վիճակի եմ հաստատելու թէ Իզօլի եւս Եփրատի ձախակողմը կը գտնուի՝ ինչպէս Տոմիսա, որուն հայկական առհամաններու մէջ գետեղուած ըլլալը բնաւ տարակոյս չի վերցըներ, եւ թէ ան Լինչի քարտէսին մէջ նշանակուած Կարը-քէօյի հետ նոյն է, որ սակայն Կիպերտի քարտէսին վրայ չէ յիշատակուած։ Հետեւաբար Տոմիսայի — Իզօլի ենթադրութիւնը իրաւացի կը գտնեմ ես։ Ռ. Կիպերտ եւս այն կարծեաց թէր կ'երեւի, այնու որ Իզ Օղլուն (= Իզօլի) Եփրատի ձախակողմը կը զետեղէ եւ Տոմիսայի հետ կը նոյնացնէ (հմմտ. իւր Karte von Kleinasien, Abt. Malatia. Հմմտ. նմանապէս Տոմիսայի դիրքին մասին Kiepert, Atl. ant., tab. IV եւ Ռամզայ անդ. էջ 355։

1 Kiepert, Abhandl. der Akad. d. Wissenschaften 1873, S. 180.

2 XII, 2, 1 (535).

100 տաղանդի պատկառելի գումարի մը փոխարէն գնած էր կապադովկացիներէ։ Լուկուլլոս զայն գրաւելով յանձնեց իւր հաւատարիմ դաշնակից Արիոբարզանի, եւ այսու կռուան մը ապահովուած եղաւ հռոմէական բանակին յայնկոյս Եփրատի։ Այս առաջին ու ամենամեծ արգելքին այսպէս արագ յաղթելէ ետք՝ Լուկուլլոս կոխեց թշնամի հողը, ուր՝ ի շնորհակալութիւն այս մեծ յաջողութեան, զոհ մը մատոյց աստուածներու[1]։

Աւելի անդին մենք պիտի հետեւինք հռոմայեցի զօրավարին չուին դէպի հայկական ոստան։ Այս չուին մանրակրկիտ քննութեան համար մեր ունեցած երեք գլխաւոր աղբիւրներէն մին՝ Ապպիանոս, բոլորովին անօգուտ է մեզ, վասն զի Պլուտարքոսի քով յիշատակուած մանրամասն տեղեկութիւնները քանի մը խօսքով համառօտած կը գրէ. "Լուկուլլոս Եփրատն անցնելէ յետոյ բարբարոսաց երկիրը կտրեց անցաւ՝ առանց ամենեւին բնակիչներուն վնաս հասցնելու„։ Իսկ Մեմնոն[2] այս չուին մասին ոչինչ կը յիշատակէ։ Բացի Տակիտոսի տուած մէկ ծանօթութենէն, որուն յետոյ պիտի անդրադառնանք, մեզի առաջնորդ կ՚ունենանք, ըստ հետեւորդի, միայն Պլուտարքոսը[3]։

Տոմիսաէ անդին Լուկուլլոս Ծոփաց հայ երկրի մէջէն շարունակեց իւր չուն։ Պլուտարքոս սակայն կը մերժէ ճանչնալ Ծոփքն իբր բուն

1 Plut. Luc. c. 24.
2 C. 56.
3 Luc. c. 24 եւ 25.

Հայաստանի մէկ նահանգը, եւ Տիգրիսն անցնելէ ետքը միայն կ'ընդունի հռոմէական լեգէոններուն Հայաստան մուտքը[1]։ Այս պարագան կը մեկնուի միայն այնու որ Տիգրան տակաւին նոր՝ Արտաշէսի պետութիւնը, որուն կազմիչ մասն էր Ծոփքը, իւր պետութեան կցած էր։ Այս պատճառաւ մենք եւս Ծոփքն ու Հայաստանն իրարմէ զատելով իբր երկու զատ երկիրներու վրայօք պիտի խօսինք մեր առաջիկայ ուսումնասիրութեան մէջ։

Եփրատն անցնելէ յետոյ՝ Լուկուլլոս օր մը դադար տուաւ իւր զօրաց, որով կազդուրուած՝ կրցան անոնք հետեւեալ օրն իրենց ճեպընթաց չուն շարունակել դէպի Տիգրանակերտ։ Լուկուլլոսի նպատակն էր, անշուշտ, Տիգրանի բանակն յանկարծակի բերել, եւ իւր այս մտադրած նպատակին վայրկեան մը յառաջ հասնիլ կարենալու համար՝ ետ կեցաւ ամէն նոր ձեռնարկէ, ինչ որ կարող էր իւր ընթացքին խափան ըլլալ կամ զայն կասեցընել։ Երբ իւր զինուորները չափի միջոցին ուզեցին հարուստ գանձերով լի ամրոց մը գրաւել, մերժեց լսել անոնց այս խնդիրքը՝ ըսելով. «Նախ այն բերդը պիտի գրաւենք, այս ամրոցն արդէն մերն է, եւ մեզի՝ յաղթողներուս կը մնայ վերապահուած»։ Այս խօսքով ցոյց տուաւ անոնց Տաւրոսի գօտին, որ իբր բնական ամրութիւն մը, Հայաստանի ճամբան դեռ իսկ կը փակէր Հռոմայեցւոց առջեւ։ Ի հարկէ, առաջ կարե-

---

1 Plut. Luc. c. 24... τὸν Τίγριν διαβὰς ἐνέβαλεν εἰς τὴν Ἀρμενίαν.

ւորութիւն ունեցող խնդիր էր Լուկուլլոսի համար այս իր շուն խափանող ամենամեծ բնական արգելքին վրայէն կարելի եղածին չափ շուտ անցնիլ կարենալը, որպէս զի մի՛ գուցէ Հայերը ժամանակ շահելով՝ իրմէ յառաջ փութան նոյնին կիրճները բռնել։

Լուկուլլոսի լեգէոնները անարգել հասան Տաւրոսի ստորոտները, եւ երկրին բնակիչներէն առանց դիմադրութեան հանդիպելու՝ գրաւեցին լեռնաշղթային բոլոր կարեւոր կիրճները։ Ծոփացիք, որոնց բնիկ թագաւորը Տիգրան վանած, ու անոր իշխանութեան երկիրները բռնի Հայաստանի կցած էր, բնականաբար, իրենց այս նոր արքային հանդէպ շատ մեծ հաւատարմութիւն մը չէին կրնար տածել։ Այս պարագան քաջ գիտնալով Լուկուլլոս, զգուշացուցած էր իր զինուորները, երկրին բնակիչներուն վնասելէ, որպէս զի այսու զանոնք աւելի եւս դիւրաւ իր կողմն շահիլ կարենայ։ Լուկուլլոս իր հետապնդած նպատակին հասած էր։ Ծոփացիք յօժարութեամբ թոյլ տուին հռոմէական լեգէոններուն անցքն իրենց երկրէն, սակայն յայտնապէս չհամարձակեցան մէկէն իրենք զիրենք Հռոմայեցւոց կողմնակից ցոյց տալ, այլ սպասեցին իրաց ելքին, որպէս զի իրենց դիրքն որոշել եւ յաղթողին կողմն անցնիլ կարենան։ Այսպէս անվրդով ու անվտանգ հասաւ վերջապէս Լուկուլլոս Տիգրիսի եզերքը, որ զինքը տակաւին Հայաստանէ ու անոր մայրաքաղաքէն կ՚անջատէր։

Անցնինք այժմ Լուկուլլոսի հետեւած ճամբուն քննութեան։ Զայս հարկ կը համարիմ

ընել, եւ այն՝ այնքան աւելի հիմնովին, որքան անկէ է որ քաղաքն մեծի մասին կախումն ունի այդ ծանօթ հարցին հիմնական լուծումը, թէ արդեօք Տիգրանակերտ այժմու Մուֆարղինն կամ Սիլվան քաղաքին տե՞ղը կը գտնուէր, թէ այլուր փնտռելու է զայն։ Բայց որպէս զի աւելի լաւ ակնարկ մը նետել կարենանք այն ճամբուն վրայ՝ ուսկէ անցաւ Լուկուլլոս, կը բաժնենք զայն երկու գլխաւոր հատուածներու, որոնց իւրաքանչիւրը իւրայատուկ շրջակայ միջավայրերովը պայմանաւորուած է։ Նախ, ուրեմն, նկատողութեան առնունք մինչեւ Տաւրոս ձգուող հատուածը։

Տոմիսայի քով Եփրատն անցնելէ յետոյ՝ Լուկուլլոս ի սկզբան հին պողոտան միայն կարող էր գործածած ըլլալ որովհետեւ այն էր գոյութիւն ունեցող միակ ճամբան, որ Տոմիսաէ դէպ արեւելք կ'երկարէր։ Կիպերտ[1] կը համարի զայն երթեւեկի ասորական ճամբայ մը, բայց ոչ արքունի պողոտայ մը։ Այս ճամբան, որ նախնաբար մինչեւ Խարբերդի դաշտավայրերը կ'երկարէր, նոյն է այսօրուան՝ Մալաթիայէ սկսեալ Իզօլիի վրայով մինչեւ Խարբերդ տանող ճամբուն հետ։ Մէզգարաի[2] մօտ այս ճամբան կը մտնէ Խարբերդի դաշտավայրը՝ հարաւ-արեւմտեան ուղղութեամբ։

Այս կէտէ սկսեալ ներկայիս կան զանազան ուղղութեամբ դէպի Սիլվան-Տիգրանակերտ

1 Akademie der Wissenschaften 1873. S. 177.

2 Առայժմ բառ Կիպերտի։ Լէհի քարտէսին վրայ նշանակուած Մէզկէրէի գիւղը շատ մօտ է Խարբերդի։

առաջնորդող երկու տարբեր ճամբաներ։ Մին Եփրատի (Արածանիի) երկայնութեանը Բալու-տանող գիծն է, որ յետոյ Լիջէի ու Հազրուի վրայով մինչեւ Սիլվան կ՚երկարի։ Այս ճամբան, ընդհանրապար, հոս խնդրոյ առարկայ չի կրնար ըլլալ․ քանի որ Լուկուլլոս չէր կարող այս ճամբով Տիգրիսէ անցնիլ. թէեւ ան է այսօր ամենէն գործածականը[1]։ Միւսը Արղանա-Մադէնի վրայով Արղանա տանող ճամբան է, զոր անպատճառ գործածած ըլլալու էր Լուկուլլոս, կարենալով նախ Պէզրիկի վրայով դաշտագետնին հարաւային եզերքը, եւ այս Գէօլճիկ լճի հիւսիս-արեւելեան երկայնութեամբը մինչեւ Պիզին։

Շատ հաւանական է որ Լուկուլլոս այս ճամբան ընտրած ըլլայ։ Մեր այս վարկածին հաստատնեցուկ կ՚ընծայէ նաեւ Տակիտոս, որ Կորբուլոնի ընդդէմ պարթեւաց բրած արշաւանքին պատմագրութեանը մէջ կ՚ըսէ... auxilia regum in unum conducta apud Melitenen, qua tramittere Euphraten parabat. Արդ, որովհետեւ Լուկուլլոս եւ ա այն Կապադովկիա գաւառէն անցած էր արշաւել յանկարծ Եփրատի, ապա ուրեմն երկու զօրավարներն ալ այն կողմերուն յարմարագոյն համարուած հունէն միայն կրնային անցած ըլլալ. հետեւաբար՝ Իզօլի-Տոմիսայի քովէն։ Առ հետեւեալ Mox iter L. Lucullo quondam penetratum, apertis quae vetustas obsaepserat, pergit խօսքէն որոշ կը հանկըցուի,

[1] Լեմոն-Հաուպտ, որ այդ ճամբէն անցած է հակառակ ուղղութեամբ, շատ ծանրատաղտուկ կը գտնէ զայն։

քննենք այժմ առաջին հնարաւորութիւնը, զոր եթէ ընդունինք, հարկ պիտի ըլլայ Լուկուլլոսի երկրորդ գետ մը եւս՝ Արղանա-սու է կամ Տիգրիսէ անցընել, ինչ որ, ի հարկէ, բոլոր պատմագիրներն ալ յիշել պիտի չմոռնային, մինչ անոնք հարկ տեսած էին միահաղոյն չեշտել փոքր ու աննշանակ գետակի մը վրայէն անոր անցքը՝ Հայաստան մուտք մը հնար էր միայն Տիգրիսի վրայով անցնող ճամբու մը միջոցաւ: Արդ, մենք կը տեսնենք որ բոլոր պատմագիրներն ալ կը վկայեն թէ Լուկուլլոս գործածած էր հին պողոտան, առանց սակայն միտ դնելու որ անոնք այսու յայտնապէս հակառակ կ'ըլլային Պլուտարքոսի, որ որոշ կ'ըսէ. τὸν Τίγριν διαβὰς ἐνέβαλεν εἰς τὴν Ἀρμενίαν, որմէ — ինչպէս վերեւ յիշատակած էինք — սա կը հետեւի որ Պլուտարքոս այս գետը, եւ ոչ թէ Եփրատը սահմանագետ կը նկատէ, եւ Ծոփքը Հայաստանէ կ'անջատէ: Եթէ երբեք Տիգրանակերտ Միջագետքի մէջ, որ է ըսել՝ Տիգրիսի աջակողմեան ափունքը գտնըւած ըլլար, այս ինչ հարկ կար Լուկուլլոսի Տիգրիսէ անցնիլ, եւ երկրորդ՝ ինչու Պլուտարքոս, հայկական արշաւանքի մը համար, արեւմտեան Տիգրիսէ անցքին անհրաժեշտութիւնը պիտի չեշտէր. չէ՞ որ Լուկուլլոս այդ ճամբով երկու Տիգրիսի զանազան ճիւղերէն անցնելէ ետքն ալ՝ դեռ խոր Ծոփաց երկրէն դուրս ելած

անոր այս "մանրակրկիտ ու ճշգրիտ տեսութեան" (Lehmann-Haupt, Armenien einst und jetzt, Band I, S. 516 ու 542 f. Հմմտ. նաեւ Klio IX, S. 406, ծնթ. 1):

պիտի չըլլար։ Ես չեմ կարծեր սակայն որ Պլուտարքոս եռապատիկ անցք մը մատնաւոր կերպով ճշդել ուզած ըլլար։ Մանաւանդ թէ գետէն անդին անցնիլը՝ Հայաստանի վրայ յարձակում մը կրնար իրեն իբր հետեւանք ունենալ, եւ ըստ այնմ ալ կ'ենթադրէ որ գետին ձախ ափին վրայ կը գտնուէր Լուկուլլոս իւր բանակովը։ Բայց այդ պէտք էր անդի ունեցած ըլլալ այնպիսի վայր մը, ուր այդպիսի անցք մը իբր յիշատակութեան արժանի դէպք մը, գործ մը նկատուէր, ինչ որ սակայն հոս այս պարագայիս համար չէ կարելի ըսել։

Սակայն եւ այնպէս ընդունինք որ Լուկուլլոս Արղանա-Մադենի քովէն Տիգրիսն անցնելով Հայաստան յարձակած ըլլայ։ Այս պարագային, բնական է որ, գործածած պիտի ըլլար Փիրան-Հանի-Հազրոյի վրայով անցնող այսօրուան սովորական ճամբան։ Արղանա-սուի ձախակողմեան եզերքէն ընթացող այս ճամբան կը կարէ համակ լեռնային շրջան մը, ուր չեղջաչեղջ կուտակուած լեռներու սարերէն ու լեռնանցամէջերէն կը սուրան կ'անցնին բազմաթիւ, խորաջուր հեղեղատներ։ Ստոյգ է, կարող էին Հռոմայեցիք՝ փոխանակ օժանդակ գետակներէ կազմուած մեծ գետին վրայէն անցք մը խիզախելու, նախընտրել համեմատաբար շատ աւելի փոքր գետակիցները, որոնցմէ գուցէ թէ Ջիբենէ-սուն իւր մեծութեամբն ու սաստկութեամբը մէկալները գերազանցելով, Լուկուլլոսի անցքին առթիւ, Պլուտարքոս զայն իբր Տիգրիս յիշատակած ըլլայ —

որովհետեւ բոլոր գեղանկարները ալ այս ընդհանուր անունը կը կրէին — թէեւ Ջիրենէ-ատն Դուրինց սահմանը գծած չէ երբեք, այլ գետ մըն է պարզ Ընծիա գաւառէն հոսող։ Սակայն միւս կողմէ, Լուկուլլոսի զօրաց լեռներ ու ձորեր յոգնեցուցիչ այս ելեւէջները, կրնայ ենթադրուիլ, թէ որքան ալ շատ ու թանկագին ժամեր կրնար կորսնցնել տուած ըլլալ անոր։

Բաց ասկէ, ամփոփուած պիտի ըլլար նա այդ լեռներու վրայ գծուած նեղ եւ անձուկ արահետներէն քալեցնել իր զինուորները՝ զանոնք անօթի ու երկայն զօրասիւնի մը վերածած, որուն երկայնութիւնը մերձաւորապէս մէկ օրուան ճամբարհի մը կրնար հասնիլ։

Դժուար անուանել արժանի կէտ մըն է նմանապէս ռազմագիտօրէն աւագ նշանակութիւն ունեցող սա պարագան եւս, որ Լուկուլլոս այդ անհնարանելի լեռնակողմը[1] գեգերած միջոցին, ուսկէ հազիւ թէ Տիգրանակերտի պարիսպներէն 20 քլմ․ի․, ուրեմն հանդարտ գնացքով՝ օրուան մը հեռաւորութեան վրայ պիտի կարենար գտնըուիլ, կարող էր իրաւամբ թշնամի յեղակարծ յարձակումէ մը կասկածիլ, որ եթէ իրականանար, նկատելով չուին երկայնաձիգ տարածութիւնը, հնար էր ենթադրել թէ որպիսի ծանր ու անդարմանելի հետեւանքներ կրնար ունենալ։ Ստոյգ է, Արղանա-Մադէնէ երկարող այս

1 Լինչի քարտէսը շատ աւելի լաւ ցոյց կու տայ քան Կիպերթինը՝ լեռնագաւառին այս գծուագրութեան հանգամանքը։

ճամբուն երկարութիւնը 120 քիլոմեթր էր միայն. սակայն անոր հետ կապուած վտանգներն ու անյաղթահարելի դժուարութիւններն ալ այնքան շատ էին, որ կարճութեան յարգն ու առաւելութիւնը կորսնցընել կու տային անոր։ Եւ որովհետեւ Տիգրիսը հոն եւս ոչ ուրեք, իբր մնացաւոր յիշատակութեան արժանի գետ մը, սահմանը կը գծէր ընդ մէջ Ծոփաց եւ Հայոց. հետեւաբար անկարելի կը մնայ մեզ այս ճամբան։

Այս ուրեմն Լուկուլլոս ստիպուած է իր զօրքն շարունակել հին պողոտային վրայէն մինչեւ Արզանա, յաղթելով լեռներու իրեն դէմ յարուցած ահաւոր դժուարութեանց։ Արզանի մօտին հետեւեալը կ'ըսէ Բրոկոփի[1]. «Արզանա քաղաքիկը գետեղուած է Տիգրիսի աջ եզերքը, որոշ հեռաւորութեան մը վրայ։ Ան կը գրաւէ կեդրոնը լայն ու գեղանկար բլրանցամէջի մը, որուն հարաւային կողմը կը տարածուի բազմաթիւ բառալաի ժայռերով ծածկուած ընդարձակ հարթավայր մը։ Այս, գրեթէ խորտուբորտութիւն չունեցող մակերեսը գեղատեսիլ հարթաւանդակ մը կը ներկայացընէ... որ ի հնումն աւազաւանդ էր եւ խիտ մարգարանակ.» Այն պարագան արդէն որ այս կէտէն անդին երեք զանազան ճամբաներ կը բացուին, բաւական է զմեզ համոզելու, որ գաւառիս մէջ, խաղացքի մը համար, բնաւ ամենեւին դժուարութիւն չկար. որով եւ Լուկուլլոս անվախօրէն կարող էր ամէն ուղղութեամբ դիմել դէպի Տիգրիս։

[1] Անդ. էջ 43։

Այս անհարկուած ճամբան ալ սակայն նոյն էր մեր վերեւ յիշատակած հին պողոտային հետ, որ դէպի Ամիդ, այժման Դիարպեքիր քաղաքը կը տանէր, եւ իբր գլխաւոր պողոտայ այս կողման, բնական է որ մասնաւոր կերպով հեշտ ու բանուկ եղած ըլլալու էր։ Ի հարկէ, այս ճամբու մասին եւս կան շատ մը խնդիրներ ու դժուարութիւններ, որոնցմէ մին, ու կրնանք ըսել ամենագլխաւորը՝ անոր ունեցած 150 քիլոմետր երկայնութիւնն է, ինչ որ բոլոր մէկալ ճամբաներու մէջէն ամենաերկարը կը նշանակէ։ Արդ, Լուկուլլոս, որ կը ձեպէր, կը փութար վայրկեան մը յառաջ իր նպատակին հասնիլ, յամենայն դէպս, խուսափիլ ուզած պիտի ըլլար մանուածապատ ու խոտորնակի ճամբաներէ, եթէ երբեք ուրիշ աւելի հեշտագոյն եւ միանգամայն աւելի կարճ ճամբայ մը իր տրամադրութեան տակ ունենար։

Լուկուլլոսի օրով Ամիդ, որ թէեւ ասորեստանեան պետութեան ատեն գոյութիւն ունէր, սակայն այնքան աննշանակ էր, որ յետագային ոչ մէկ տեղ յիշատակուած կը գտնենք անոր անունը։ Հապա Կոստանդիանոսի ժամանակ կը սկսի Ամիդ ծաղկիլ, եւ շատ հաւանական ալ է որ այդ միջոցներուն շինուած ըլլայ նաեւ անոր կամուրջը, այնպէս որ, եթէ նոյն պահուն ուզէր Լուկուլլոս գետէ անցնիլ, ստիպուած պիտի ըլլար անպատճառ հանել։ Պրոկոպի[1] այս քաղաքին մասին կ'ըսէ. «Դիարպեքիր Տիգրիսի աջակողմեան եզերքը կը գտնուի, սակայն ինչ մէկուսի գետէն, որ, թէեւ

[1] Ընդ. էջ 43։

Հոս, այս կէտին վրայ արդէն իսկ ըստ բաւականի զարգացած է, սակայն եւ այնպէս ջրերու բնականոն բարձրութեան ատեն կարելի է զայն ամէնուրեք ձիով հունել։ Յետոյ քիչ մը վարը[1], ջրերու սակաւ բարձրանալու միջոցին, Տիգրիսի լայնութիւնը 800 ոտքի կը հասնի Դիարպեքիրի քովերը, եւ քաղաքէն հինգ վայրկեան անդին՝ դէպի հարաւ ձգուած կամուրջին քովէն կարելի է զայն նաւարկել փոքրիկ լաստերով (քէլէք)։ Ըստ Մոլթկէի[2], ամառը շատ դիւրաւ կարելի է Դիարպեքիրի քովերը գետը հունել։ Արդ. Տիգրիսի ջրերուն Ըմիդի քովերն ունեցած այս հանգամանքը մեր մտաց առջեւ այս կերպ պատկերացընելէ ետքը, բնաւ չեմ վարանիր ըսել, թէ ամառնամիջին ու աշնան միջոցներուն[3], ջուրերու ծանծաղ եղած ատեն, շատ դիւրաւ կարելի էր հունել, եւ այն՝ ոչ միայն ձիով, այլ եւ հետիոտն։ Եթէ ջրերու բնականոն բարձրութեան ժամանակ գետը ձիով միայն անցանելի է, այս ուրեմն ըսել է թէ Լուկուլլոս հոն շատ մեծ դժուարութիւններ ունեցած ըլլալու էր։ Խնչու որ, եթէ Նիրման տակաւին շաբաթ մը յառաջ այնքան սաստիկ բարձրացած էր որ, Լուկուլլոս շփոթած՝ յուսակորոյս եղած էր յորդած գետն անցնելու հնարաւորութենէ, նոյնպիսի պատկեր մը կընանք ենթադրել նաեւ Տիգրիսի նկատմամբ, որուն ջրերը բնական վիճակէ անհամեմատ աւելի յոր-

1 Էջ 44։
2 Briefe aus der Türkei S. 236.
3 Browski. S. 44.

դած ըլլալու էին։ Հետեւաբար, այս պարագային, ճամբու երկարութեան կնճռոտ հարցին վրայ կը բարդուի երկրորդ ու դժուարագոյն մը եւս՝ Տիգրիսի անցքը։

Բոլոր պայմաններն ու պարագաները կշռելով, դիւրք մը գլխաւորաբար, որ մերձաւորապէս 20 քիլոմէթր Դիարպեքիրէ դէպի Հիւսիս կը գտնուի, այս խնդրոյն նպաստաւոր լուծում մը կարող է տալ։ Հոս, Շարխան[1] գիւղին մօտիկ Տաւրոսեան գօտւոյն սարաւանդակը կը վերջանայ, եւ կը սկսի Տիգրիսի բարեբեր դաշտագետինը։ Այս դաշտին վրայէն կարող էր Լուկուլլոս այլ եւս անհոգ ու անկաշկանդ, ազատ համարձակ քալել. այլ եւս ոչ լեռներէ զգուշանալու պէտք ունէր եւ ոչ ճամբաներէ, կարող էր խաղացնել իւր զինուորներն ուր որ ուզէր եւ ինչ ձեւով կամ շարքով որ հաճէր։ Այն այս վայրն ալ, ինչպէս Հ. Կիպերթի քարտէսէն կը տեսնուի, կապուած է Ջիբենէէ Դիարպեքիր՝ գետի վրայով երկարող պողոտային, որմէ կ'եզրակացընենք, թէ զինուոր անցանելի պէտք է եղած ըլլայ գետին այս մասը։ Եթէ ծանծաղ չըլլար, ինչ հարկ կար ճամբուն ուղղութիւնը գետին վրայէն անցընել, երբ հնար էր առանց դժուարութեան եւ առանց մանուածապատ իսկ շրջաններու, Տիգրիսի վրայ ձգուած կամուրջն օգտագործել[2]։

1 Համմ. Լինչի քարտէսը. Շահարան՝ Ա. Կիպերթի քարտէսին վրայ։

2 Ա. Կիպերթի քով, որուն քարտէսն յետակայն լաւագոյն մեծ ու ճշգրիտ է, Ֆարքէյր-Կաղէի մօտ՝ տակաւ ինչ

Արդ ուրեմն, որովհետեւ Արզրումի կանանչը տարածուող այս սարահարթը, ինչպէս տեսանք, նպաստաւոր դիրք մը կ'ընծայէր՝ ուզուած ուղղութեամբ զօրաշարժի մը, Լուկուլլոս բնական է որ նախընտրած ըլլալու էր ուղղակի այս ճամբէն քալեցնել իր բանակը դէպի այն դիրքը, ուր կը վերջանան Տաւրոսի սարաւանդները՝ որոնց շղթանը տարածուած էր ընել, եւ ուր, մեծ դիւրութեամբ, կարող էր անցնիլ գետէն, նոյն իսկ եթէ անոր ջրերը բարձրացած ըլլային։ Միանգամայն գետին հանդիպակաց աջ եզերքին վրայ շարունակուող սարահարթիս զառիթափերը գետեզերքէն 5 քիլոմեթր անդին գտնուելով, Լուկուլլոս նոյն տեղն կրնար ընտրել իր ճամբար իր զօրաց. եւ անկէ մինչեւ հեռագոյն հորիզոնները պայծառ տեսնուող այս միահարթ կողման բոլոր անկիւնները հիմնովին քննելէ յետոյ, կարող էր անվրդով՝ գետին աջակողմեան ափունքը փոխադրել իր բանակը։ Յաւելունք ասոր վրայ նպաստաւոր պարագայ մը եւս, որ այս ճամբով Լուկուլլոս օր մը խնայած կ'ըլլար, ինչու որ այս ճամբան Դիարբեկիրի վրայով անցնող ճամբէն 25 քիլոմեթր աւելի կարճ է։

Ոեւէ պատճառ մը չկայ չընդունելու, որ Լուկուլլոս Դէվէգէջիդ-սուի գետախառնունքէն

դէպի Հիւսիս Ճահարանէ, պզտիկ մը կը ճշմարտէ Տիգրիսի վրայով անցնող, մինչեւ Արզրում-Մուշէնէ դէպի Տիգրանակերտ տանող այսօրուան պողոտան Դիարբեկիրի քովէն կամուրջէն վրայէն կ'անցնի, այդ քաղաքը հանդիպելէ յետոյ։ Սակայն կարճ ճամբայ մը կարելի եղաւ՝ դարձնել մեր պզտիկն կը մնայ։

քիչ մը վարով անցած ըլլայ Տիգրիսը, եւ այսպէս բուն Հայաստանի սահմանը մտած։ Լուկուլլոս նպատակ չունէր սակայն, Հայաստան կոխած վայրկեանին, անմիջապէս Տիգրանի վրայ յարձակելու։ Եգիպտոսի անխորհուրդ ծրագիր մը, շատ հաւանական էր որ, իրեն համար՝ Հայաստանի հողին վրայ, տագնապալի կացութիւն մը ստեղծէր։ Նա կ'ուզէր — ինչպէս Մուրենա, որ հայ զօրաշարժին վերջապահ գունդերը միայն կը զարնէր — իյնալ թշնամւոյն վրայ այն տեղ՝ ուր ան բանակած նստած էր, այս է՝ Տիգրանակերտի առջեւ։ Այս պարագային սակայն պէտք էր Լուկուլլոս գարձեալ անգամ մը եւս Տիգրիսէ անցնիլ, եւ այն՝ շատ դժուարանցանելի տեղէ մը։ Այս անցքին, ինչպէս նաեւ թիկունքէն թշնամւոյն վրայ իյնալու ծրագրի մը մասին մեր աղբիւրները կը լռեն։ Հնար է սակայն ենթադրել որ Տիգրան եւս այդ միեւնոյն դժուարագնաց ու վտանգալից անցքին իր զօրաց խնայել ուզելով՝ որոշած ըլլայ գետին աջ եզերքին վրայ թշնամւոյն սպասել, եւ անցքին բոլոր ճամբաները զգուշութեամբ պահպանել։ Այսպէսով Լուկուլլոսի բոլոր զինուորական հնարագիտութիւնը, ինչպէս կը խորհրդածէ Մոմսէն[1], այնպիսի դժուարութիւններով ու բախտի պատահարներով լի պիտի ըլլար, որ իրեն նման փորձ զօրավար մը բնականաբար պիտի չուզէր իր անձը վտանգի, եւ իր զօրքը կրկին անգամ գետն անցնելու տաժանելի աշխատութեան մը ենթարկած ըլլալ։ Նա որովհետեւ, ինչպէս յետոյ

1 Hermes IX կամ Ges. Schriften, Bd. IV. S. 300

պիտի տեսնենք, այս արշաւանքին գլխաւոր նպատակն ոչ այլ ինչ էր, եթէ ոչ՝ Տիգրանի մեծափառութեամբ՝ սատանը պաշարելով զինքը Հռոմայեցւոց դէմ ճակատելու հրապուրել, այս ուրեմն պէտք չունէր բնաւ Լուկուլլոս Տիգրիսն անցնիլ, եթէ Տիգրանակերտ աջակողմեան եղերքը հաստատուած ըլլար։

Եթէ Լուկուլլոս այս ճամբուն հետեւած է, որ Նիփրատէ սկսեալ մինչեւ Տիգրիս մերձաւորապէս 150 քիլոմէտր երկայնութիւն ունի, կարող էր արագախաղաց գնացքով, եւ օրական, միջին հաշուով 25 քիլոմէտր միայն քալելով՝ Նիփրատն անցնելէ շաբաթ մը ետքը Հանգիստ Տիգրիսի ձախ եղերքը հասնիլ, եւ նոյն տանուան տեղեկատու պատմութեան անկարգ ու անկերպարան վիճակին շնորհիւ զՏիգրան բոլորովին յանկարծակիի բերել, ինչպէս որ ալ պատահեցաւ։ Բայց այլ եւս ուշ էր, եւ զօրաւոր բանակ մը միայն կարող էր Հռոմայեցիները մայրաքաղաքին պարիսպներուն առջեւէն հեռացնել։ Այսպիսի բանակ մը սակայն կը պակսէր Տիգրանի նոյն վայրկենին։

5.

Հայոց թերակատար պատրաստութիւնը:

Ապպիոսի դեսպանութեան գործին աւարտումէն վերջ, Հայերն իրենց տրուած երկար ժամանակամիջոցէն, դժբախտաբար, բնաւ չգիտցան օգտուիլ։ Պատերազմ յայտարարուելուն

Հետեւութեամբ՝ Տիգրան զիջաւ վերջապէս իր ծերունի աներոջը հետ տեսակցիլ, զոր, տարի մը եւ ութ ամիս ամբողջ, իր աչքերէն հեռու՝ անարգ աքսորի մը ենթարկած էր անմտաբար[1]։ Երկու արքայից իրարու այս մեծաշուք հանդիպումը հաւանականագոյնս տեղի ունեցած է 70 ական թուականին Ապրիլ կամ Մայիս ամսուան մէջ։ Անմնասեր մտերմութեամբ երբեք չը տեւող այս գաղտնի բանակցութեանց ուղղակի արդիւնքն եղաւ իրենց երկու ամէնէն աւելի վստահելի եւ միանգամայն կարողագոյն նախարարներուն շնորհազրկութիւնը, բնականաբար, իբր պատասխանատու երկու արքայից իրարմէ այսպէս ուծանալուն։ Այսպէս Մետրոդոր սկեպսացին իւր տիրոջ շահերուն ներհակ Տիգրանի դէշ խորհուրդ մը տուած ըլլալու պատրուակով Միհրդատի վրէժին զոհ գնաց. նմանապէս Ամփիկրատէս, աթենացի հռետորը, որ Տիգրանի արքունիքը կը բնակէր, նոյն միջոցներուն է որ բռնական մահուամբ սպաննուեցաւ[2]։ Երկու արքայից միջեւ տեղի ունեցած այս մտերմական բանակցութեան յաջորդեց շքեղ ու մեծահաց հացկերոյթ մը։

Այս հանդիպման ռազմագիտական արդիւնքն այս եղաւ որ Պոնտոսը յետս գրաւելու համար Տիգրան Միհրդատի 10.000 հոգինոց հայ ձիաւորաց գունդ մը յանձնեց, որով եթէ յաջողէր իսկ իսկոյն զայն գրաւել, պիտի կարե-

[1] Memnon c. 55.

[2] Plut. Luc. c. 22.

նոր գոնէ հռոմէական բանակը շարունակ անհանգիստ ընելով՝ վտանգաւոր դիրքի մը դայն մատնել։ Զայս կանխաւ գուշակած ըլլալով Լուկուլլոս, խրատունք ունէր ուրեմն պնդելու, թէ մահը միայն կարող էր ծերունի Միհրդատն անվնաս ընել։ Հռոմայեցւոց Հայաստան բրած յարձակման դէմ Տիգրանի ձեռք առած միջոցներու մէջէն Միհրդատի արշաւանքը միայն կը յիշատակուի. այս եւս սակայն կ՚երեւի թէ շատ ուշ եղած ըլլալու էր, որովհետեւ հազիւ Միհրդատ ճամբայ ելած՝ յանկարծ յետս կոչուեցաւ, Հայաստանի մէջ Հռոմայեցւոց դէմ դիմադրական գործողութեանց մասնակցելու[1]։

Այսպէս անցաւ 70 ական թուականը, առանց Հայոց կողմէ դիմադրական ոեւէ քայլ մ՚առնուած ըլլալու։ Եթէ Տիգրան, իւր ինքնահաւան ամբարտաւանութեամբն, իրեն խորհրդածութեան կարեւոր ու մեծ խնդիր համարած էր գիտնալ, թէ Հռոմայեցիք Եփեսո՞ս պիտի մնան, թէ՝ առանց ասիացի զունդերու հետ դարձուելու Յունաստան անցած են[2] — Միհրդատ սակայն՝ իւր ցարդ տեսած անխուր փորձերէն զգաստացած, աւելի խոհեմ ու աւելի խորագէտ պէտք էր եղած ըլլալ, եւ միտ չդնել Տիգրանի այս անմիտ ու արտառոց խորհրդածութեանց։ Հետեւաբար, շատ դժուար է մեկնել թէ ինչ պատճառաւ պաշտպանութեան, կամ՝ մինչ եւս՝ նախազգուշութեան — գոնէ գոհացուցիչ չափով մը —

[1] Memnon c. 56.

[2] Plut. Luc. c. 25.

միջոցներուն վրայ չէր պնդած Միհրդատ։ Դուցէ ներեւս ինքն ալ Լուկուլլոսի արագ արագ գործի ձեռնարկելուն վրայ կը տարակուսէր, որովհետեւ ինք իսկ անոր վրայ տարած յաղթանակները ոչ թէ դու ճակատներու մէջ, այլ վարանքով ու սովամահութեամբ միայն շահուած յաղթանակներ եղած էին։

Երբ սակայն Լուկուլլոսի Հայաստան մտած ըլլալուն լուրը հասաւ, շատ ուշ էր արդէն։ Առաջին գուժկանը որ այս բօթը բերել համարձակած էր Տիգրանի՝ կախաղանով քաւեց իր յանդգանքը, որովհետեւ Տիգրան կասկածեցաւ որ բօթաբերին դիտաւորութիւնն էր այսու իւր հպատակներին իրեն դէմ ապստամբեցընել[1]։ Այս կերպով ահա դադրեցաւ շատ մը թանկագին ժամեր ընդվայր կորսուեցան։ Ի վերջոյ սակայն, Միհրբարզան, Արքայից արքային սիրելին, իւր անձը սրտապնդելով՝ երբ Տիգրանի զգացուց մօտալուտ վտանգը, հազիւ թէ կարելի եղաւ 3000 ձիաւոր[2] եւ աւելի մեծ թուով հետեւակ զինուոր յառաջացող թշնամւոյն վրայ նետել։ Հայակոյտ զօրաց հրամանատարութիւնը յանձնեց Տիգրան Միհրբարզանի, որ ինքնին այս առջեւութիւնը բերած էր իրեն, մեծամիտ ու ինքնավստահ շեշտով մը հրամայելով անոր. «Բեր ինծի Լուկուլլոսը կենդանի, իսկ մնացածները ոտքերուդ տակ ճախճախէ անցիր»։

---

[1] Appian. Mithr. c. 24 եւ Plut. Luc. c. 25. Վերջինս սակայն գուժկանը գլխատուած կը համարի։

[2] Այս ու հետեւեալ դէպքերուն մասին հմմտ.

6.

*Հայոց առաջին ընդհարումը:*

Ճեպընթաց գնացքով Տիգրիս անցնելէ, եւ ճամբաներու ամէն կարգի դժուարութեանց ու արգելքներու յաղթելէ ետքը, հասաւ Լուկուլլոս Տիգրիսի դաշտագետինը, ուր սակայն կարող էր, ամէն վայրկեան, թշնամի այրուձի թեթեւազէն գունդերու անակնկալ յարձակումներու ենթարկուիլ։ Այս պատճառաւ, արտաքոյ կարգի զգուշութեամբ իւր չուն շարունակեց՝ բանակը յառաջապահ գունդերով պաշտպանած, որպէս զի մի գուցէ խաղացքի միջոցին (οὐχ ἐν τάξει) յանկարծակի կերպով յարձակման ենթարկուի[1]։ Այս պարագան արդէն պերճախօս կերպով կ'ապացուցանէ թէ Լուկուլլոս դաշտագետնի մը վրայէն է որ կը քալէր, եւ միանգամայն բացէ ի բաց կը տարամերժէ լեռներու մէջէն Փիրան-Հանիի վրայով եղած չուի մը ենթադրութիւնը։ Որովհետեւ հոն, լեռներու վրայ, այնքան մեծ զգուշութեան մը հարկ չկար, եւ թէ անհնար իսկ էր մտածել, որ ձիաւորներու այնպիսի ստուար գունդ մը, որուն կը հրամայէր Միհրբարզան, արդիւնաբեր կերպով հոն դինուորական գործողութեան մը ձեռնարկել կարենար։

Plut. Luc. c. 25. Appian. Mithr. c. 84 պատմածին համաձայն Միհրբարզանի ընդ ամէնը 2000 ձիաւոր միայն յանձնուած կ'ըլլայ։

[1] Plut. Luc. c. 25.

Այն ինչ հռոմէական բանակին սկսեր էր ամրացնել իր բանակետղը, եւ դեռ մասամբ զինուորներն իրենց չուն կը շարունակէին, լուր հասաւ Լուկուլլոսի, թէ մօտ կը գտնուի հայ զօրաբաժին մը։ Բանակետղի պաշտպանութեան համար ինքն անձամբ ստանձնեց գլխաւոր բանակին հետ, կասկածելով որ մի գուցէ մերձակայ վայրերն եւս թշնամի գունդեր գտնուելով՝ յառաջ քան ճակատ յօրինելը, յեղակարծ յարձակման մ'ենթարկուի։ Սեքստիլիոս, իր տեղակալը, 1600 ձիաւորով եւ նոյնքան (οὐ πολλῷ πλείονες) լեգէոնականներով ու թեթեւազէններով կանխաւ ղրկեց, որպէս զի՝ առանց զարնուելու, մօտէն թշնամւոյն դիրքերը հետազօտէ, եւ ի պահանջել հարկին, բանակետղին ամրացման թեւ ու թիկունք ըլլայ, յարձակման մը պարագային, զայն թիկանց կողմէ պաշտպանելով։ Սեքստիլիոս իր ստացած հրամանին համաձայն շարժեցաւ եւ խուսափեցաւ թշնամւոյն ընդհարելէ։ Երբ սակայն Միհրբարզան հեծելազօրաց վրայ յարձակեցաւ, ստիպուեցաւ Սեքստիլիոս ճակատ տալ։ Խառնուրդի միջոցին Միհրբարզան ինկաւ եւ հայ զօրաբաժինը կատարելապէս քայքայած փախուստի դիմեց, որ միջոցին զինուորներէ շատերը սպաննուեցան։

Այս պարտութեան լուրը հազիւ թէ առաւ Տիգրան, իսկոյն թողուց իր մայրաքաղաքը՝ Տիգրանակերտ, եւ նոյնին հրամանատարութիւնը յանձնեց Մանկէոս զօրավարին։ Իրեն ուղեկցող բոլոր գունդերը կարելի եղածին չափ շուտ հա-

մախումը գումարեց, որոնց մէջ կը գտնուէին նաև Ասորիքի կուսակալ՝ Մագադատէսի — զոր Տիգրան Լուկուլլոսի յարձակման պահուն իւր մօտ կոչած էր — պահապան զօրագունդերը[1]։ Նոր յարձակողականի մը պատրաստութեան համար սակայն ժամանակ չթողուց անոր Լուկուլլոս։ Վերջնոյս նշանաւորագոյն տեղակալները՝ Մուրենա և Սեքստիլիոս, հրաման առացան փութով Տիգրանի վրայ գրոհ տալու։ Սեքստիլիոսի պաշտօնն էր արաբական ստուար զօրաբանակի մը յառաջխաղացութեան առաջքն առնուլ, իսկ Մուրենային յանձնուեցաւ Տիգրանի օգնութեան փութացող զօրագունդերը զարնել։

Երկուքն ալ յաջողութեամբ ի գլուխ հանեցին իրենց յանձնարարուած պաշտօնը։ Սեքստիլիոս յանկարծ յարձակեցաւ Արաբացւոց վրայ, երբ անոնք կը պատրաստուէին զանկէշ շինել, եւ անոնցմէ շատերը սրախողխող սպաննեց։ Իսկ Մուրենա Տիգրանի բանակին ետեւէն հետամտելով՝ հասաւ վերջապահաց գունդին, անկոխ ու դժուարագնաց նեղ կիրճի մը մէջ — հաւանականագոյնս Դուլպ-սուի կիրճը — ուսկէ անցին բացուող հանգիստ ճանապարհը Հայաստանի ներքնաշխարհը կ'առաջնորդէ։ Տիգրան ու անոր ուղեկից գունդերը յայտնի գերութենէ մը մազապուր կրցան պրծանիլ, այնու որ իրենց ունեցած բոլոր աղխն ու կահը Հռոմայեցւոց թողուցին, որոնք նոյներու պահպանութեան յատկա-

[1] Appian. Syr. c. 49.

ցուած վերջապա՛ս զինուորները մասամբ սպանեցին, մասամբ ալ գերի առին։ Ամէն պարագայի մէջ Միհրդարզանի դէմ մղուած այս պատերազմը Տիգրանակերտի քով բաւականին մօտերը եղած ըլլալու էր, որ Մուրենա՝ քաշուող թշնամին հետապնդելով, այնքան շուտ կրցեր էր անոր հասնիլ։ Այս պարագան արդէն Տիգրանին ակներեւ ցոյց կուտայ, թէ որ աստիճան անպատրաստ էր Տիգրան հռովմէական յարձակման մը դիմադրել կարենալու։

---

## Գլուխ Բ.

### Լուկուլլոս Տիգրանակերտի առջեւ։

#### I.

#### Սկիզբն պաշարման քաղաքին։

Այսպիսի զգուշական միջոցներով իր զինուորական կացութիւնը բաւականին ամուր ու ապահով հիմերու վրայ դնելէ ետքը միայն համարձակեցաւ Լուկուլլոս Տիգրանակերտի վրայ քալել։ Նա համոզուած էր որ եթէ անգամ մը Հայաստանի մայրաքաղաքը ձեռք անցընէր, ալ այնուհետեւ ճամբան հարթուած պիտի ըլլար իր անդրագոյն ծրագիրներն անաշխատ իրագործելու. Նախ՝ որովհետեւ Տիգրանակերտը դրուե-

լով, տիրապետած պիտի ըլլար Հայաստան տանող գլխաւոր ճամբուն, եւ երկրորդ՝ հոն, Տիգրանակերտ կը գտնուէին տակաւին թագաւորին հարճերն ու անոր ամբար գանձերը։ Եւ որովհետեւ ամենամեծ ամօթ ու ծանր նախատինք էր ասիացի իշխանականի մը համար իւր կանանոցին թշնամեաց ձեռք գերի իյնալը, այս իսկ պատճառաւ կը յուսար Լուկուլլոս որ շեշտակի Տիգրանակերտի վրայ քալելով՝ կերպով մը ստիպած պիտի ըլլար զՏիգրան իւր լեռներէն՝ ուր նա ապաստանած էր ու ամրացած, վար իջնելու՝ սակ իւր հարճերն անարգ գերութեան մը ձեռքէն ազատելու հոգէն դրդեալ։ Բայց դաշտի վրայ ճակատելէ չէր խիթար բնաւ Լուկուլլոս, վասն զի քաջ գիտէր նա թէ իւր հռոմէացի զինուորներն անհամեմատօրէն աւելի բարձր էին թէ իրենց զինուորական կրթութեամբն եւ թէ կորովովը, քան Տիգրանի դրօշին տակ համախմբուած անկիրթ ու անհրահանգ հրոսները։

Արդ. Տիգրանակերտի պարիսպներէն դուրս գտնուող անպաշտպան մասերը՝ արուարձաններն ու արքունի դղեակը գրաւելէ յետոյ, Լուկուլլոս ձեռնարկեց իսկոյն մայրաքաղաքին պաշարման։ Քաղաքը շուրջանակի, միջնաբերդովը միասին, պատնէշներով ու խրամներով շրջապատեց, մարտկոցներ ու պաշարման մեքենաներ զետեղեց հոն, եւ մինչեւ քաղաքին պարիսպներուն առջեւ երկարող ականներ բանալ տուաւ[1]։ Ապպիանոսի

1 Appian. Mithr. c. 84։ Անհերքելի է որ Ապպիանոս հոս, ինչպէս նաեւ շատ յաճախ այլուր, Պլուտարքոսի հետ

պատմածին համաձայն Սեբաստիլիոսի կը վիճակի Տիգրանակերտի պաշարման գործողութիւնները վարելը։ Այս սակայն ուղիղ չի թուիր ինձ, եւ վերիպանքի մը արդիւնք պարզապէս կը համարիմ Լուկուլլոսի անուան հոն չյիշատակուիլը։ Խնդիր չի վերցըներ բնաւ թէ հրամանատարն անձամբ, ինչպէս Պլուտարքոս եւս նոյնը կը շեշտէ[1], վարած ըլլալու էր այսպիսի դժուարին պաշարման մը բոլոր գործողութիւնները։ Անհնար է նմանապէս ենթադրել, որ Լուկուլլոս Տիգրանակերտի պաշարման հետ միաժամանակ Հայաստանի ուրիշ քաղաքներն եւս — որոնք, ի հարկէ, ոչինչ ու աննշանակ բաներ կրնային եղած ըլլալ — պաշարելու զօրք յատկացընելով՝ իր արդէն իսկ սակաւաւոր բանակն ընդ վայր վատնած ըլլայ, ինչպէս կը պատմէ Մեմնոն[2]։ Մայրաքաղաքին անկմամբն արդէն Հայաստանի այդ կողմերն ինքնին ինկան՝ առանց մեծ դժուարութեան, հռոմայեցւոց ձեռքը։ Մինչ ասդին Լուկուլլոս Տիգրանակերտի բերդերուն հետ կը կռուէր, անդին Տիգրան զօրաժողովի սկսաւ, եւ կարելի եղածին չափ շատ զինուոր իր շուրջը հաւաքումը գումարելու համար՝ հրաման ղրկեց բոլոր հպատակ ու հարկատու թագաւորներու, իրենց ամէն տրամադրելի միջոցներովն եւ ուժովը իր քով փութալ, իրեն թեւ ու թիկունք ըլ-

---

ընդարձակօրէն յիշատակուած անցքութիւնները համառօտելով՝ զանոնք մեծապէս խանգարած ու այլափոխած է։

1 Luc. c. 26.

2 Գլ. 56. ըստ Նաւե. Հետեւեալը։

լայն։ Հպատակ թագաւորներէն շատերն այս հրաւէրին հանապատասխանելով, Ադիաբենէի ու Ատրպատականի թագաւորներն իրենց մարտ-րնաիր զօրագունդերովը, նոյնպէս Վիրք, Աղուանք ու Արաբացիք իրենց մարտիկներովը հայ ընդ-հանուր բանակատեղին հասան։ Այս միջոցին էր որ Միհրդատ եւս ետ կոչուեցաւ՝ Պոնտոսը վե-րագրաւելու համար իրեն յանձնուած հայ հե-ծելագունդովը միասին։ Տիգրանի մանաւանդ հո-գածութեան առարկան էր սակայն իր կանան-ւոյն ապահովութիւնը, որոնց վիճակին մասին թէեւ շատ կը մտատանջուէր, ու կը փափաքէր զանոնք՝ պաշարուած քաղաքէն ամէն գնով ա-զատուած՝ իր մօտը ունենալ, սակայն միւս կողմէ զգալով իր ակարութիւնը, չէր խիզախեր Հռո-մայեցւոց վրայ գրոհ տալով՝ քաղաքին պարիսպ-ներուն առջեւ, անոնց հետ զարնուիլ։ Այս. խոհա-պէս, շատ յանդուգն եւ միանգամայն արկածա-ւոր ձեռնարկն ի գլուխ հանելը յանձնուեցաւ 6000 հոգիէ բաղկացած ձիաւոր գունդի մը, որուն հրամայուեցաւ թշնամին ճեղքելով քա-ղաք մտնել, ու արքային հարճերն, հարուստ գանձերովը միասին, բանակատեղին փոխադրել։

Հայ հեծելագունդը մեծ յաջողութեամբ ի գլուխ հանեց իրեն վստահուած այս ծանր պաշտօնը։ Այս գունդէն ձիաւոր խումբ մը, գի-շերանց, Հռոմէական բանակատեղին վրայ յար-ձակեցաւ, եւ դէպի գուռ., անընդհատ, տարա-փանման նետեր տեղացնելով՝ խափանեց Հռո-մայեցի զինուորներուն բանակատեղէն դուրս

եղելը. որ միջոցին, միւս խումբն ազատօրէն ու անարգել կրցու քաղաք խուժել, եւ արքունի կիներն ու մեծագին գանձերն առած՝ Տիգրանի հասցուց շտապով։ Այս խումբն էր միայն որ բախտն ունեցաւ առանց կորուստ տալու, անվնաս ետ դառնալ. մինչդեռ միւս խումբն, դժբախտաբար, ամբողջովին բնաջինջ եղաւ։ Հետեւեալ օրն, երբ Հռոմայեցիք իրաց կացութեան իրազեկ եղան, մէկէն դուրս խոյացան իրենց բանակէն, եւ իրենց թրակացի հեծելազօրուն պաշտպանութեան ներքեւ, յարձակեցան փոքրաթիւ խումբին վրայ, որուն մեծ մասը սրախողխող ըրին, եւ մնացածները գերի վարեցին։ Բայց եւ Տիգրան հասած էր իւր հետապնդած նպատակին. փրկած ըլլալով ստոյգ կորուստէ այն, ինչ որ ամենէն աւելի յարգի էր իրեն ու սիրելի։

Այսպէս կը պատմէ Ապեանն այն միջադէպը, որուն վրայէն լռութեամբ մը կ՚անցնի Պլուտարքոս. վասն զի, ինչպէս սրամիտ կերպով մը դնել կու տայ Գարդթաուշեան[1], պատիւ չէր բերեր ան Լուկուլլոսի զինուորական հանճարին ու անոր համբաւաւոր քաջութեան։ Ապպիանոսի[2] պատմածին համաձայն, Տիգրան այս հեծելագունդն այն պահուն թշնամւոյն վրայ արձակած կ՚ըլլայ, երբ նա ամբողջական զօրաբանակ մը համախմբելով՝ դէպի Տիգրանակերտ սկսած էր յառաջանալ, Լուկուլլոսի հետ զար-

1 Քննական պատմ. Հայոց. Բ. 144։
2 Mithr. c. 85.

նուեյու։ Սակայն Մեծնանի խաչերէն բացայայտ կը հաւկըցուի, որ այս արշաւանքը շատ աւելի յառաջ անցի ունեցած ըլլալու էր, ինչ որ շատ ալ բնական էր։ Ընհաւանական չէ նմանապէս ենթադրել, թէ Տիգրան իր այս խելակորոյս փախուստի միջոցին մասրերած ըլլայ ազատել նաեւ իր կանանց-ցն ու իր գանձերուն գոնէ մէկ մասը, եւ իր այս խորհուրդն իսկոյն գործադրել տուած՝ քանի որ առ այդ փախճան ունէր դեռ եւս իր արամադրութեան տակ բաւականաչափ զինուոր։ Եթէ ձգձգուէր գործն, ու զանդաղէր նոյնին գործադրութիւնը, այնուհետեւ անտարան եղած պիտի ըլլար հռոմէական լեգէոնները ձեռք բերելու մեւէ փորձ. նամանաւանդ եթէ անգամ մը այս վերջիններն իրենց պաշարման բոլոր գործողութիւններն աւարտելով, քաղաքը խիստ պաշարման տակ առած նստած ըլլային։ Այս պարագան ինքնին բաւ է կարծեմ, զմեզ կատարելապէս համոզելու, որ հայ հեծելազունդին այս յանդուգն արշաւը անցի ունեցած կրնար ըլլալ քաղաքին պաշարման ձեռնարկուելէ շատ քիչ յառաջ միայն։

Ի հարկէ, այսպիսի ձախողանք մը չէր կարող վհերցնել Լուկուլլոսի անձկուն ոգին։ Նա իսկոյն հրամայեց աշալուրջ զգուշութեամբ քաղաքն ամէն կողմէ ամենախիստ կերպով պաշարել։ Թէեւ պարիսպներէն դուրս գտնուող միջնավայրերն ու արքունի շէնքերն առանց կռուի գրաւուեցան, սակայն Տիգրանակերտի բերդապահ զունդերը յամառօրէն պաշտպա-

նեցին քաղաքը Հռոմայեցւոց դէմ, որոնք ահա-
ւոր կորուստներ ունեցան, գլխաւորաբար, կորո-
վաձիգ Հայ աղեղնաւորներու չեշտակի արձակած
նետերէն։ Մեծ եղաւ նմանապէս անոնց նեղութա-
կան վիճակը, երբ Հայ բերդապահ գունդերու
հրամանատարը, Մանկէոս, Հռոմայեց պաշարման
մեքենաներու վրայ հրածորան կպրաձիւթ տե-
ղացընել. աւերիչ ու սոսկալի նիւթ մը, որ մինչեւ
նոյն տաեն անծանօթ էր Հռոմայեցւոց։ Երբ
Հռոմայեցի զինուորները գերմարդկային ճիգեր
թափելով հրակէզ մեքենաները փրկել ուզեցին,
տեսան որ անհնար է այդ նիւթով վառուած
առարկաները հրոյ աւերումէն ազատել[1]։ Պաշար-
ման կռիւներն այսպէս երկարատեւ եւ անհնարին
տատանողութեամբ շարունակուեցան. Ի վերջոյ,
սակայն, կ'երեւի թէ Լուկուլլոս, յառաջ քան
օժանդակ զօրագունդերու ժամանումը, կրցած
ըլլալու է քանի մը զինուորական յաջողութիւն-
ներ ձեռք բերել, որ պաշարիչ գունդերը յա-
ջողեր են սանդուղներով քաղաքին պարիսպները
վերելակել, ու պատնէշներու ծնօտներն ու թա-
քստոցները քանդելով՝ հոն բարձրահայեաց
գիրքի մը տիրանալ[2]։

[1] Xiphilinos—Cassius Dio frgm. 178. 2. Համե-
մատէ. Sallust. IV. frgm. 61—62.
[2] Sallustius. frgm. 63.

2.

*Զօրաշարժ արքայական բանակին: Լուկուլլոս պատերազմական խորհուրդ կը գումարէ:*

Մինչ Տիգրանակերտ պաշարիչներու բուռն յարձակումներուն դէմ ինքզինքն այսպէս դիւցազնաբար կը պաշտպանէր, անդին Տիգրան Հայաստանի ներսերը նոր զօրաժողով ընելով՝ հսկայ բանակ մըն էր կազմած. Բնականաբար, այս նորակազմ բանակը, յամենայն դէպս, Տիգրանակերտէ ոչ շատ հեռի միջավայր մը կեդրոնացած ըլլալու էր. Ինչու որ, այդպիսի մեծ բանակի մը համար — ինչպիսի եղած են միջասիական բանակները — արտաքոյ կարգի դժուարին գործողութիւն մը եղած պիտի ըլլար Հայաստանի լեռնաշղթաներուն յարաբերաբար նեղ եւ անձուկ արահետներէն յառաջ խաղալ։ Այս պատճառաւ Տիգրանի շահն արդէն այնպէս կը պահանջէր, որ զօրաժողովին բուն կայքի թըշնամւոյն մասերը, ծածկուած ու պաշտպանուած դաշտագետնի մը վրայ համախմբուէր, ուր նաեւ կարելի ըլլար, մեծ դիւրութեամբ, այսպիսի մեծահանդէս բանակ մը պարենաւորել։

Արդարեւ, Տիգրանակերտէ դէպի հիւսիս, չորս հինգ օրուան (շուրջ 100 քլմ.) հեռաւորութեան մը վրայ կը տարածուի 75 քլմ. երկայնութեամբ ու 10է մինչեւ 15 քլմ. լայնութեամբ Մշոյ ընդարձակ դաշտագետինը, որուն մէջէն կը հոսէ Մեղրագետը (Թըր. Կարա-սու), Տելեբոաս՝ Քսենոփոնի։ Սոյն հարթա-

վայրը կարծես բնականէն սահղծուած ըլլայ այսպիսի հսկայ չօրարանականներ իւր վրայ համախմբելու ու զանոնք հօն, անդւոյն վրայ, պարենաւորելու համար։ Այս վայրը մասնաւնչելով բաժ էր արդէն Պիրերա[1], թէ հոս միայն եւ ոչ այլուր կարող էր Տիգրան իւր բանակները համախմբած ըլլալ։ Ընհիմն է, հետեւաբար, Գարագաշեանի[2] ենթադրութիւնը, թէ Տիգրան իւր զօրքը Վանայ բարձրաւանդակին վրայ կը գումարէ։ Բայց ինչու Տիգրան իւր նոր բանակն ապահով ու անկասկած գումարել կարենալու համար այսչան հեռուները փախչէր։ Ի՞նչ բան կը ստիպէր զինքը Հայաստանի ներքնագաւառներն ու անոր անմատչելի լեռներն երթալ ապաւինիլ, եթէ թշնամին Միջագետք բանակած նստած էր, որ իրմէ հսկայ Մասիս լեռնով ու լայնատարած Տիգրիսի անանցանելի ջրերովն անջատուած էր։ Այս եւս ահա ապացոյց մըն է, թէ Տիգրանակերտը Տիգրիսի ձախակողմն էր հաստատուած։ Ասոնցմէ զատ, իւր եւ Հռոմայեցւոց միջեւ, Մշոյ դաշտին հարաւէն կը բարձրանան՝ անառիկ պարիսպներու նման, Խոյթի (Թլըկուրը) ու Սասնոյ բարձրաբերձ լեռնաշղթաները, որոնցմով իւր բնականէն պաշտպանուած՝ կարող էր անվրդով պատրաստուիլ եւ իւր բանակները կատարելապէս սպառազինել։ Մուշէ գրեթէ ուղղակի, Գարկոշ ու Անտող լեռնաշղ-

[1] Akad. d. Wissenschaften եւ Hermes IX, S. 137.

[2] Անդ 143։

թանկրու մէջանցի կիրճէն անցնելով. Ճամբայ մը կ՚երկարի դէպի Կուլփ-ասուի Ձորը, մէկ աղբերակներ Քառաման-սուի, եւ անկէ մինչեւ Տիգրանակերտի մօտերը։ Այս ճամբուն անուղղութիւնը գրեթէ հինգ օրուան ճանապարհ է, եւ բանակի մը համար դիւրագնաց։ Եթէ երբեմն Տասն Հազարաց բանակը կրցեր էր Քսենոփոնի հրամանատարութեան ներքեւ, Կունաքսայի դըժբախտ ճակատամարտէն յետոյ, այս ճամբու վրայէն հանդիստ նահանջել[1], այս ինչո՞ւ Տիգրան եւս պիտի չկարենար իր հազարաւորները միեւնոյն ճամբով թշնամւոյն վրայ քալեցնել։

Տիգրանի այս զօրախաղացի մասին ամփոփ միայն կը հաղորդէ մեզ Պլուտարքոս[2], թէ Տիգրան Տաւրոսի լեռներն անցաւ։ Վկայութիւն մը, որ մեր այս ենթադրութեան շատ կը նպաստէ. վասն զի այն լեռները, որոնց վրայէն Տիգրան Մշոյ դաշտէ ելլելէ ետքը պիտի անցնէր, հիներէ Տաւրոս կը կոչուէին։ Մենք իրաւամբ կարող ենք ընդունիլ, որ Հայք վերոյիշեալ կիրճն անցնելէ յետոյ մինչեւ Ներքինի՝ Կուլփ-ասուի վրայ, անընդհատ դէպի հարաւ շարունակած են յառաջանալ։ Անկէ սկսեալ դէպի ձախ շեղե-

[1] Հմմտ. այս մասին՝ Karbe, Der Marsch der Zehntausend (Rezension von C. F. Lehmann, Literar. Zentralblatt 1900); C. F. Lehmann, Sitzungsber. Berl. Akademie der Wissenschaften, 1899, S. 745, Anm. 1; W. Belck, Zeitschrift für Ethnologie, 1899, S. 255 եւ Verh. Berl. anthrop. Ges., 1899, S. 681 (Sitzg. von 18. Nov.).

[2] Luc. c. 27.

րով, եւ Ռոմանագիտ-ութի ու Անգլիագիտ-ութի (կամ Արդին-ութի) մէջեւ ջուրերու բաժանման գծին երկայնութեանը[1] իրենց ճամբան շարունակելով՝ մտած են այն վէտ վէտ ու այլեկերպ բլրադաւառը, որ մինչեւ Գերմանագիտ-ութի ի Ռոմանագիտ-ութ. գետա-խառնուրդը կը տարածուի։ Արդ, այս սարահարթային գաւառին երկայնութեանը չուելով՝ հասան նոյնին մինչեւ վերջին սահմանը, ուր բանակ դարկած նստան։ Հետեւեալ օրը, Ռոմանագիտ-ութ.է — որուն այս մասը դիւրաւ հանելի է — անցան, եւ ուղղակի Գերմանագիտ-ութ. ի ձորին երկայնութեանը յառաջանալով՝ դիմեցին Տիգրանակերտի վրայ։

Հոկտեմբերի 5երորդ օրը կանգ առաւ հայակոյտ բանակը Ռոմանագիտ-ութի եզերքը, ուսկէ՝ սարահարթի վրայէն, հայ զինուորները կարող էին պայծառ տեսնել իրենց պաշարուած մայրաքաղաքն ու Հռոմայեցիներու վրանները։ Տիգրանակերտի պաշտպան հերոսներն ալ սակայն իրենց բարձր միջնաբերդէն որոշ կը նշմարէին իրենց ազատարար մեծ բանակին ժամանումը, զոր ցնծալից աղաղակներով կը մատնանշէին Հռոմայեցւոց։ Դեռ այսօր իսկ հնար է Նփրկերտի (Փարկին) բրգալեռնէն սարահարթը դիտել, այնպէս որ Պլուտարքոսի տուած տեղեկութեանն բառ ամենայնի կը համապատասխանէ այս կողմի երկրագրական դիրքին[2]։

---

[1] Հոս բոլորովին կը շեղիմ Լեհմանէն եւ Պէտերսի ձեւէն, զոր իմ ներկայ աշխատութեանս իբր ղեկավար ընտրած եմ։

[2] Lehmann, Philologentag, S. 28.

Թշնամի երկու բանակները մի քանի քիլոմեթր հեռաւորութեան վրայ արդէն իրարու մօտեցած էին։ Հռոմայեցի զօրավարին համար այլ եւս ժամանակը հասած էր ինքզինքն որոշելու, թէ ինչ կերպ, եւ կամ ուր պէտք էր կարգել կազմել իր ճակատը։ Ուստի, փութով պատերազմական խորհուրդ գումարեց։ Խորհրդակցութեան միջոցին ժողովականներէ ոմանք կուսակից էին պաշտպանումը ի սպառ վերցնելով՝ բոլոր տրամադրելի ուժերով Թշնամւոյն վրայ գրոհ տալ. իսկ այլք, աւելի խոհեմները, խորհուրդ կու տային չվերցնել պաշտպանումը, վասն զի, կ՚ըսէին, խոհեմական չէ բնաւ, Թշնամի ստուար ջոկատ մը — Տիգրանակերտի քաղաքապահ գունդերը — տրամադրելի թողուլ հոն, որ կարող էր, ճակատամարտի մը պարագային, հռոմէական լեգէոններու նահանջի գիծը վտանգել կռնակէն։ Այս վերջին կուսակցութեան տուած խորհուրդն աւելի ընդունելութիւն գտնելով, որոշուեցաւ պաշտպանումը շարունակել, եւ թող տալ որ Տիգրան նախայարձակ ըլլայ։

Լուկուլլոս սակայն ոչ միոյն եւ ոչ միւսին յայտնած կարծեաց կատարելապէս թէեւ էր եղած. այլ անձնուն գաղափարը լսելէ յետոյ, անտարբեր յանդգնութեամբ մը վճռեց, առանց ամենեւին պաշտպանումը բանալու, Թշնամւոյն վրայ խոյանալ, ու չթողուլ որ ան Բատաման-սու գետէն աղքին անցնի։ Իւր զօրավարներէն Մուրենան 6000 լեգէոնականներով Տիգրանակերտի առջեւ թողուց. այս սակայն աւելի հակա-

ղութեան, քան թէ այդպիսի հսկայ քաղաք մը պաշարման տակ պահելու համար էր. ինչ որ, ի հարկէ, նկատի առնլով գունդին սակաւաձեռն թիւը, յաջողութեան ամենադոյզն երաշխիք մ'իսկ չէր կարող ներշնչել։ Իսկ ինքը, Լուկուլլոս, Տիգրանի վրայ քալեց միայն բանակովը՝ 10.000 հետեւակազօրով (=24 վաշտ), որ է ըսել՝ Վալերիանեան մարտընտիր լեգէոնականներով եւ դեռ ուրիշ 4 վաշտերով, որոնց վրայ աւելցան նաեւ բոլանդական այրուձին՝ ընդ ամէնը 3000 հեծեալ, եւ 1000 թեթեւազէն՝ աղեղնաւոր ու պարսաւոր։

3.

*Ռազմադաշտը։*

Այս ճակատամարտի մասին մեր մտքին մէջ յստակ գաղափար մը կազմելու համար, պէտք ենք հոս հաւատարմօրէն պատկերացնել ռազմադաշտին իսկական դիրքն ու հանգամանքը։ Պլուտարքոս է միայն, որ այս ճակատամարտը խղճամիտ հաւատարմութեամբ կը նկարագրէ։ Թէ պատմագրիս սոյն ճակատամարտին, ու անոր այլեւայլ պարագաներու մասին տուած բոլոր վկայութիւնքը՝ այժմեան Ֆարկին-սու եւ Բատման-սու գետերու գետախառնուրդին կից տարածուող դաշտագետնին դիրքին ըստ ամենայնի կը պատշաճին, զայն արդէն փաստացիօրէն ապացուցած է Բելք[1]։ Հոս ես պիտի շատանամ

[1] Zeitschrift für Ethnologie, 1899, S. 274 ff.

անոր ընդարձակ տեղեկագրին միմիայն մէկ այս նիւթին հայող հատուածէն փոքրիկ յառաջբերութիւն մ'ընելով, որուն միջոցաւ մենք պիտի կարենանք ստուերագիծ-քարտէս մը մեր մտքին մէջ յօրինել, ու ճակատամարտի ընթացքին հետեւիլ։ Այն հատուածին մի քանի մասերը միայն կրճատելով հոս զայն յառաջ կը բերեմ նոյնութեամբ։

"Փարփին-սուի լայնանիստ ձորէն հանդարտ գնացքով դէպի հարաւ վար իջնելով՝ 20 քլմ. ճամբայ կարելէ յետոյ, կը հասնինք մեծ ու ընդարձակ դաշտ մը — Չրաշատ Քասման-սուի ոռոգած դաշտագետինը, որ կը սկսի մեր գտնուած տեղէն գրեթէ 20 քլմ. հեռուն ձգուած մեծ կամուրջի մը տակէն, ու դէպի հարաւ 12—15 քլմ. կը շարունակուի, եւ յետոյ կը վերջանայ։ Անոր լայնութիւնը 1—3 քիլոմէտրի միջեւ կը տարուբերի։ Փարփին-ձորի երկարութեանը մեր ճամբան շարունակելով, 5 քլմ. յետոյ, կը հասնինք գետանկողնոյն եզրադաշտը...

...Դա հիանալի հարթավայր մըն է, առանց ոեւէ ելեւէջքի, ու այնքան ընդարձակ, որ կարելի է հոն բանակելով հաստատել յաճախադունդ բանակի մը։

Իսկ Լուկուլլոսի... անցնելիք գետը Քասման-սուն է, որ 30, 40 եւ մինչեւ 50 մեթր լայնութեամբ, հանդարտ ու անշշուկ, սակայն միշտ սրընթաց, իր յորդառատ ջուրերը՝ իրմէ զգալիօրէն աւելի փոքր Դիարբեկիրի գետը կը թափէ...

Եզերարնակներու վկայութեանը համաձայն, փետրուարի վերջերէն սկսելով մինչեւ գրեթէ Մայիսի վերջերը, Բասման-սու հունելի չէ. այս շրջանէն յետոյ, կարելի է անոր շատ մը կողմերէն՝ կամուրջին թէ՛ վերէն եւ թէ՛ ստորին մասերէն, անցնիլ. ի բաց առեալ, ի հարկէ, եթէ լեռներու վրայ այնքան առատ անձրեւ տեղացած ըլլայ, որ, գետայարուցքի պատճառաւ, անհնար ըլլայ 1—3 օր գետէն անցնիլ։ Գետին ջուրը սովորաբար ձիերու մինչեւ ծունկերը կը հասնի, կ՚ըսեն տեղացիք։ Ամէն պարագայի մէջ, սակայն, գետին լայն մասերէն շատ դիւրաւ կարելի է անցնիլ, առանց ոեւէ դժուարութեան...

Այս հարթավայրին ճիշդ դէմը մեծ սարահարթ մը կը բարձրանայ, որ դէպ արեւմուտք երկարելով, սարահարթին ստորոտէն գրեթէ 5—6 քիլ. անդին, Բասման-սուի եզերքը բաւականի սեպ դարաւանդներով կը վերջանայ. Մինչդեռ հարաւ-արեւմտեան ուղղութեամբ ան տափաստանաբար ու կամաց կամաց դէպի վեր կը խոնարհի. եւ — ինչ որ ուշադրութեան արժանի է — գետեզերին մօտ քանի մը ցած բլրակներէ բոլորուած։ Հօս վերը ուրեմն, այս մեղմ զառիթափին վրայ էր որ բանակեցուցած էր իր մեծ բանակը Տիգրան, որ՝ գրեթէ 150—200 մետր յարաբերական բարձրութիւն ունեցող այս կէտէն, կարող էր տեսնել Տիգրանակերտն ու պաշարիչ բանակին վրանները։ Պաշարուողներն ալ կարող էին տեսնել զՏիգրան. վասն զի այս կէտէն որոշ կը տեսնուին այդ

կողմերն ամբողջ, սարահարթը, մեծ զառիթա-փը, Բատման-սուն ու դաշտավայրերը գլխովին։

Ուղղակի այս տեղւոյն վրայ, Բատման-սու-եւս, որ մինչեւ ցարդ Հիւսիս-Հարաւ ուղղու-թեամբ կ'ընթանար, յանկարծ մանուածապատ շրջանով մը կը խոտորի դէպ արեւմուտք, ինչ որ ներկայիս 35° դարձուածք մը ցոյց կու տայ. մինչդեռ գետս նախապէս ունեցած ալեփ եղրներու ուղղութենէն դառնալով, նա պէտք էր երբեմն շուրջ 50°—60° եղած ըլլալ. ի հարկէ, մերձաւորապէս 12 քիլ. երկայնութեան մը վրայ, որմէ յետոյ դարձեալ գրեթէ հարաւային ուղղութեամբ իւր ընթացքը մինչեւ գետախառ-նումը կը շարունակէ։

...Այդ մեծ զառիթափին ու գետին մերձակայ ըլլակներու երկու կողմը կը գտնուի փոքրիկ դաշտահարթ մը եւս Հաս, Լուկուլլոսի բանակետղին մօտ, արեւմտեան եզրադաշտը 4—5 մետր, իսկ արեւելեանը 3—4 մետր սեպ գետափով կը հակի դէպի գետ"։

Այսչափս երկրին նկարագրութեանը մա-սին։ Հօս ուրեմն, այս գետնին վրայ տեղի պիտի ունենար 6 Հոկտեմբեր 69ին (Ն. Ք. Ք.) այն հռչակաւոր մեծ ճակատամարտը, որ Հայոց մայրաքաղաքին մօտերը մղուած ըլլալուն՝ Տի-գրանակերտի ճակատամարտը կոչուեցաւ, զոր Մոմզէն՝ Հռոմայ մղած պատերազմներու պատմու-թեան ամենափայլուն էջերէն մին կը համարի[1]։

[1] Römische Geschichte III, S. 70.

Դ.

*Հայ բանակին զօրութիւնը։*

Պատերազմական խորհուրդն աւարտելէ յետոյ, Հոկտեմբերի 5ին, Լուկուլլոս իւր լէգէոններն առած՝ Տիգրանակերտի քովէն հեռացաւ, եւ ուղղակի Ֆարկին-սուի ձախակողման ծործորակէն 20 քիլոմետր դէպի հարաւ-արեւելք յառաջանալով՝ մտաւ Բատման-սուի ձորադաշտը։ Հոս, գետին արեւմտակողմը, Ճակատամարտին նախօրեակին, իւր ճամբարը հաստատեց ուղղակի հայ զօրաբանակներու դիմաց, որոնք կանխաւ արդէն սարահարթին ու դէպի Բատման-սու հակող զառիթափին վրայ բանակած էին։ Երբ Տիգրան հռոմէական անարան սակաւաձեռն գունդի մը բանակելը վերէն դիտեց, իւր զօրականներուն դարձած քամահելով մ'ըսաւ. «Եթէ ատոնք դեսպանութեան համար եկած են հոս՝ չափազա՛նց շատ են, իսկ եթէ իբր զինուոր պատերազմելու՝ շա՛տ քիչ են.»

Տիգրանի այսպիսի մեծաբանութիւնները քաջալերանք կը գտնէին իւր սուտակապաշտ զօրավարներէն, որոնք, կարծես, իրարու հետ կը մրցէին իրենց տէրը շողոքորթելու մէջ։ Անոնցմէ ոմանք նստած վէգ կը խաղային եռանդով։ Երբ արքայն այս խաղին նպատակն ուզեց իմանալ, «Այժմէն քուէ կը նետենք», պատասխանեցաւ անոր, «թէ որուն բաժին պիտի իյնայ աւարը.» Իսկ ուրիշները կը խնդրէին արքայէն որ իրենցմէ միոյն միայն յանձնէ իւր սեպհական գունդովը

թշնամւոյն փոքրաքանակ բանակը ցան ու ցիր ընելու պաշտօնը, առանց արքային մասնակցութեան։ Անգին Տիգրան կը դժուարանար որ իրեն մահուչափ ատելի եղող հռոմայեցի զօրավարներէն միմիայն Լուկուլլոսի հետ ստիպուած էր զարնուիլ, եւ ոչ թէ հռոմէական զօրաբանակներու բոլոր զօրավարներուն հետ միահաղոյն։

Այսպիսի խորհրդով կը կատակէին ու կը ծաղրէին Հայք Լուկուլլոսի բանակը։ Մասամբ մը իրաւունք ալ ունէին, համեմատելով իրենց ահաւոր զօրութիւնը հռոմէական գունդին հետ։ Հետեւաբար պէտք չէ զարմանալ, թէ հայ բանակը կատարելապէս վստահ էր իր յաջողութեան վրայ, եւ նոյնքան ալ համոզուած, թէ առաջին իսկ յարձակմամբ թշնամի ջոկատները պարտութեան պիտի մատնուին։ Այսպէս շատ ցոյց կու տան, ընդհանրապէս, հայագունդ բանակին թիւը մեր առջեւը գտնուող օտար աղբիւրները։

Այս տեղեկութիւններն ալ կը քաղենք մենք այն միեւնոյն պատմագիրներէն, զորս յիշատակած էինք վերեւ, երբ հռոմէական բանակին զօրութիւնը կը ստուգէինք։ Արդ, ինչ որ հոն ըսած էինք այն առթիւ, հոս ալ նոյները կը կրկնենք ամբողջովին։

Հոս ալ ստուգուած է, թէ Պլուտարքոսի[1] քով յիշատակուած վկայութեանց իբր հիմ ծառայած է Սալլուստիոսի տուած մէկ պատմէջին

1 Luc. c. 26.

տեղեկութիւնը[1]։ Պլուտարքոս, որ Հայ բանակին զօրաթիւը մինչեւ ցյետին մանրամասնութիւններն այնպէս ճշգրիտ նշանակած, եւ Լուկուլլոսի կողմէ շարադրուած յաղթութեան տեղեկագիրը իր տուած այս տեղեկութեանցն իբր աղբիւր ցոյց տուած է[2], պարտական է զայն Սալլուստիոսի պատմութեան։ Սա՛ եւս նոյնպէս առանց երկբայութեան է, թէ Լուկուլլոս իր յաղթութեան աւելի ծանրակշիռ հանգամանք տալու նպատակաւ է որ ստուարացուցած է իրեն թշնամի բանակին քանակը, տալով ի նկատ առնլու, որ նա ճիշդ ալ այսու իր հակառակորդաց որակն անյայտն որ համարհելի ու ոչինչ ցոյց տալով՝ նսեմացուցած կ'ըլլար նաեւ իր սեպհական փառքն, եւ կերպով մ'իսկ զայն աղարտած. քան որում պատիւ չէր բերեր իր անուան ու համբաւին որ այդչափ ու այդպիսի անարժէք զինուորներու հետ պատերազմի բռնուէր։

Արդ, Պլուտարքոս հետեւելով թիւերը կը նշանակէ Տիգրանի բանակին. 20.000 պարսաւոր ու աղեղնաւոր, 55.000 ձիաւոր, որոնց 17.000ը զրահաւոր եւ 150.000 հետեւակ, ընդ ամէնը 225.000 մարտիկ, որոնց վրայ կ'աւելնան նաեւ կամրջաշէն, ռահվիրայ, անտառահատ եւ այլ այս կարգի անդէն ծառայութեան մէջ գործածուող 35.000նոց գունդ մը։ Այս վերջին գունդը ճակատին թիկունքը դիրք բռնած էր,

1 Maurenbrecher, Sallustii Historiarum reliquiae, էջ 53 եւ Reinach, էջ 442.

2 C. 26: ὡς Λούκουλλος ἔγραψε πρὸς τὴν σύγκλητον.

որպէս զի Թշնամւոյն վրայ աւելի եւս սարսափ ազդէր։

Շատ աւելի զօրաւոր ցոյց կու տայ Հայոց զօրաթիւը Ապպիանոս[1]։ Ասոր թիւերուն մէջ սակայն ակնյայտնի նմանութիւն մը կը տեսնուի Պլուտարքոսի տուած թիւերուն հետ։ Նա հետեւակազօրաց թիւը 250.000 կը նշանակէ, իսկ ձիաւորներունը 50.000. ինչ որ գրեթէ կը համաձայնի Պլուտարքոսի մատնանշած թիւերուն. եւ արդէն Ապպիանոս ձիաւորաց թիւը նշանակելէ յառաջ «ըշ» (= գրեթէ) վրան կը յաւելու։ Շատ իսկ հաւանական է որ հետեւակազօրուն համար իր տուած 250.000 թիւն ալ ուղղակի արդիւնք եղած ըլլայ ընդօրինակողին անուշադրութեան, որ փոխանակ 205.000ը համագումար թիւ բովանդակ հետեւակազօրաց նշանակելու, ըստ Սալլուստ-Պլուտարքեան վկայութեան, արձանագրած ըլլայ նոյն մեզի ծանօթ թիւը։

Բոլորովին անգործածական կը համարիմ եւ Եւտրոպիոսի եւ Սեքստոս Ռուփոսի[2] քով յիշատակուած յառաջընթացութիւնքը. վասն զի մասամբ մ'իրենց եւ մասամբ մ'ալ ընդօրինակողներու վրիպանքովը Լիվիոսի թիւերը խանգարուած են հոն[3]։ Ասոնք կը նշանակեն 7.500 զրահապատ

1 Mithr. c. 85.

2 Eutrop. Brev. VI. c. 9; Rufus, Brev. c. 15.

3 Ընթերցման զանազան ձեւերու արդիւնք են այն բազմաթիւ տարբերակները, որոնք յառաջ եկած են Եւտրոպիոսի պատմութեան Հրատարակիչներու քով. Գ. որ. Դիէ՝ 60.000, Դրոյսէն եւ Ռիւլ 70.000 տպագրած են հեծելազօրաց թիւը։

Սերինները, ինչպէս Լիվիոս ի Քաղուածոյս, Փրոնտինոս եւ Որոսիոս թշնամի ահաւոր զօրաբանակի մը խօսքը միայն կ'ընեն, ինչ որ, ի հարկէ, ենթադրել կու տայ մեզ, թէ անոնք անպատճառ իրենց առջեւ ունեցած ու տեսած ըլլալու էին մեծաթիւ գումարներ։ Այսպէս ուրեմն կարող ենք հոս այսչափ բազմազան տեղեկութիւնները երկու գլխաւոր խումբերու վերածել, որով կ'ունենանք մէկ կողմը՝ Մեմնոնի եւ Փլեգոնի վկայութիւնները, իսկ միւս կողմը՝ Պլուտարքոսի, Ապպիանոսի, Եւտրոպիոսի եւ Ռուփոսի վկայութիւնը, որոնք թէեւ ամէնքն ալ հասարակ իրենց վկայութիւնը Լուկուլլոսի տեղեկագրէն քաղած են, սակայն եւ այնպէս ամէնէն աւելի լաւ ու նախնականին ամէնէն աւելի մերձեցողը կը մնայ մեզ դարձեալ Պլուտարքոսինը, վասն զի նա է որ ուղղակի օգտուած է Սալլուստոսէ։

---

ստոյգ է թէ այս վերջինս 68 տարւոյ աշնան կ'իյնայ, որ է ըստ ոլիմպիադի 178. 1 թուականին, եւ մ՛յս եւս որոշ է թէ Փլեգոն հոս ալ թէ բանակի հանդերձանաց կամ պատրաստութեան վրայ է որ կը ծանրանայ, այլ Հռոմայեցւոց կողմէ շահուած յաղթութեան մը վրայ. Հետեւաբար զայս է որ նա թուել կ'ուզէ, եւ ոչ թէ զայն, մէկ խօսքով՝ այսու նա Տիգրանակերտի քով մղուած ճակատամարտը (174. 4 = 69ի աշնան) կը դնէ, եւ ոչ թէ Արածանւոյ քովինը (178. 1 = 68ի աշնան)։ Ուստանիի յառաջ բերած այն պատճառաբանութիւնը, թէ Տիգրան ու Միհրդատ միահաղոյն զինուոր համախմբելով զանոնք հաւաքական ձեւով կը մարզեն, ճիշդ է որ այս պարագան աւելի եւս 68ի գործակալին կը հայի, այսու հանդերձ, սակայն, կարծեմ թէ այս ամէնք առկաւին պատճառ մը չեն ճակատամարտին թուականը փոխել նշանակելու։

Պղուտարքոսի պատմածին համաձայն այս ահաւոր բանակը կազմուած էր Ասիոյ ներքնաշխարհին գրեթէ բոլոր ազգերէն: Հայք, Կորդուք, Մարք եւ Ադիաբենացիք մասնակցած էին Տիգրանակերտի ճակատամարտին իրենց բոլոր տրամադրելի զօրերով: Վերջին երկու պետութեանց թագաւորներն եւս անձամբ կը մասնակցէին անոր: Թէեւ ոչ ամբողջ բանակով, սակայն մեծ բազմութեամբ օգնութեան փութացեր էին նոյն իսկ հեռաւոր Պարսից ծոցին եզերաբնակ Արաբները[1] Կասպից ծովու քովերէն Աղուանք ու Վիրք, եւ Երասխայ ձորին բնակիչները, որոնք ոչ թէ իբր ծառա, այլ՝ իբր կամաւոր, վարձատրուելու ակնկալութեամբ, փութացեր էին Արքայից արքային դրօշին հետեւելու:

Այս զանազան ազգերէն ահա կազմուած էր այն մեծ բանակը, զոր Տիգրան Հռոմայեցւոց վրայ քալեցնելու նպատակով Միջոյ դաշտավայրին վրայ համախումբ գումարած էր: Երթէ անոնցմէ իւրաքանչիւրին ունեցած ոյժն ու մեծութիւնը նկատի առնուի, դիւրին պիտի ըլլայ այնուհետեւ գուշակել, թէ ինչպիսի ահաւոր թիւերու համած պէտք էր ըլլալ այդ բազմեան բանակը, զոր այնքան մանրամասնօրէն կը նկարագրէ մեզ Պղուտարքոս: Զայս եւս սակայն պէտք էր հոս չեշտել, որ այդ վերոյիշեալ ազգերէն ոմանք, ինչպէս Վիրք ու Աղուանք, Տիգրանի իշխանութեան ենթարկուած ըլլալուն, մեծ շահ մը կամ օգուտ մը չէին կարող,

[1] Plut. Luc. c. 26: ἀπὸ τῆς ἐν Βαβυλῶνι θαλάσσης.

ի Հարկէ, ակնկալել անկէ. Հետեւաբար անՀա-
ւանական չի թուիր ենթադրելը, թէ անոնք միայն փոքրաձեռն գունդերով Տիգրանի օգնել ուզած ըլլան՝ Նմանապէս Հպատակ ու Հարկատու իշխաններու զրկած զօրագունդերը չեմ կարծեր որ շատ մեծ եղած ըլլան։

Արդ, այս ամէն պարագաները կշռելով՝ եթէ օժանդակ զօրագունդերու զօրաթիւն սակաւ-թիւ անտեսացընել ստիպուինք, այդ պարագային պէտք պիտի ըլլայ անշուշտ Մեմնոնի եւ Փլեգոնի թիւերուն առաւելութիւն տալ։ Եւ արդէն 70.000—80.000 է բաղկացած բանակի մը Համար ինքնին շատ դժուարին գործ էր արաՀետներու վրայով, որ շատ շատ երկու կամ երեք անձ կարող էին քով քովի քալել[1], լեռնագաւառէ մը բաց դաշտավայրին իջնել։ Դիւրին է այլ եւս գուշակել թէ որպիսի անՀնարին դժուարութեանց կապուած պիտի ըլլար, եթէ՝ ոչ թէ 70.000—80.000, Հապա 250.000 եւ նոյն իսկ դեռ աւելի զինուորէ կազմուած Հսկայ զօրաբանակ մը այդպիսի անանցանելի միջավայրերէ խաղացընել Հարկ ըլլար։ Ես կը միտիմ, Հետեւաբար, Մեմնոնի ու Փլեգոնի քով յիշատակուած թիւերն իրականին գրեթէ Համապատասխան ընդունիլ, եւ ըստ այնմ Տիգրանի բանակին կու տամ միայն եւ միայն 70.000—80.000 մարդ, եւ ոչ աւելի։ Այս Հաշուով Հեծելազօրը կ՚ունենայ 30.000, իսկ Հետեւակազօրը 40.000

1 Belck, անդ. էջ 256։

ռազմիկ։ Այս ընդհանուր գումարը չէ կարելի աւելի եւս մասնաւորելով՝ ըսել օրինակի համար, թէ ինչ կարող էր մերձաւորապէս եղած ըլլալ զօրահաւաք հեծելազօրաց թիւը։ Եթէ Մեծենանի ու Փլեգանի մօտ յիշատակուած թիւերը կատարելապէս վստահելի եղած ըլլային, հնար էր այդ պարագային, անոնց՝ ասպազէն ու հեծեալ զօրահաւաքներու տուած 7.500 թիւն եւս իբր ճշմարտանման ընդունիլ։

Համեմատելով այժմ այս քանակը հռոմէականին հետ, դեռ իսկ իրարմէ մեծապէս կը տարբերէին անոնք, եթէ նոյն իսկ հայ զօրագունդերուն քանակին իբր $^{2}/_{3}$ը զեղչել ստիպուէինք։ Այս պարագային մէջ իսկ, եւ դեռ շատ ու շատ բնական կը գտնեմ որ հայ զօրականք, կատարելապէս վստահ իրենց տանելիք յաղթութեան վրայ, ծաղրած ըլլան թուապէս իրենցմէ անհամեմատ կերպով նուաղագոյն հռոմէական բանակը, որ դեռ դաշտագետնին վրայ ցրուած ըլլալուն՝ զգալիօրէն աւելի տկարաւոր կ'երեւար, ինչպէս որ ալ էր։ Այսու ահա կը մեկնուին այն քիչ մը չափազանց պոռոտաբան անձնագովութիւնները ու մեծամեծ խօսքերը, որոնցմով Տիգրան ու իր զօրավարները կը քամահէին Հռոմայեցիները, որոնց սակայն յաղթապանծ զօրաբանակներու համբաւն ի լրոյ եւեթ լսեր էին, առանց որեւէ ժամանակ առիթն ունեցած ըլլալու՝ անոնց հետ չափուելու։

Մէջերնէն մէկը միայն շարունակ յորդոր կը կարդար անոնց զգոյշ կենալ ու արթնամիտ

հսկել։ Այս անձն էր Տաքսիլէս, Միհրդատի փորձառու զօրավարը, որ իւր արքային մղած ամէն պատերազմներուն մասնակցած, ու անոր յաղթութեանց ու պարտութեանց բաժնորդ ու բաժանորդ էր եղած։ Միհրդատ յատկապէս զինքն իւր անփորձ ու անհեռատես փեսային քովը ղրկած էր՝ որպէս զի անոր խորհրդականն ըլլայ, վասն զի անտեղեակ էր նա հռոմէական ռազմավարութեան, ու գիտակ՝ անոնց ճակատ յարդարելու արուեստին։ Նա պաշտօն ունէր Արքայից արքան զգուշացընել յախուռն քայլ մ'առնելէ, ու անոր սխալները ուղղել։ Եւ արդէն աններելի սխալ մը չէր, Տիգրանի՝ Հռոմայեցւոց հետ իսկոյն զարնուիլ ուզելու որոշումը, փոխանակ սպասելու Միհրդատի, որ դեռ իսկ զբաղած էր երկրորդ զօրաբանակի մը կազմութեան գործով։ Նա գիտէր ծերունի ու փորձ թագաւորը թէ որչափ դիւրին էր հռոմայեցի քաջամարտիկ զինուորներուն համար, իրենց անհամեմատօրէն աւելի բարձր կրթութեամբն ու կարգապահութեամբը՝ ասիացի մարդակոյտ՝ այլ անմարզ բազմութիւնները պարտութեան մատնել։ Ստոյգ է, թէեւ Տիգրան իւր բանակին ընտիր զինուորներն որոշելով՝ զանոնք հռոմայեցի պանդուխտներու ձեռքով մարզել ու կազմակերպել տուաւ.. բայց եւ այնպէս անոնք դարձեալ չյաջողեցան հռոմէական այլընտիր ու փորձառու գունդերու բուռն յարձակմանց դիմադրել, գոնէ որոշ չափով մը։

Տաքսիլէս[1] վտանգը կանխատեսելով՝ կը

---

1 Ըստ Ապպիանոսի. Միհրդ., գլ. 85. Միհրդատա թիւնին

զգուշացընէր զՏիգրան Թշնամւոյն դէմ ճակատ տալէ. Նա խորհուրդ կու տար իւր ստուարաթիւ այրուձի գունդերովը անոր պարենաւորման գիծը Թիկունքէն կտրել, եւ այսու Հռոմայեցիները սովամահութեան ենթարկել, եւ կամ անձնատուր ըլլալու ստիպել զանոնք, ինչպէս երբեմն Լուկուլլոս ալ ըրած էր իրեն Կիւզիկոսի առջեւ։ Նա կրկին ու կրկին անգամներ Թախանձեց զՏիգրան, ու ամէն կերպով ջանաց զինքը տարհամոզել ետ կենալու իւր մտքին գործադրութենէն։ Անօգուտ էր ամէն փորձ. եւ ոչ միայն այսչափ, այլ եւ քիչ մնաց որ նա իւր կեանքն եւս վրայ տար Տիգրանի ահաւոր բարկութիւնն իր վրայ հրաւիրած ըլլալուն։ Վասն զի անխորհուրդ արքայն սկսաւ կասկածիլ Տաքսիլէսի վրայ, Թէ նա պարզապէս նախանձէ գըրգելու, ինչպէս նա կը կարծէր, ձգձգել կ'ուզէ իւր հրամաններուն գործադրութիւնը, որպէս զի այսու ժամանակ շահեցընել տայ իւր տիրոջը՝ Միհրդատի, ինքն եւս իւր բանակովը պատերազմին մասնակցելու, եւ, այսպիսի դիւրայաղԹ ճակատամարտէ մը Տիգրանի շահելիք փառքին ինքն եւս փառակից ըլլալու։ Հետեւաբար ոչինչ ազդեցին Տիգրանի վրայ Տաքսիլէսի հաստատ ու իմաստուն խօսքերը։ Նա իւր ատակապաններուն՝ որոնք իւր անպարծիկ փառասիրութիւնը միայն կու փաղաքշել գիտէին, շողոքորթութեանցն առաւե-

Է. ինչ որ առկայն պատմութեան ընթացքին չի համապատասխաներ, վասն զի նոյն միջոցին Միհրդատ առկային բանակատեղին չէր գտնուեր, ինչպէս յայտնի կը տեսնուի Պլուտարքոսի Լուկ.. գլ. 29է եւ Աբենանի գլ. 58է։

լսպէս անսալով, վերջնականապէս միտքը դրաւ, անձամբ իւր բիւրաւոր զօրաց գլուխն անցած՝ յառաջ քան իւր ծերունի, յաչաղկոտ ու անզօր աներոջ ժամանումը, փութաթի. Հռոմէական գունդին հաշիւը մաքրել լմնցնել, որպէս զի տարուած յաղթութեան ամբողջական փառքը ինքն առանձին միայն վայելէ։ Շատ խոհեմ, եւ միանգամայն զգուշաւոր շարժած եղաւ Տաքսի-լէս, որ Տիգրանի բարկութենէն խոյս տալով՝ ժամանակ մը անոր աչքերէն հեռու ապրեցաւ, համոզուած ըլլալով, որ ալ այնուհետեւ անկարելի պիտի ըլլար ճակատագրին ընթացքին առաջքն առնուլ։

5.

*Ճակատամարտին նկարագրութիւնը՝ ըստ մեր տեսութեան:*

Վերջապէս ծագեցաւ Հոկտեմբեր 6ի յիշատակելի օրուան առաւօտը։ Այգուն, տակաւին չլուսացած, վերցուց Լուկուլլոս իւր բանակը, եւ գունդերը կազմելէ ու զանոնք սպառազինելէ յետոյ՝ զօրախաղաց եղաւ։ Տիգրան որ իւր պալակուտովը բլրոն գագաթէն կը դիտէր, եւ ուշի ուշով կը հետեւէր հռոմէական գունդերուն մէն մի շարժման, շատ հետաքրքրուած էր գիտնալ, թէ ուր, ի վերջոյ, պիտի յանգէր Լուկուլլոսի այս շափազանց յանդուգն արկածախնդրութիւնը։ Նոյն միջոցին յանկարծ ուրախութեան աղաղակներ լսուեցան հայ բանակին շարքերէն. «Հիմա

յայտնի տեսնուեցաւ, որ Տաքսիլէսի ճակատ տալէ խուսափիլ ուզելուն իսկական դրդապատճառը նախանձն է եղեր միայն, վասն զի իւր սէրը ռազմադաշտ հասած չէր տակաւին։ Ո՛րչափ մեծ էր Հռոմայեցւոց սարսափը, որ առանց ճակատ մը տալ ուզելու՝ ետ կը դառնան դէպի Կապադովկիա, ուսկէ ամիսներ յառաջ ելած ու այս կողմերն եկած էին . . .»։

Տիգրան յուսահատ շեշտով մը զՏաքսիլէս իրեն մօտ բերել հրամայեց, ու վարը դաշտին վրայ պարզուող տեսարանը մատնացոյց ընելով՝ հեգնելով մ'ըսաւ անոր. «Անոնք քու անպարտելի համարած Հռոմայեցիներդ են. տես թէ ինչպէս վատաբար կը փախչին իմ ահարկու բանակիս առջեւէն, առանց ճակատամարտ մը խիզախելու»։ Փորձառու զինուորականը Տիգրանի այս խօսքերուն միտ դնելէ յետոյ, առանց իր պաղարիւնութիւնը կորսնցընելու կը պատասխանէ. «Քու ճակատագրիդ միայն վերագրէ, ով Արքայից արքայ, եթէ երբեք այդպիսի անակնկալ բան մը տեղի ունեցած է։ Սակայն ես քեզ կը զգուշացընեմ խաբուելէ. վասն զի ցարդ ես չեմ տեսած Հռոմայեցի մը, որ զօրախաղացքի մը միջոցին գլխարաց ըլլայ ու առանց վահանի։ Ա՛յս պարագան միայն արդէն յայտնի նշանակ է մօտալուտ ճակատամարտի մը»։

Հազիւ աւարտած էր Տաքսիլէս իր խօսքը, իսկոյն տեսնուեցաւ թէ որքան իրաւունք ունէր նա։ Հռոմայեցի լեգէոնները յանկարծ դադար առնելով, ու իրենց վաշտերուն ուրոյն դասակներու

բաժնած՝ պատերազմական դիրքով բաժին առ բաժին գետէն սկսած անցնիլ: Անոնց դէպ արեւմուտք խուճապանման այս խաղացքին նպատակն էր ուրեմն պարզապէս Քասաման-սուի եզերքի դժուարանց ու առապար ափունքէն խուսափելով՝ հոս այս տեղը գալ, ուր գետեզրը հարթայարմար էր: Այս կէտէն դիւրաւ կարող եղան Հռոմայեցիք դիմացի եզերքն անցնիլ, եւ անկէ ետ յառաջանալով՝ հասան սարահարթին ծայրը, ուսկէ անդին հնար էր հեշտ զառիթափի մը վրայով Հայոց բանակատեղը հասնիլ:

Այս պարագան ցնցեց Հայոց հանգիստն, ու մէկէն սթափեցուց զանոնք իրենց խոր թըմբրութենէն: Կ՚ըսուի թէ, ծանրաբարձուն քունէ արթնցած մարդու մը նման շուարած, ու բերնին մէջ խօսքը բեկբեկելով հարցուցած ըլլայ Տիգրան. «Մե՞ր վրայ արդեօք կը քալեն»: Սակայն եւ այնպէս այլ եւս ժամանակավաճառ ըլլալու ատենը չէր: Հապճեպով մը այս անկարգ ու անկանոն մարդակոյտ բազմութիւնները դէպի սարահարթի զառիթափը փոխադրուեցան, ի հարկէ, առանց որոշ ծրագրի, ուր անոնք Հռոմայեցւոց յարձակման պիտի դիմագրէին, եթէ սոնք փորձէին սարահարթին վրայ յարձակելով բանակատեղին վտանգել:

Այս ճակատամարտը — որ ահա այլ եւս սկսած է մղուիլ — ընդարձակագոյնս ու մանրակրկիտ կը նկարագրէ մեզ Պլուտարքոս, ինչպէս նաեւ Ապպիանոս, Մեմնոն ու Փրոնտինոս: Մեր այս աղբիւրներն աննշանակ շեղումներով

իրարու լծուիլ կը համաձայնին։ Մեր քիչ մը վերեւ յիշատակած հռոմէական լեգէոններու զօրաշարժը առնուած է Պլուտարքոսէ, որ միւս երբեմն աւելի ճշգրիտ կը պատմէ զայն։ Հոս կ'ուզէի ես միայն ճակատամարտի իրադարձութեանց վրայ համառօտ ակնարկ մը նետել, այնպէս ինչպէս ես ըմբռնած եմ զայն, ու յետոյ նկատողութեան առնել այդ զանազան աղբիւրներու իրարմէ ունեցած շեղումները։ Իմ նկարագրութիւնս յար եւ նման է Պլուտարքոսի պատմածին. այս իսկ պատճառաւ վերջնոյս վրայ աւելի մանրամասնօրէն ծանրանալն ես հոս աւելորդ կը նկատեմ[1]։

Արդ, Տիգրան իր գունդերը դէպի գետ հայող այդ հեշտ դարեւանդին վրայ այնպէս մը կը ճակատեցընէ, որ բանակին ճակատը գետին հետ ուղղանկիւն համեմատելով՝ հռոմէական յարձակման մը ճակատէն գինադրուէ։ Այս դիտաւորութեամբ միայն կրնայ նա հարկադրուած ըլլալ իր ճակատը գետին ուղղութենէն մինչեւ ներսով յարդարել, որ Հռոմայեցիք՝ այնկոյս գետի անցնելուն պէս, հայ ճակատին անպատսպար մնացած թեւին հետ առանց շփում ունենալու, հարկադրուած ըլլան դէպի ձախակողմ շեղում մը՝ Հայոց դիմաց ճակատ առ ճակատ գալ։ Ահա ասոր համար Տիգրան ճակատեցուցած էր իր հեծելազօրը մինչեւ այն կէտին վրայ,

1 Զօրաշարժին մանրամասնութիւնքը տե՛ս Պլուտ. Լուկ., գլ. 27, իսկ ճակատամարտին նկարագրութիւնը գլ. 28։

ուր գետին դժուարանալով եզրը կը վերջանար, եւ մինչեւ այս կէտը Հռոմայեցիք, ընտանաբար, չէին կարող համարձակիլ յանկոյս գետին անցք մը փորձել։ Այսպէս ուրեմն իր ճակատին աջ թեւը թէ գետով եւ թէ անոր դժուարանելի ու առապար եզրներովը պատսպարուած ու պաշտպանուած ըլլալու երեւոյթն ունէր. բայց սակայն, գետեզրի մօտիկ կը բարձրանային նաեւ քանի մը բլուրներ, որոնք նմանապէս կը նպաստէին Հայոց ճակատին ռազմական դիրքին։

Ἐν προτάγματι, այսինքն ճակատի զօրաց առաջին գծին վրայ՝ իբր պաշտպանութիւն աջ թեւին, ճակատեցուց Տիգրան իր զրահաւոր հեծելազօրաց մեծագոյն մասը, որոնք այսպէս, ճակատին սակաւին ինչ առաջակողմը, գետին քով ու բլրան ստորոտը՝ դէպի յառաջ կամ դէպի ձախ ծաւալելու՝ բաւական յարմար դաշտագետին ունէին։ Այս կուռ վահանակ այրուձին պարծանքն էր Տիգրանի եւ ապահովաբար նաեւ կորիզը անոր բանակին, որովհետեւ անոնք միմիայն հայ ազնուական ընտանեաց ազատորդիներէն էին կազմուած։ Այս ձիաւորներուն ամբողջ մարմինը՝ մինչեւ ազդրերն ու սրունքները, պատենազարդ ու թանձր զրահով մը պաշտպանուած էր, նմանապէս անոնց նժոյգներն եւս այնպիսի զրահներով պատսպարուած էին[1]։ Հայ զինուորն ընդհանրապէս յամրաշարժ էր ու ծանրաբեռն՝ իր վրայ կրած չափազանց ծանր սպառազինութեան

1 Sall. hist. rel. IV, frgm. 64–66 (Maurenbrecher).

պատճառաւ, նա դէպի յառաջ միայն կարող էր գործողութիւն կատարել, եւ այն՝ սեղմ ու ամփոփ ընդհարմամբ։ Ասկէ կը հետեւի թէ զրահաւոր հեծելազօրքը, հաւանականագոյնս իր չափազանց ծանր զրահին պատճառաւ, շատ աւելի ծանրաշարժ եղած ըլլալու էր, քան Միջին դարու գերմանական ասպետները, եւ որչափ կ'երեւի, կը տեսնուի թէ՝ բացի նիզակէ մը, ուրիշ զէնք չէին կրեր անոնք իրենց վրայ։

Ասոնց կ'իյնար ուրեմն աջ թեւը պաշտպանել։ Մնացած բանակը սփռուած էր լայն ճակատի մը վրայ, եւ հաւանականագոյնս իր յաճախութեան պատճառաւ տարածուած էր նաեւ դէպի խորութիւն։ Աջ թեւին կը հրամայէր Մարական Ատրպատականի թագաւորը, ձախին՝ Ադիաբենէի թագաւորը, իսկ Ինքը Տիգրան՝ առանձնած էր կեդրոնի հրամանատարութիւնը։ Դուն իսկ խառնակ վիճակը կը շարունակուէր այս անկարգ ու խառնաղանճ ամբոխին մէջ, երբ անդին Լուկուլլոս — նոյն պահուն արդէն աւարտած ըլլալով գետին անցքը — առանց ժամանակ կորսնցնելու՝ յարձակողականի անցաւ նոյն։ Զգուշացուցած էին զինքը, յիշեցնելով անոր Հոկտեմբեր 6ի չարաբեր օրը՝ տարեդարձ Արաուսիոնի ճակատամարտին, ուր Հռոմայեցիք՝ Սերվիլիոս Կեպիոնի հրամանին տակ, Կիմբրացւոց ու Տեւտոններու դէմ մղած պատերազմին մէջ ահաւոր կերպով պարտուած էին։ Սակայն Լուկուլլոս իր յաղթութեան վրայ լի վստահութեամբ մը պատասխանեց, թէ ինքն այդ դժբախտ

օրը՝ երջանիկ օրուան մը պիտի փոխէ։ Յուսախաբ եղած չէր Լուկուլլոս։

Հայ գրահաւոր հեծելագունդին դանդաղաշարժութիւնն ամենազգայուն կողմն էր մեր արդէն իսկ թերավարժ բանակին տկարութեան, որ Լուկուլլոսի սրատես աչքերէն չէր վրիպած։ Այս պատճառաւ ալ Լուկուլլոս իւր յարձակման առաջին անգամ նշանակ ընտրեց այն հեծելագունդը, որ իւր ճակատին դէմ յանդիման ամենամօտ դիրքն էր բռնած։ Լուկուլլոս իւր թրակացի ու գաղատացի թեթեւազէն հեծելագունդերուն պատուիրած էր՝ հայ գրահաւոր հեծելագունդին աջ թեւին վրայ բուռն թափով յարձակիլ, այնպէս որ հայ ձիաւորներն իրենց զէնքը — որ, ինչպէս ըսինք, միմիայն նիզակէ մը կը բաղկանար — այդ ուղղութեամբ միայն գործածել ստիպուելով, իրենց ամբողջ մտադրութիւնն այն կողմ միայն ուղղուի։ Ասկէ կը հասկցուի, որ Տիգրան իւր հեծելագունդն այնպէս չէր դասաւորած, որ անոր կողն եւս գետին սեպ եզերքներովը պաշտպանուէր. ապա թէ ոչ՝ ինչպէս կարող էր համարձակիլ թեթեւազէն հեծելագունդ մը՝ կողմնակի յարձակմամբ, թշնամի գրահաւոր հեծելազօրաց կողերը վտանգել։ Բլրան առջեւի դիրքն իրենին կը պահանջէր ճակատ մը հոն, ուր գետեզրը տափարակ էր արդէն։ Նոյն պարագայի մէջ, Տիգրանի մէկ անզգուշութիւնն էր՝ իւր գրահաւոր հեծելազօրաց մէկ կողին այսպէս վտանգի ենթարկուած ըլլալը։

Մինչ ուրեմն հռոմէական լեգէոնները ճակատ առ ճակատ կեցեր էին Հայոց դիմաց, եւ այս վերջինները դեռ իսկ իրենց ճակատը կը յարդարէին, Լուկուլլոս՝ դեռ անցնելէ անմիջապէս յետոյ, թշնամիներուն դէպի մէկ կողմ ուղղած մտադրութիւնէն օգտուելով, երկու վաշտ զինուոր հետն առած՝ առանց նշմարուելու ելաւ այն բլրան վրայ՝ որուն ստորոտը զրահաւոր հեծելագունդը ճակատած էր, եւ ուսկէ չորս ասպարէզ անդին, թեթեւ վերելքէ մը յետոյ, թշնամի հեծելազօրաց թիկունքը շատ դիւրակարելի էր վտանգել։ «Մերն է յաղթութիւնը, ընկերներ», գոչելով, իր վաշտերուն գլուխն անցած՝ բլուրն ի վար յարձակեցաւ զրահաւոր հեծելազօրաց շարքերուն վրայ, կանխապէս պատուիրած ըլլալով իր զինուորներուն՝ թշնամիներուն վրայ առանց նետ արձակելու՝ միայն սուրով անոնց ազդրերը, որ միայն անզրահ էին, խորտակել։

Այս վայրագ յարձակման հայ ծանրազարդ հեծելագունդերը, ի հարկէ, տոկալ չկարենալով, նա մանաւանդ որ աջ թեւէն եւս հռոմայեցի թեթեւազէն այրուձի գունդէ մը սաստիկ ճնշուած ըլլալով՝ փախուստ տալ սկսան։ Եւ որովհետեւ թիկունքէն Լուկուլլոս իւր երկու վաշտերովը նահանջի գիծը բռնած, իսկ ճակատի կողմէն միւս հռոմէական լեգէոնը անոնց յառաջխաղացութիւնն եւս կը մղէր, հետեւաբար դէպի ձախ միայն ճամբան բաց կը մնար անոնց առջեւ, եթէ չէին ուզեր թրակացի ու գալատացի հե-

ծերպաղորէն, անխնայ հետապնդուելով՝ գնալ թաքուիլ։ Եւ որովհետեւ իրենց ձախակողմը բավանդակ հայ հետեւակազորը ճակատած էր, հետեւաբար հայ հեծելազօրքը, որ այլ եւս բոլորովին բարոյալքուած էր ու անկարող ոեւէ լուրջ դիմադրութեան, միմիայն իւր անձը փրկելու մտահոգութեամբ՝ ինկաւ հետեւակազօրաց շարքերուն վրայ. եւ այնպիսի սոսկալի շփոթութիւն ձգեց հոն, որ բոլոր բանակը ահաւոր խուճապի մը մատնուած՝ խառն ի խուռն սկսաւ փախչիլ լեռն ի վեր՝ դէպի բանակատեղը։

Ճակատն այլ եւս կորսուած կրնար համարուիլ։ Այս հսկայական ու անպարտելի համարուած բանակն այսպէս շարաչար կը պարտուէր, առանց իսկ — գոնէ անոնցմէ մեծագոյն մասին — թշնամի զինուորի մը երեսը տեսած ըլլալու։ Փախստականները հետապնդող փաշաները բանակատեղին մէջ իրական նախճիրս արեան կը գործեն, անխնայ կոտորելով հայ զինուորները, որոնք այլ եւս բացարձակապէս անզօր էին դիմադրելու։ Մինչեւ 120 ասպարէզ հեռաւորութեամբ հետապնդեցին Հռովմայեցիք հայ բանակին վայրավարին ցրուած բեկորները։ Այս հետապնդման միջոցին հռովմայեցի զինուորներուն ցոյց տուած խիստ կարգապահութիւնը, ստուգիւ ամենամեծ գովեստի արժանի էր. անոնք առանց ամենեւին կարեւորութիւն ընծայելու բանակատեղին մէջ ամբարուած հարուստ աւարներուն, անոր միայն ուշակալու եղան որ կարելի եղածին չափ մեծ թիւով թշնամի սրախողխող ապաննեն։

Երկրին դիրքն ալ բաւական նպաստեց անոնց այս քաղաքներու գործին։ Որչափ որ հեշտ զառիթափով մը կը վերջանայ սարահարթին հարաւ-արեւմտեան եզերքը, նոյնչափ ալ անդնդախոր վիհեր կ'եզերեն նոյնին հիւսիս ու հիւսիս-արեւելեան կողմերը, ուր անդունդներու ժայռերը յաճախ 30—40 մետր բարձրութեամբ ուղղահայեաց կը սեպանան[1]։ Հոս այս բնական արգելքներու առջեւ սեղմուած կեցած Հայք հետամուտներու սուրին զոհուեցան անխնայ։

Միայն Տիգրան կրցաւ հազիւ 150 հեծեալներով մազապուրծ փախչիլ[2], վասն զի կանխաւ արդէն ռազմադաշտէն փախուստ էր տուած, եւ որպէս զի չճանչցուի՝ իր խոյրն ապարօշին հանդերձ յանձնած էր իր որդւոյն։ Այս վերջինս ալ չհամարձակելով զայն իր քովը պահել՝ հաւատարիմ ծառաներէն միոյն վստահացուց զայն, որ, ի վերջոյ, Հռոմայեցւոց ձեռքն ինկաւ։ Այսպէս Լուկուլլոսի ձաղանքին ամենափայլուն զարդը կազմեց Արքայից արքային այս թանկարժէք խոյրը։

6.

*Հնագոյն աղբիւրներ ճակատամարտին մասին։*

Այս էր ընթացքը Տիգրանակերտի համբաւաւոր ճակատամարտին։ Այժմ քննենք այն ճակատամարտի մասին խօսող հնագոյն աղբիւր-

[1] Belck, անդ. էջ 274։
[2] Orosius. VI. 3, 7.

ներու իրարմէ ունեցած շեղումները։ Ինչպէս արդէն վերեւ բսած էինք, մեր ներկայ ուսումնասիրութեան իբր գլխաւոր աղբիւր ծառայած է մեզ Պլուտարքոսի տուած այն անգնահատելի տեղեկութիւնները, զորս նա հոն եւս, ինչպէս այլուր, միշտ Սալլուստիուսէ՝ իբր ամենավստահելի աղբիւրէն է որ կը քաղէ։ Զափազանց մթայլ է Ապպիանոսի տուած նկարագրութիւնը[1], նախ եւ յառաջ նա բնաւ տեղ մը չի յիշատակեր այս ճակատամարտին գետի մը քով մղուած ըլլալը։ Այս, յինքեան աննշանակ պարագան, այնու միայն կրնայ մեկնուիլ, որ Ապպիանոս ընդհանրապէս վարկպարազի ու վերիվերոյ կերպով ծայրաքաղ համառօտող մ'եղած է, իսկ Տիգրանակերտի ճակատամարտին վրայ, մանաւանդ, հարեւանցի ակնարկ մը միայն նետած ու անցած է։

Արդարեւ ալ պատմագրին՝ մեր խնդրոյն նկատմամբ տուած վկայութիւնքն այնքան անբաւական են ու խառնակ, որ բացարձակապէս անհնար է անոնց միջոցաւ պայծառ գաղափար մը կազմել տեղի ունեցած դէպքերու եւ պատերազմական իրադարձութեանց մասին։

Ահա թէ ինչպէս կը նկարագրէ նա այնքան մեծ ու հետաքրքրական այս ճակատամարտը. Լուկուլլոս կը նշմարէ յարմարագոյն բլուր մը Տիգրանի թիկանց կողմը։ Այդ բլրան վրայ ելլել կարենալու համար՝ հրաման կու տայ իւր ձիա-

1 Mithr. c. 85.

ւորաց գունդին, Ճակատի կողմէն թշնամին նեղել, եւ կեղծ ու կերպարանեալ փախուստով մը զայն դիւր անեղ մը ձգել, եւ ապա՝ ցիր ու ցան ընել։ Ասոր վրայ, նա հետեւակազօրաց գլուխն անցած, խոտորնակ ճամբով մը գաղտագնաց կը հասնի բարձունքին կատարը, որուն ստորոտը հաստատուած էր թշնամւոյն աղխն ու կահը։ Անտից վրայ յարձակելով, պահապաններն ու գրաստները հետեւակազօրաց վրայ կը նետէ, ու այս կերպով զանոնք կը խառնակէ։ Այս խառնակութեան վրայ, հետեւակազօրն ալ ձիաւորաց վրայ իյնալով՝ անոնց շարքերը կը խանգարէ, որով եւ խուճապային փախուստ մըն է որ կը սկսի թշնամի բանակին մէջ։

Այս նկարագրութիւնն շատ անբաւական է ճակատամարտիս մասին պայծառ պատկեր մը տալու, ասոր համար կարող ենք զայն, իբր անօգուտ, մէկդի ձգել։ Այսու հանդերձ, կ'արժէ հոս այդ մասին քանի մը խօսք եւս ընել։

Լուկուլլոս իւր հետեւակազօրաց գլուխն անցած բլրան մը վրայ կ'ելլէ՝ թշնամիներուն թիկանց կողմէն։ Այս լիովին կը միաբանի մեր նկարագրութեան հետ։ Սակայն շատ խնդրական է, որ նա իւր բովանդակ հետեւակազօրովը, "գաղտագնաց„ չուով եւ առանց նշմարուելու կրցած ըլլայ թշնամւոյն թիկունքն անցնիլ, ինչպէս կը կարդանք Ապպիանոսէ, որ հետեւակազօրաց վրայ կը խօսի՝ հակադրութեամբ այրուձիուն, որուն պաշտօնն էր թշնամին ճակատէն անհանգիստ ընել։ Ամէն մարդ ինձ համակարծիք

է, կարծեմ, թէ անկարելի է զօրաբանակէն 10.000 մարդ առանձնացնել եւ փոքր, «գաղթա-գնաց» շու մը յաջողութեամբ գլուխ հանել՝ առանց նշմարուելու, եւ թշնամւոյն դէմ ճակատեցնելու. Համար 3000 այրուձի միայն թողուլ ամբողջ զօրաբանակէն՝ իւր ճակատամարտին զինուոր։ Տիգրան եւս, բնականաբար, պիտի հետախուզած՝ քննած ըլլար հռոմայեցի հեծեւակազօրաց կայքն ու անոնց նոր գրաւած դիրքերը, ու ըստ այնմ ինք եւս անոնց դէմ պաշպանութեան համար հակամիջոցներ ձեռք առած։ Ըստ իս, երկու փաշա, որ է ըսել՝ 800—900 զինուոր բաւական իսկ էին «գաղթագնաց» շուով քանակի մը թիկունքն անցնելու, նամանաւանդ, եթէ երկիրն ալ այդպիսի գործողութեան մը ձեռնտու ըլլար, որպիսի է այսահովաբար, Բասամն-սարի քովընտի ձորադաշտակը։

Հռոմայեցի այրուձիուն պաշտանն էր, ուրեմն, թշնամին հրապուրել դէպ հետապնդելու, որպէս զի յետոյ յանկարծ ետ դառնալով զայն ցիրուցան դարձնէր։ Սակայն ո՞վ զանոնք պիտի հետապնդէր։ Անտարակոյս դարձեալ հեծելազօրաց գունդը, եւ այն՝ թեթեւազէն հեծեալներուն, վասն զի ծանրազէն այրուձին դժուար էր թէ կարենար արագաշարժ ու թեթեւագնաց Թրակացիներուն ու Գալատացիներուն հետահաս ըլլալ։ Եւ որովհետեւ Լուկուլլոս յետոյ թշնամիները, փախուստի միջոցին, իրարմէ հեռու ցրուած կը տեսնէ, ասկէ կը հետեւցընենք ուրեմն, որ անոր այս ռազմավարական

Մարմինքն յաջող արգիլնք տուած էր։ Հե-
տեւաբար, πολεμίους բացատրութեամբ մենք
պէտք ենք ձիաւորները միայն հասկընալ, վասն
զի հետեւակազօրն անհնար էր որ հետապնդման
այս գործողութեան մասնակցած ըլլայ կարենար։

Հետեւակազօրը դեռ իսկ ճակատած նստած
էր աղխերու առաջակողմը եւ բլրան ստորոտը։
Արդ. ճակատամարտին զօրամասերու այս տեղ
ճակատ կազմելն — որ ինքնին անիմաստ է —
կարող է յածախ ռազմավարական տեսակէտով
աղխարներ հետեւակներ ունենալ։ Ամէն ճա-
կատամարտ զօրավար գոհ կ'ըլլայ, եթէ բա-
նակին աղխերն ու կազմածքները — այս մինքան
հարկաւոր չարիքները — կարելի եղածին չափ
պատերազմական գծէն հեռու տեղ մը ապահո-
վուած ըլլան։ Արդ. կարելի՞ էր միթէ հաւատալ,
որ Տիգրան զանոնք ճիշդ այդ բլրոյն ու հետեւա-
կազօրուն մէջտեղը զետեղած ըլլար, որպէս զի
պարտութեան մը պարագային՝ անկարելի ըլլար
զանոնք ազատել թշնամեաց աւարառութենէն։
Տիգրան, անտարակոյս, զանոնք ընդհանուր բա-
նակատեղւոյն մէջ ապահովցուցած ըլլալու էր,
թէեւ Ապպիանոս այս մասին խօսք մ'ըրած չըլլայ։

Լաւագոյն կ'ըլլար թերեւս, եթէ փոխանակ
σκευοφόρα թարգմանուէր κατάφρακτοι, որոնք այլ
թեւը կը կազմէին, ու հռոմէական յարձակման
դիմանալ չկարենալով՝ ձախակողմը ճակատած
հետեւակազօրաց վրայ կ'իյնան. որ դերը տակայն
Ապպիանոս աղխերու վրայ հակող գունդերուն կը
վերագրընէ։ Արդ. եթէ հնարաւոր ըլլայ այս

կերպ սրբագրութիւն մը ներմուծել բնագրին մէջ — ինչ որ դժբախտաբար չի վերցըներ — գոնէ մասամբ մը լուսաբանուած կ'ըլլար պատմագրիս տուած այս վարկպարագի ու շատ խառնակ մէկ վկայութիւնը։

Վերջապէս հեռաւորագոյն Հնդկաստաններու վրայ կը փախչի կ'իյնայ, որոնք — եթէ երբեք սուրբ է թէ սանկ հետապնդած ըլլան Հռոմայեցի ձիաւորները — ցրուած պէտք է թէ եղած ըլլային շատ հեռուները դաշտագետնին վրայ։ Այս պարագային սակայն անոնք արագօրէն եղած ըլլալու էին, որ կրցեր են հետահաս ըլլալով խառնակութիւն յառաջ բերել իրենց հեծելագունդերուն մէջ, որոնք 500 հոգիէ բաղկացած հռոմէական այրուձին, զոր կը յիշատակէ Ապպիանոս, շատ մը զարնելէ յետոյ՝ կրնային վտանգ սպառնալ նաեւ լեգէոններու, ինչպէս երբեմն Կաննէի քով Անիբալի նումիդական ձիաւորաց գունդերն, եւ յաճախ ուրիշ թշնամի հեծելագունդեր։ Այս հեծելագունդերն եւս փախստական հեռաւորագոյնաց երեսէն շատ մը խառնակութեան մատնուելով՝ փախուստ կու տան, — դէպք մը, որ եզական է ռազմա-պատմական տարեգրութեանց մէջ, — որով եւ խուճապը կ'ընդհանրանայ բովանդակ հայ զօրաբանակներուն մէջ։

Հեծելագունդով շատ կարելի էր նաեւ հասկցուիլ հեծեալ զրահաւորները, որոնք՝ հաւանականագոյնս թշնամին հետապնդելու գործողութիւնն իրենց թեթեւազէն ընկերներու յան-

ձնած ըլլալով, իրենք՝ իրենց գիրքերուն վրայ անշարժ մնացած ըլլան։ Ասոնց մասին ոչինչ կը յիշատակէ Ապպիանոս։ Եթէ զանոնք Ապպիանոս աջ թեւին վրայ ճակատեցուցած էր, ինչպէս Պլուտարքոս, այս ինչու հետեւակազունդը դէպ աջակողմ, զրահաւոր հեծելազօրաց վրայ փախչելու ստիպուած պիտի ըլլար, եւ ոչ թէ հակառակ ուղղութեամբ, քանի որ ձախակողմը այնքան ազատ տեղ կար փախչելու։ Այս առեղծուածն անմեկնելի կը մնայ մեզ։ Հետապնդման գործողութիւնքը կը տարածուին 120 ասպարէզ երկայնութեան մը վրայ, մինչեւ որ օրը կը սկսի տարաժամիլ։

Բան է այլուշափս, ապացուցած ըլլալու համար Ապպիանոսի նկարագրութեան թերութիւնները։ Եթէ այս խնդրոյն վրայ պէտք եղածէն քիչ մ'աւելի ծանրացայ հոս, պատճառն այն է, որ անոր վկայութիւնքը չափազանց շատ դժուարութիւններ յարուցած էին ճակատամարտիս նորագոյն նկարագրութեան առջեւ։

Այժմ կը մնան մեզ Մեմնոնի ու Փրոնտինոսի մեն յիշատակուած քանի մը հակիրճ վկայութիւնները աչքէ անցընել։ Մեմնոն կը պատմէ[1], թէ Լուկուլլոս նախ աջ թեւը զարկաւ՝ եւ մեզ, տար վրայ հետեւեալը, եւ այսպէս կարգ ըստ կարգէ բոլոր հայ զօրագունդերը այնպէս մը վկանդեց, որ թագաւորութեան մը եղաւ հետեւանքը, եւ, ի վերջոյ, խուճապային փախուստով մը վերջացաւ։ Ուրիշ խօսքով. Լուկուլլոս հայ բանակին աջ թեւէն սկսելով զարկաւ փճացուց։ Այս շատ կարուկ

[1] Գլ. 57։

վկայութիւնը կատարելապէս կը համաձայնի մեր նկարագրութեան հետ։ Գետի ու այլ երկրորդական նշանակութիւն ունեցող մանրամասնութեանց վրայէն լռութեամբ կ'անցնի Մեմնոն՝ իր համառօտ նկարագրութեանը մէջ։

Փրոնտինոս[1] եւս լիովին մեզ հետ համաձայնելով կ'ըսէ. Լուկուլլոս իր զունդերէն մէկ մասին հետ կը գրաւէ բլուր մը լայնանիստ կատարը, անկէ կը խոյանայ ստորոտը ճակատ կազմած Թշնամւոյն վրայ, ու անոր հեծելազունդերը կողէն յարձակման ենԹարկելով՝ զանոնք ի փախուստ կը դարձընէ (aversum), եւ կը վանէ հետեւակազօրը՝ զայն եւս վարատելէ ցրուելէ յետոյ։ Հոս եւս նմանապէս հակառակութիւն մը չ'երեւար մեր նկարագրածին հետ։ Լուկուլլոս՝ Թշնամւոյն Թիկունքն անցնելու գործողութիւնը իր զունդերէն մէկ մասին հետ կ'իրագործէ. հայ զօրահաւաք հեծելազունդին վրայ կողէն յարձակում ընել կու տայ, այսինքն՝ գետեզերքի կողմէ Թրակացի ու Գաղատացի այրուձիուն միջոցաւ։

Այսպէս ուրեմն, Նիւթիս ուսումնասիրութեանը հայոց բոլոր հին աղբիւրներու աւանդածները մի առ մի իրարու համեմատելով, կը յուսամ, Տիգրանակերտի ճակատամարտին լիակատար ու մանրամասն նկարագրութիւնը տուած ըլլամ։

---

1 Strategem. II. 2, 4. Հմմտ. առ այս նաեւ II. 1, 14. ուր՝ մասնաւորաբար, չեշտուած է Լուկուլլոսի յարձակողականի անցնիլը, յառաջ քան մեծ բանակին պատրաստութեանց աւարտիլը։

7.

*Նորագոյն մատենագրութիւնը ճակատամարտիս մասին:*

Յառաջ քան Տիգրանակերտի պաշարման վերադառնալս, կ'ուզէի հոս քանի մը խօսք ևս՝ հնախոյզ պատմագիրներէ ոմանց այս նիւթին վրայ գրած ուսումնասիրութեանցը նուիրել։

Առաջին անգամ Դրումանն էր, որ իր *Պատմութիւն Հռոմայ*[1], ընդարձակ գործին մէջ, ճակատամարտիս ճշգրիտ նկարագրութիւնը տուաւ։ Անոր նկարագրութիւնն իմինէս այնու միայն կը տարբերի, որ նա ևս՝ ինչպէս Ապպիանոս, կ'ընդունի Լուկուլլոսի աղխերու վրայ յարձակելով զանոնք հետևակազօրաց վրայ նետած ըլլալուն պարագան, որ միջոցին անոր թեթևազէն այրուձին կեղծ փախուստի դիմելով, Հայ զրահաւոր հեծելազունդերն իրենց դիրքերէն դուրս հրապուրել պիտի աշխատէր։ Աղխերու վրայ եղած յարձակման մը մասին իմ՝ վարկածս արդէն բացատրած եմ վերևը, Ապպիանոսի նկարագրութեան քննութեանս առթիւ։ Այժմ ես պիտի ընդդիմախօսեմ՝ այն ենթադրութեան, որուն համաձայն Լուկուլլոս հրամայած կ'ըլլայ զրահաւոր հեծելազունդերն իրենց դիրքերէն դուրս հրապուրել։

Ապպիանոսի նկարագրածին համեմատ հարկ է ընդունիլ, որ, եթէ Լուկուլլոս իրապէս կրցած էր՝ իր համեմատաբար սակաւաձեռն ձիաւոր-

1 Drumann, Geschichte Roms, Band IV. էջ 147 ff.

ներուն միջոցաւ, իրագործել այդպիսի հնարք մը, նոյնին հետապնդումը վիճակած ըլլալու էր հայ թեթեւազէն հեծելագունդին՝ եւ ոչ թէ զրահաւոր հեծելազօրաց։ Սակայն կարելի է թէ Լուկուլլոս, եթէ աղխերը նկատի չառնուին, միայն՝ զրահաւոր հեծեալներու վրայ յարձակած ըլլայ, որոնք իրենց ծանրութեամբը շատ ալ չէին տարբերեր աղխերու պահպանութեան յատկացուած գունդերէն։ Հայ հետեւակազօրաց վրայ իյնալէ, անշուշտ, պէտք էր զգուշանալ Լուկուլլոս, վասն զի նոյն իսկ այդ անկարգ հաւաքուած հրոսակներու մէջ իւրաքանչիւր ռազմիկ այնքան չոյս, այնքան ճարպիկ կարող էր եղած ըլլալ, որ իւր ստախին յարձակմանը կուրծք տալով կարող ըլլար զայն յաղթահարել։ Այսպէս ուրեմն 80.000նոց բանակ մը հազիւ թէ զգացած պիտի ըլլար 800 գլխէ բաղկացած գունդի մը յարձակումը, եւ հետեւութիւնը, ընականաբար, պիտի չըլլար բաղանդակ բանակին այսպիսի խուճապանման փախուստը։ Այս պարագան սակայն այնու միայն կրնայ մեկնուիլ, որ ծանրաշարժ մարդկային զանգուածներն իրենց ծանրաբեռնութեան պատճառաւ թիկանց կողմէ եղած յարձակման մը — ըլլայ այն նոյն իսկ քանի մը հարիւրնոց գունդէ մը — դիմանալ չկարենալով՝ ինկած են հետեւակազօրաց վրայ, ու զայն առաթուր կոխած։ Այս սակայն չէր կրնար ըլլալ աղխերու գունդը, այլ՝ զրահաւոր ձիաւորացը։ Զայս իսկոյն նշմարած էր ինքնին Լուկուլլոս։ Արդ ուրեմն, Լուկուլլոսի՝ իւր այդ հոյակապ ծրագիրը գլուխ հանել

կարենալու համար, հարկ էր միթէ նախապէս իւր ձիաւորներու կեղծեալ փախուստին դիմել, որպէս զի թշնամին զինք անդ հետեւել հրապուրէ։ Այդ պարագային սակայն նա, ենթադրելով որ, իւր երկու վաշտերն իրենց յանձն եղած գործը յաջողութեամբ գլուխ հանէին, ինչ պիտի անէր իր առջեւը — պարապ ու թափուր դիրք մը պաշարելէ, այնպէս չէ՞, որ, քիչ յառաջ, ծակառած էր զօրահաւոր ձիաւորաց գունդը։ Այդ անհնար է։ Հետեւաբար, Թրակացւոց ու Գալատացւոց յարձակումը անդի ունեցած է ոչ թէ առջեւէն՝ ճակատի կողմէ, ուր զօրահաւոր հեծեալները, անդամ ու կուռ ընդդիմադրութեամբ, կարող էին անոնց յարձակման կուրծք տալով զայն ետ մղել, այլ գետի կողմէ, որ ուղղութեամբ անոնք իրենց դիրքերէն — անելոյն անձկութեան եւ միանգամայն իրենց ծանրութեան պատճառաւ — չէին կարող հեռանալ։

Հռոմայեցի այրուձիուն այս յարձակումը ուրեմն ծառայած է գլխաւորապէս Հայոց մաղթութենէն վրիպեցընելու հռոմէական երկու վաշտերուն Տիգրանի բանակին թիկունքն անցնելու գործողութիւնը, եւ երկրորդաբար՝ զանոնք կոտորելու ու պատառատելու զօրահաւոր հեծելազօրաց վրայ թիկունքէն յարձակելու, երբ այս վերջիններն՝ իրենց անպատսպար մնացած մէկ կողմէն ենթարկուած յարձակման տոկալ չկարենալով՝ սկսած էին արդէն վհերոտիլ ու գնդուիլ։

Այսչափս կը յուսամ թէ բաւական է մէկին ու որոշ կերպով բացատրելու Հռոմայեցի

ձիաւորներու գործած յարձակման խոկական նպատակին ու անոնց ձեռք բերած արդիւնքը[1]։

Նէոյման[2] հայ բանակին ետեւ զետեղուած աղխն առանց մոռնալու՝ զրահաւոր հեծելազօրու-թին հռոմէական թեթեւազէն այրուձիէն գրաւած ըլլալուն վրայ կը ծանրանայ։ Այսու սակայն նա իրականութեան հակառակ չ'ըլլար, բայց որում՝, այդ դեռ չի նշանակեր թէ անոնք իրենց գրաւած դիրքերէն դուրս՝ բացավայր մը հրապուրուած ըլլան։

Շատ մթին գոյներով կը պատկերացնէ նմանապէս Ռայնախ[3] այդ միջադէպը։ Նա եւս զանց չ'առներ յիշատակելու աղխերու զօրաբաժնին ու զրահաւոր հեծելազօրաց բացավայր հրապուրուելու պարագան։ Երբ «աղխերու պահպանութեան յատկացուած զինուորներն ու գրաստները թշնամի բանակին աջ թեւին շարքերուն մէջ խռովութիւն սերմանեցին, հռոմայեցի այրուձին նոյն միջոցին յանկարծ ետ դառնալով՝ զինքը հետապնդող հայ զրահապատ հեծելազօրը ուժգին յարձակմամբ ետ մղեց, մինչ Լուկուլլոս զանոնք թիկունքէն կը հարուածէր»։ Այս միջադէպը կը մեկնուի այն պարագային միայն, երբ զրահաւոր ձիաւորները հռոմայեցի այրուձիէն հալածուելով՝ յետս կոյս փախուստի մը դիմած ըլլան։ Այս ենթադրութիւնը սակայն

---

[1] Հմմտ. նաեւ Mommsen, Röm. Geschichte III, էջ 70, ուր նմանապէս աղխերու մասին խօսք չ'ըլլուիր։

[2] Neumann, Geschichte Roms II, էջ 113f.

[3] Էջ 359։

հաղիւ թէ ընդունելի ըլլայ՝ եթէ հռոմայեցի 3.000 թեթեւազէն հեծեալներն իբրպէս յաջողած ըլլային 10.000 զրահաւոր հեծեալներն իրենց առջեւէն հալածական տանելու, այդ պարագային անոնք ընդհանուր կանոնէ անշուշտ բացառութիւն պիտի չկազմէին, եւ փախուստի միջոցին. զիրենք հետապնդողներուն իրենց կռնակը դարձուցած պիտի ըլլային։ Այս պարագային սակայն երկու փաշտերուն ծանր փռանգ պիտի ստանար տասն հազարներու այս ամէհի ու խուճապանման փախուստին ամբողջական ծանրութիւնն իրենց մորթին վրայ զգալու։ Թէ քանի՞ հոգի այս ահարկու ընդհարման երեսէն ողջ գլխով պիտի յաջողէր դուրս գալ՝ այդ ալ դատ խնդիր։ Հեռաւորակայօրէ բաղկացած գունդի մը — դէպի թշնամին դարձած ճակատով — նահանջը շատ ալ մեկնելի էր. սակայն ծանր զրահաւորուած նժոյգ մ'իր սպառազէն հեծեալովը միասին ընկրկելու ստիպելը՝ հազիւ թէ կարենայ ճարտար ու արուեստագէտ ձիավար մը գլուխ հանել, թող թէ — 10.000 ասպետներն իրենց գիրքերէն խախտել։ Աստիճանաբար նահանջելու մասին եւս հոս խնդիր չի կրնար ըլլալ, վասն զի ատոր եւս անատակ էին ծանրազէն ձիաւորներն իրենց դանդաղաշարժութեան պատճառաւ։

Դառնանք այժմ Սախաու[1] նկարագրութեան, որ Տիգրանակերտի դիրքը՝ Մարդինի մօտ, Թէլ-Էրմէն՝ դրուած տեղւոյն վրայ ընդունելէ

[1] Abhandlung der kgl. Akademie der Wissenschaften zu Berlin, 1880.

յետոյ, իւր այս միջավայրին համապատասխան ճակատ մը եւս կը յօրինէ։ Ինքն իսկ կ'ըսէ, թէ շատ դժուար է հռոմէական բանակին իսկական դիրքին ու անոր շարժումներուն մասին պայծառ պատկեր մը կազմել։ Արդէն այլապէս ալ անկարելի էր որ ըլլար, վասն զի այն երկրագրական դիրքը որուն վրայ նա ճակատամարտ տեղի ունենալ կու տայ, մեր աղբիւրներուն նկարագրութեանը ոչ միայն չի համապատասխաներ, այլ նաեւ կը հակասէ իսկ անոնց։ Տիգրանակերտի դիրքին մասին ես հոս աւելորդ կը համարիմ բառ մ'աւելի գրելը. սակայն հարկ կը համարիմ հոս մասնաւոր կերպով միայն շեշտել, որ Սախաուի նշանակած տեղւոյն վրայ այն ճակատամարտը բացարձակապէս չէր կրնար տեղի ունեցած ըլլալ։

Հայք Թորը կ'անցնին (Մարդինի կապան), եւ հանդիպակաց լերան վրայ կը բանակին, հռոմէական բանակէն աւելի բարձր դիրքի մը վրայ։ Անոնց աջ թեւը յեցած էր կապանի վրայ, մինչդեռ կեդրոնն ու ձախ թեւը տարածուած էին մինչեւ Հաբին։ Իսկ Լուկուլլոսի բանակն ընդարձակ բոլորակ մը կազմած նստած էր Տիգրանակերտի շուրջը, Գիրսի երկու եզերքներուն վրայ։ Լուկուլլոս այս միջոցին Մուրենան 6000 զինուորով քաղաքին առջեւ թողլով, ինքը մնացածներուն գլուխն անցած Գիրսը կ'անցնի, ու հոն, 'Այն-Միշմիշի ու գետին արեւմտեան արմուկին միջեւ, կը բանակի։ Ինչու՞ սակայն այսպէս կ'ընէ։ Ինչու՞ իր բանակին մեծագոյն մասին հետ յայնկոյս գետին կ'անցնի, որուն մէկ կողմը թշնամի-

ները բանակած էին։ Այս հարցմանց մէկ պատասխան միայն ունիմ. Այլապէս չէր կարելի պատշաճեցնել Պլուտարքոսի, որ որոշ ու բացայայտ կերպով երկու ոսոխները զանազան եզրոդաշտերու վրայ կը բանակեցընէ՝ մին արեւելեան, իսկ միւսը՝ արեւմտեան կողմը։

Սակայն քիչ մ'ալ յառաջ երթանք։ Հոկտեմբեր 6ի առաւօտուն հարկ կ'ըլլայ Լուկուլլոսի դէպ արեւմուտք չուել, ու գետէ մը անցնիլ. զայս կը պահանջէ նաեւ Պլուտարքոս, որ դէպ արեւմուտք գետի շեղում մը եւս կ'ենթադրէ։ Հոս, ստոյգ է, Գիրս այդ գիծի շեղում մը ցոյց կու տայ։ Ուստի եւ Սախաու՝ Լուկուլլոսն երկրորդ անգամ մը եւս Գիրսէ անցնիլ կու տայ, որպէս զի այսու իւր զինուորները քաղաքին շուրջը քալեցընելով, ի վերջոյ զանոնք թշնամւոյն դէմ ճակատեցընէ։ Հետեւաբար Լուկուլլոս նախորդ օրուան զօրաշարժը պարզապէս անոր համար ըրած կ'ըլլայ. որովհետեւ ստիպուած կ'ըլլայ գետին արեւմտակողմը բանակիլ եւ դէպ արեւմուտք չուել։ Սակայն եւ այնպէս դարձեալ նոյն տեղն է, ուր էր յառաջ. իսկ մանուածապատ ու խոտորնակի ըրած երկար շրջանն աւելորդ տեղ ըրած կ'ըլլայ. մինչդեռ 'Այն-Միշմիշի քովէն ուղղակի Գիրսի վրայով կարող էր թշնամիի աջ թեւին վրայ քալել։ Ու այս ամէնը կ'ըլլայ միմիայն որպէս զի Պլուտարքոսի նկարագրութեան համաձայնցուի։

Նախապատրաստական այս շարժումներուն մասին ոչ մի մէկնութիւն կու տայ Սախաու։ Կամ թէ լոկ ծաղրել էր նպատակը Լուկուլլոսի՝ արեւ-

մըտեան ուղղութեամբ դէպի Կապադովկիա կեղծ նահանջի մը ձեւին ներքեւ. Հայերը պատրել ուզելով։ Այս սակայն բնաւ արդարացուցիչ պատճառ մը չի կրնար համարուիլ զօրավարի մը համար, որ՝ փոխանակ իր բանակին ուժերը կարելի եղածին չափ խնայելու, կրկին անգամ ծանր չու կը հարկադրէ անոնց վայրապար։ Սախաու իրերու այս ձեւ դատաւորմամբ այնքան յառաջ կը տանի Լուկուլլոսի պարտաւորութիւնը, որ նա ալ եւս կարող կ՚ըլլայ՝ Պլուտարքոսի ամէն պահանջմունքը լիովին լրացուցած, խելքին ճակատ տալու։

Ճակատամարտիս ընթացքին մասին աւելի մերձաւոր մանրամասնութիւններ չի տար մեզ Սախաու, գոնեայ երկրին կամ ճակատամարտին գրաւած դիրքին նկատմամբ. թէեւ նա յարմար սարահարթ մը կը գտնէ, որուն ներքեւ կարող էր նա զրահաւոր հեծելազօրը ճակատեցնել. սակայն այդ սարահարթը Գոմի ու Հոռինի մօտ՝ ձախ թեւին վրայ կ՚իյնայ. եւ ոչ թէ՝ աջին, ինչպէս Պլուտարքոս եւս զայն կը պահանջէ. հաւանական է որ Մարդինի կապանի մօտերը, մերձաւորապէս Մուսիկանի քովերը գտնուի այն։ Սախաու ինքնին անշուշտ զգացած ըլլալու էր այս հակասութիւնը, որ ինքզինքը ծանծաղ հանելու համար կ՚ըսէ. «Հայ զրահաւոր հեծելագունդին մեծագոյն մասը թէեւ աջ թեւին վրայ դիրք բռնած էր, ուստի եւ Մարդինի կապանի մօտերը, սակայն ես կը միտիմ որոշիչ ճակատամարտին թատերաբեմը ոչ թէ ընդ մէջ կապանի ու Գոմի,

այլ՝ Հոռինի մարզին վրայ փոխադրել ։ Այս, յամենայն դէպս, շատ պարզ է, եթէ միայն համաձայնի Պլուտարքոսի հետ, մինչդեռ վերջինս չի թոյլատրեր այսպիսի բոլորովին ձրի ենթադրութիւն մը։ Ու յետոյ, ի՞նչ հիման վրայ յեցած Սախոու զրահաւոր հեծեալները գրչի մէկ հարուածով ճակատին ձախակողմեան թեւը կը փոխադրէ։

Սախոուի այս ամբողջ նկարագրութեանը մէջ մենք, ուրեմն, ճիգ մը միայն կ՚ընդնշմարենք ճակատամարտը բոլորովին անյարմար գետնի մը վրայ պատշաճեցընելու, առանց սակայն նկատի առնելու ռազմավարական տարրական սկզբունքները ու պահանջքը, նա՛ եւ առաւթուր խակ կոխելով գրեթէ մեր բոլոր աղբիւրները։

Կը յուսամ թէ այս համառօտ ակնարկովս բաւականի ապացուցած եղայ, որ այն տեղւոյն վրայ ու այնպէս՝ որ եւ ինչպէս Սախոու կը նկարագրէ, անկարելի էր որ Տիգրանակերտի ճակատամարտը տեղի ունեցած ըլլար։ Մինչդեռ, ընդհակառակն, Պլուտարքոսի՝ Տիգրանակերտի ճակատամարտին ամբողջական նկարագրութիւնը ճշգիւ ու էապէս կը համապատասխանէ Բաւամանւոյ քովի մարզին, որով միայն լիովին լուսաբանուած կ՚ըլլայ Հռոմայեցւոց ամէն մէկ՝ նախապէս անմեկնելի մնացած զինուորական շարժում մը։

8.

*Հայոց բանակին կորուստները:*

Հոկտեմբեր 6ի երեկոյին վերջացած էր արդէն պատերազմը, եւ Հռովմայեցիք՝ գրեթէ անաշխատ, փառաւոր յաղթանակ մը տարած էին, խուճապի մատնելով Տիգրանի հսկայ բանակները, որոնք այնքան մեծ ոգեւորութեամբ, ու իրենց յաղթութեանը վրայ լիայոյս՝ ձեռնարկած էին այն պատերազմին:

Սարսափելի են թիւերը, զորս կը նշանակէ Պլուտարքոս[1], ցոյց տալու համար Հայոց բանակին ունեցած կորուստներուն ահաւորութիւնը: Ըստ նշանակած թիւերուն համաձայն՝ Հայք կորսնցուցած ըլլալու էին իրենց բովանդակ հեծելազօրքին հետ, 100.000 եւս հետեւակ զինուոր: Պլուտարքոսի աւանդած այս թիւերուն բոլորովին ներհակ կ'արտայայտուի Որոսիոս[2], 30.000 միայն նշանակելով ինկածներուն թիւը: Այս թիւն ալ, սակայն, իրականէն դեռ խիստ շատ բարձր կը գտնեմ. ինչու որ եթէ ինկածներուն թիւը 30.000 ընդունինք, ընդունած պիտի ըլլանք նաեւ, որ Հայք՝ պատերազմի մասնակցած համէական զօրութիւնն գրեթէ կէսինը կորուստուած ըլլան, ինչ որ, ի հարկէ, չափազանց է: Անհաւատալի է ուրեմն այս գումարն ալ, մանաւանդ երբ զայն համեմատենք կորուստներուն հետ արդի պատերազմներու, ուր արագահարուած

1 Plut. Luc. c. 28.
2 VI, c. 3, § 6.

թնդանօթներն ու նորագոյն ձեւի հրացաններն շատ աւելի մեծ աւեր կը սփռեն, քան մարդկային բազուկը։

Թէեւ շատ նուազ, այսու ամենայնիւ իրականին շատ աւելի համապատասխան կը գտնեմ ես Փլեգոն տրալլացւոյն՝[1] վկայութիւնը։ Նա՝ այս ճակատամարտի միջոցին, Հայոց ունեցած կորուստը 5.000 մարդ միայն ցոյց կու տայ, առանց հաշուելու գերիները, որոնց թիւը, ի հարկէ, շատ աւելի մեծ եղած ըլլալու էր, եւ առանց նմանապէս հաշուելու Հռոմայեցւոց ձեռքն ինկած հարուստ աւարը։ Հետեւաբար կարող ենք, առանց վարանելու, ուղիղ համարել Փլեգոնի նշանակած թիւերը, որոնց տոկոսին մեծ մասը կը կազմէին զրահաւոր հեծելազօրքը, որոնք, ինչպէս գիտենք, իրենց ծանրութեանը պատճառաւ ահաւոր կորուստներ ունեցած էին։

Ծիծաղելի է, ստուգիւ, սոր ներհակ, Հռոմայեցւոց ունեցած կորուստը, որոնք՝ ըստ տեղեկագրին Լուկուլլոսի, տուած կ'ըլլան ընդ ամէնը հինգ մեռեալ ու հարիւր վիրաւոր։ Ստոյգ է որ, ի հնումն, յաղթական բանակներն էին, ընդհանրապէս, քիչ կորուստ տուողները, ըստ որում, հետապնդման միջոցին հետապնդուողն էր առաւելապէս տուժողը՝ եւ ոչ թէ հետապնդողը։ Այսու հանդերձ սակայն, որքան ալ ոչինչ կորուստ անհնար էր մտածուիլ Հռոմայեցւոց կողմէ։ Հոս եւս կը ցոլանայ օրինակը

[1] Müller. FHG. III. frgm. 12.

Սիլլայի, որ, իր համբաւաւոր տեղեկատու-թեանը մէջ առ Ծերակոյտն, պարծենալով մը կը շեշտէր՝ Շատ թշնամի եւ սակաւ Հռոմայեցի:

9.

Տիգրանակերտի գրաւումը:

Այսպիսի անակնկալ յաղթութեամբ մը Լուկուլլոս իր բանակին սպառնացող վտանգը հեռացընելէ ու նոյնին դիրքն ամրացընելէ յետոյ՝ կարող էր այնուհետեւ անվարան ու անկասկած Տիգրանակերտի պաշարման գործը բուռն թափով մը կրկին յառաջ վարել: Այս նպատակաւ ալ վերցուց նա իսկոյն իր բանակը, եւ վերադարձուց զայն մայրաքաղաքին պարիսպներուն առջեւ, որպէս զի պաշարումը սաստկացընելով՝ անոր անկումը շտապեցընէ: Պարիսպներուն անառիկ դիրքը սակայն, ինչպէս նաեւ բերդապահ ջոկատներու դիւցազնական ու կորովի դիմադրութիւնը նկատի առնելով՝ պէտք է ըսել, որ շատ ալ խնդրական էր Լուկուլլոսի յաջողութիւն ունենալը, եթէ նոյն պահուն Տիգրանակերտի քաղաքապահ զինուորներու միջեւ ծագած խռովութիւնք անոր այս ձեռնարկին լիովին յաջողելուն ձեռնտու եւ նպաստամատոյց եղած չըլլային:

Մայրաքաղաքին բնակիչները ուշի ուշով հետեւած էին ճակատամարտին ընթացքին, եւ ականատես եղած էին արքայական բանակին կրած ծանր պարտութեան: Հետեւաբար անոնք այլ եւս այդ աղետաբար բանակէն ոչ մէկ դրական

օգնութիւն կարող էին ակնկալել։ Ճակատամարտի վաղորդայնին արդէն, Մանկէոսի՝ Ցիգրանակերտի հրամանատարին յոյն ու կիլիկեցի վարձկանները սկսեր էին խռովման նշաններ ցոյց տալ, եւ կ'ուզէին նոյն իսկ հաշտութեան համար բանակցութեան մտնել Հռոմայեցւոց հետ, փոխանակ ի զուր շարունակելու պատերազմը, եւ իրենց կեանքն ալ վտանգելու։ Ասոր վրայ, Մանկէոս զինաթափ ընել տուաւ բոլոր յոյն վարձկանազօրը։ Վարձկանները տեսնելով այժմ իրենց կեանքին սպառնացող մեծ վտանգը, եւ միւս կողմէ իրենց այսպէս անզէն մնացած ըլլալը, բնականաբար պիտի կասկածէին, թէ կրնային օր մը, յանկարծ, դաւաճանութեան մը զոհ երթալ. այս պատճառաւ ալ, շատ մեծ զգուշութեամբ, քաղաքին մէկ անկիւնը միահամուռ ամփոփուած կենդրոնացան, որպէս զի վտանգի մը պարագային՝ իրարու օգնել կարենան։

Այս առթիւ վարձկանազօրը պատժելու համար, Մանկէոս անոնց վրայ զինուոր ղրկեց։ Իրական պատերազմ մըն էր որ տեղի ունեցաւ բերդերուն ետեւ, այս երկու հակառակորդաց միջեւ. մինչեւ որ Յոյները՝ իրենց ձեռքի բիրերովը — այս էր անոնց միակ զէնքը — իրենց վրայ եկած բարբարոս զինուորներուն յաղթելով՝ գրաւեցին անոնց զէնքերը, ու այս յաղթութեան վրայ անմիջապէս քանի մը բերդերու տիրանալով, գիշերանց, Հռոմայեցիները ներս մտուցին։ Այսպէս ահա, Յունաց մատնութեամբը միայն կարող եղաւ Լուկուլլոս իւր ձեռնարկին մէջ յաջողիլ.

ու առանց կորուստ տալու՝ մեծափարթամ քաղաքի մը տիրանալ։ Քաղաքին մէջ ամբարուած առասպելական հարստութիւնները կողոպուտի ենթարկուեցան Հռոմայեցի աւարառէր ու ընչաքաղց զօրաց կողմէ։

Ապպիանոս[1] լռութեամբ կ'անցնի յոյն վարձկաններուն ապստամբութեան վրայէն. այսու հանդերձ, այդպիսի անառիկ քաղաքի մը, որպիսի էր Տիգրանակերտ, այսպէս շուտ անկման պատճառը չ'ուրանար, ու զայն՝ ներսէն եղած մատնութեան մը կը վերագրէ։ Հոս, սակայն, առաւելապէս քաղաքին հրամանատարներն են որ կը խարանուին իբր գլխաւոր պատասխանատուներ Տիգրանակերտի անկման, վասն զի անոնք միմիայն իրենց անձնական փրկութեան մտահոգ՝ դաւաճանած կ'ըլլան իրենց արքային, մատնելով անոր ոստանը Լուկուլլոսի՝ անոր ոխերիմ թշնամւոյն ձեռքը։ Ապպիանի Μιθριδάτου στρατηγοὶ բացատրութեամբն, ապահովաբար, պէտք չենք հասկընալ պոնտացի գահազուրկ թագաւորին զօրավարները, այլ՝ Տիգրանեանները. թէեւ, այլուստ, անհաւանական չի թուիր, թէ Միհրդատ՝ ինչպէս յարձակախաղաց բանակին մէջ Տաքսիլէս մը նշանակած էր, նմանապէս նաեւ հոս ուրիշ փորձ ու ռազմագէտ զօրավար մը իբր խորհրդատու կարգած ըլլայ։ Մծբինի[2] մէջ անգամ կը հանդիպինք այդպիսի հանգամանքով բարձրաստիճան անձնաւորութեան մը՝ Կամխոս

---

[1] Դլ. 57։
[2] Plut. Luc. c. 32.

քաղաքին պաշտպան, համբաւաւոր Կալլիմաքոս զօրավարին, որ խորհրդատուն էր Տիգրանի եղբօր՝ Գոռ (Խուրս) իշխանին։ Այսպէս պետական ամբոցներուն այս պատերազմի մէջերին ցոյց տուած դիւցազնական ու յամառ դիմադրութենէն դատելով՝ կարող ենք իրաւամբ տարամերժել Տիգրանի զօրավարներուն վերագրուած այդպիսի նախատինք մը, եւ Տիգրանակերտի անկման իրական պատասխանատու նկատել՝ ինչպէս Պլուտարքոս, Ապպիանոս եւ Կասիոս Դիոն[1] եւս մեզ կը ծանուցին, միմիայն յոյն վարձկան զինուորները, որոնք քաղաքը մատնելով՝ Հռոմայեցիները բարեկամաբար ներս կը հրաւիրեն։

Դիւրին է գուշակել այդպիսի մեծահարուստ քաղաքէ մը Լուկուլլոսի եւ իր զօրաց ձեռքն ինկած աւարին քանակը։ Անչափ էր կողոպուտը։ Արքունի գանձատուները Լուկուլլոս իրեն միայն սեպհականած էր, իսկ իր զինուորներուն հրաման տուած էր բոլոր քաղաքն անխնայ կողոպտելու։ 8000 քանքար[2] ինկաւ անոնց ձեռքը. բաց աստի, վաճառուած աւարներու գինքէն գոյացած դրամէն 800ական դահեկան (δραχμή) նուէր տուաւ իւրաքանչիւր զինուորի։ Այնչափ հսկայ հարստութիւն մը կրցեր էր ժողվել Տիգրան իւր նորակերտ ոստանին մէջ, եւ այն՝ համեմատաբար այնքան սուղ ժամանակամիջոցի մը մէջ։

---

1 Դիոն ԼԵ. գլ. 2։
2 50,000 000 Ֆրանկ։

Յոյն դերասաններու խումբը, զոր Տիգրան իր նորակերտ ու փառաւոր թատրոնին նաւակատեացը համար Հայաստան բերել տուած էր, Հռոմայեցի հրամանատարին տարած յաղթանակները պանծացընելու միայն ծառայեց։ Լուկուլլոս, որուն յունասիրական զգացումները ծանօթ էին, իրեն մանաւոր հոգածութեան առարկայ ըրաւ Յոյները, եւ խոստու արգիլեց իր զինուորներուն՝ անոնց ստացուածոց վնասել։ Հայ նախարարաց տիկնայքն եւս մեծարեց Լուկուլլոս ու պանոնք պատուեց, որպէս զի այսու անոնց ամուսիններուն սէրն ու վստահութիւնը շահի։

Սակայն շատ աւելի մեծ մարդասիրութիւն ու կարեկցութիւն ցոյց տուաւ Լուկուլլոս հանդէպ այն Յոյներու, զորս երբեմն Տիգրան իրենց տեղերէն խախտած ու իր նորակերտ ոստանը բերել հրամայած էր։ Այս կերպ Տիգրանակերտ բռնադատուած բոլոր օտարականներն անմիա իրենց տեղերը դարձուց նա, չմոռնալով նաեւ յանձնել անոնցմէ իւրաքանչիւրին պէտք եղած ճանապարհածախսը։ Ա՛յսպէս ահա, այդ մէկ սակայն հսկայ քաղաքին գրաւմամբը վերստացան մարդաթափ եղած բոլոր յունական քաղաքներն իրենց նախկին բնակիչները, դրուատելով ու գովելով Հռոմայեցի մարդասէր զօրավարն՝ իբր իրենց մեծ բարերարն ու երկրորդ հիմնադիրը։ Բարբարոս բնակիչներուն եւս, զորս նմանապէս բռնի գաղթեցուցած էր Տիգրան, հրաման շնորհեց Լուկուլլոս իրենց երկիրները վերադառնալ։

Այսպիսի խոհեմական ու մարդասիրական միջոցներով կրցաւ Լուկուլլոս իւր հակառակորդներուն վստահութիւնն ու բարեկամութիւնը շահիլ, ու զայն ճարտարօրէն իր հետապնդած քաղաքական նպատակներուն ծառայեցնել։ Իրաց արդիւնքէն կարող ենք հետեւցնել, թէ որքան յաջողած էր նա իւր հետապնդած ծրագիրներուն մէջ։

---

## Գլուխ Գ.

### Ճակատամարտին, ու Տիգրանակերտի գրաւման հետեւանքը:

I.

*Տաւրոսի հարաւակողման Տիգրանի հարկատուները հպատակութիւն կը յայտնեն Լուկուլլոսի:*

Երբ ազգին բախտին նժարը Հռոմայեցւոց կողմ կը հակէր, ու յաղթական ճակատամարտէ մը եւ Տիգրանակերտի գրաւումէն յետոյ իրերու վիճակն այսպէս հիմնովին յեղաշրջուած կ'երեւէր, անդին Տիգրանակերտի հարկատու իշխաններու համար եւս հրամայական պահանջ էր, ստեղծուած այս նոր քաղաքական կացութեան հանդէպ իրենց դիրքը ճշդել։

Տիգրանակերտի անկումովը, Տիգրանի՝ Տիգրիսի հարաւակողմն ըրած բոլոր աշխարհակա-

լութիւնքն մի առ մի Հռոմայ ժառանգութիւն ինկան։ Գաւառատէրերէ շատերը, որոնք յարմար առթին կը սպասէին իրենց վրայէն թօթափելու Տիգրանի անարգ լուծը, ներկայ քաղաքական հանգամանքներէն օգտուելով՝ անցան խելոյն յաղթականին կողմը։ Նախ՝ արաբ վաչկատուն ցեղերու ցեղապետները Լուկուլլոսի ներկայանալով՝ հպատակութիւն յայտնեցին անոր[1]։ Կասիոս Դիոն[2] անոնցմէ ամենահզօրին միայն՝ Ալքաուտոնիոսի, անունը կու տայ, ինչ որ նոյն է Ստրաբոնի[3] յիշատակած Ալքեդամնոսի հետ, որ ցեղապետն էր Հռոմէացւոց՝ վաչկատուն ցեղի մը, որ Եփրատի արեւմուտքին արեւելակողմը կը բնակէր, ու Հռոմայեցի ժողովրդեան բարեկամ տիտղոսը կը կրէր։ Այս նոյնութիւնը Կասիոս Դիոնի[4] մէկ տեղիքէն եւս ակներեւ կ'երեւի, ուր նա կրկին այն միեւնոյն հանգամանաց մէջ կը յիշատակուի, ինչպէս վերը Ստրաբոնի քով։

Յաղթական Հռոմայեցւոյն հպատակութիւն յայտնեց նմանապէս Անտիոքոս Կոմագենէի թագաւորը[5]։ Իսկ Ասորիները մեծապէս օգտուեցան հռոմէական զինուց այս անակնկալ յաջողութենէն, վասն զի այդ աշխարհակալուած երկրին կուսակալ՝ Մագաղատէսի զօրագունդերուն — որ Լուկուլլոսի յարձակման միջոցին օգնութեան փու-

¹ Plut. Luc. c. 29.

² XXXV, 2.

³ XVI, 2, 10 (753).

⁴ Գիրք 47, գլ. 27։

⁵ Cassius Dio, XXXV, c. 2.

Թագեր էին Տիգրանի — Ասորիքէն քաշուելովը, Տիգրանի այդ երկրին վրայ ունեցած գերիշխանութիւնը բոլորովին կորսուած, եւ Անտիոքոս Ասիացին, հին Սելեւկեան հարստութեան մէկ շառաւիղը, Ասորիներէ արդէն թագաւոր հռչակուած էր։ Սա միւս մէկ որդին էր Անտիոքոս Եւսեբեսի, որմէ Տիգրան յափշտակած էր գերիշխանութիւնը[1], եւ Սելինէի[2], զոր Տիգրան՝ Միջագետաց Սելեւկիա բերդին մէջ բանտարկած ու յետոյ գլխատել տուած էր[3]։

Այժմ ահա սկսաւ տեսնուիլ արդիւնքն այն վերապահ ու մարդասէր վերաբերմունքին, զոր ցոյց տուած էր Լուկուլլոս Հայաստանի հպատակ այն ժողովուրդներու հանդէպ, որոնց սահմաններուն մէջէն ստիպուած էր չուել անցնիլ։ Յոփացիք, որոնք՝ քանի դեռ իրենց բանակները վերջնականապէս չէին ջախջախուած, տակաւին կը դեդեւէին. այս ծանր պարտութեան վրայ սակայն՝ ինքնակամ եկան ու հպատակութիւն յայտնեցին Լուկուլլոսի։

Անոնց օրինակին հետեւեցան նաեւ Կորդուաց աշխարհին քաջ ու պատերազմասէր բնակիչները, զորս Լուկուլլոս՝ մասնաւորապէս իրենց մեռած իշխանին Զարբիենոսի դրած շուքովը գիտցաւ իրեն յանկուցանել։ Տիգրան իր գաղտնի լրտեսներու միջոցաւ իմացած ըլլալով, որ Զարբիենոս գաղտնաբար բանակցութեան մտած է Ապպիոս

[1] Appian., Syr. 48/49.
[2] Appian., Syr. 69/70.
[3] Strabo, XVI, 2, 3 (749).

Կղաւդիոսի հետ, եւ թէ անոր՝ մինչեւ իսկ օգնութիւն խոստացած, հրամայեց՝ յառաջ քան Հռովմայեցւոց մտնելը, զինքն իր բոլոր տունովը սրէ անցընել։ Արդ. իր այս կերպ սպաննուած բարեկամին մարմինը պատուելու, եւ միանգամայն այսու Կորդուքին իր կողմը շահելու համար՝ Կորդուք մտնելուն պէս, մեծաշուք յուղարկաւորութեան հանդէս մը սարքել տուաւ անոր մարմնոյն. փայտակոյտը, որուն վրայ կը հանգչէր Զարբիենոսի դիակը, թանկագին կերպասներով ու հարուստ աւարներով զարդարելէ յետոյ, ինքն անձամբ վառեց։ Արուաղոհի արարողութեան միջոցին, գաւառնաւած իշխանն՝ իրեն մտերիմ բարեկամն ու Հռովմայեցւոց դաշնակիցն անուանեց, եւ անոր ի պատիւ կանգնել տուաւ հոն փառաւոր մահարձան մը։ Ի շնորհակալութիւն իրենց իշխանին հանդէպ ցոյց տրուած այս ջերմ համակրանաց. Կորդուքք իրենց բերդերուն դուռները, առանց ամենադոյզն դիմադրութեան, բացին Լուկուլլոսի առջեւ։ Անդրան առատ էին հոն ամբարուած հարստութիւն ու պաշարը, որ կարող էր Լուկուլլոս, առանց բնիկն մը ստանալու հռոմէական ծերակոյտէ, դեռ երկար ատեն պատերազմը շարունակել[1].

Լուկուլլոս այսպիսի փառաւոր յաղթութեամբ մը Տիգրանի շրջակայ բոլոր գաւառներն իր իշխանութեան տակ նուաճելէ յետոյ՝ կարող էր այլ եւս անհոգ ու անկասկած ձմերել

[1] Plut., Luc. c. 29.

տալ իր պարտասած զինուորներուն, որպէս զի անոնք կատարելապէս կազդուրուած, կարող ըլլան, առաջիկայ գարնան, իրենց այս նոր ու անառիկ մեկնակէտէն, զինուորական նոր գործողութեան մը ձեռնարկել, եւ այս անգամ արշաւանք մը սարքելով դէպի Մեծ Հայոց՝ իրենց բոլորովին անծանօթ երկրի մը, ներքնաշխարհը։

2.

*Տիգրանի փախուստը:*

Դառնանք այժմ Հայոց, զորս, Տիգրանակերտի ճակատամարտէն յետոյ, իրենց փախուստի վրայ թողուցեր էինք։ Մինչ Տիգրանի հրամանին տակ գտնուող գլխաւոր բանակն այսպէս չարաչար պարտութեան կը մատնուէր, Միհրդատ իր 10.000 հայ ձիաւորներովը, զորս Տիգրանէ ընդունած էր, եւ Կաբիրայի ձախող ճակատամարտէն անձնապուրծ փախած իր սեպհական պոնտական զունդերովը կամաց կամաց կը յառաջանար դէպի ճակատատեղին՝ Տիգրանի օգնութեան։ Միհրդատի համոզումն էր, որ Լուկուլլոս, ինչպէս նախընթաց բոլոր ճակատներուն մէջ միշտ, նմանապէս հոս եւս պիտի չուզէր հապճեպով զինուորական գործողութեանց սկսիլ, այլ պիտի նախընտրէր խոհեմաբար շարժիլ եւ կամաց ու զգուշաւոր գործել։ Այս տեսակէտով, Միհրդատ ոեւէ յայտնի վտանգ մը չէր նախատեսեր իր փեսային՝ Տիգրանի նկատմամբ։ Բայց աւաղ, նա Տիգրանին տուած էր, խորհրդատուի հանգամանա-

գով, իր զօրավարներէն նշանաւորագոյնը՝ զՏաքսիլէս, որպէս զի յախուռն ու անխորհուրդ քայլեր առնելէ զգուշացընէ զայն։ Դժբախտաբար, սակայն, գիտենք թէ ի՞նչ կերպ մերժուեցան հռոմէական իրաց քաջածանօթ ու պատերազմափորձ այս ծերունւոյն այնքան անկեղծ ջանքերն ու աննենգ խորհուրդները։

Արդ, Միհրդատ՝ Տիգրանի նախապէս անցած ճամբու վրայէն հանդարտաքայլ յառաջացած միջոցին, յանկարծ, Տիգրանակերտի ճակատամարտէն գունդագունդ փախստականներու առաջին խումբին պատահեցաւ, որուն վրայ, քիչ ատենէն, աւելի սոսկալի բազմութիւն մը եկաւ աւելցաւ[1]։ Խռովեցաւ Միհրդատ, երբ լսեց անոնց բերնէն Տիգրանի բանակին կրած չարաչար պարտութեան լուրը, եւ իսկոյն հասկըցաւ, որ Լուկուլլոս՝ հակառակ իր սովորութեան, հոս, այս ճակատամարտին մէջ, խիզախ յարձակմամբ ու արագ արագ գործելով միայն կարող եղած էր յաղթութիւնը շահիլ։

Քիչ յետոյ պատահեցաւ ինքնին իսկ իր դժբախտ փեսային, որ 150 ձիաւորներու ընկերակցութեամբ, ապաւինած էր, փախուստի միջոցին, ճանապարհին հանդիպած առաջին բերդը[2]։ Այս անակնկալ պարտութիւնը զՏիգրան սպառսպուռ բարոյալքած ու զայն ծանր յուսահատութեան մատնած էր։ Արդարեւ, սրտատուչ էր երկու արքայից իրարու այս տարաբախտ հանդի-

[1] Plut., Luc. c. 29.
[2] Memnon, c. 57.

պումը, եւ որքան այլակերպ իրենց առաջ՝ տեսակցութենէն։ Հազիւ թէ Միհրդատ նշմարեց զՏիգրան, իսկոյն վար ցատկեց իր երիվարէն, գորովանօք գրկախառնուեցաւ անոր, ու իր փեսային այս արգահատելի վիճակէն հոգւով չափ յուզուած՝ հանեց տուաւ անոր իր իսկ սեպհական արքունի պատմուճանը, որ հագնի, եւ որուն չքեղութիւնն ու փառաւորութիւնը Տիգրանի սովորաբար կրած արքայական պատմուճանէն ոչինչ իւիք կը տարբերէր[1]։ Բաց աստի, յանձնեց անոր տրամադրութեան իր թիկնապահ գունդին հետ նաեւ բազմաթիւ սպաներ։ Այս ձեւ վարմունք ցոյց տալով բախտի ահաւոր հարուածներէն այսպէս հարուածարեկ եղած Արքայից արքային, յաջողեցաւ անոր բարոյալքուած ոգին ապագայի վառ յոյսերով վերակենդանացընել։

Որքան անհամեմատօրէն տարբեր էր Միհրդատի՝ Տիգրանի հանդէպ ցոյց տուած այս վեհանձն վերաբերմունքը՝ վերջնոյս առաջնոյն հանդէպ ցոյց տուածէն, երբ նա պարտուած ու առանց բանակի մնալով, փախստեայ Հայաստան՝ Տիգրանի քով ապաստանած էր։ Մենք սակայն առանց վարանելու կարող ենք ընդունիլ, որ լոկ քաղաքական նուրբ հաշիւներն էին որ թելադրեր եղան դաժան ու անագորոյն Միհրդատի — որ չէր սոսկացած բնաւ իր մայրն ու եղբայրը, իր երեք որդիներն ու երեք դուստրները բանտամահ սպաննել[2] — ներկայ պարագային մէջ զգօնու-

1 Memnon, c. 58.
2 Appianus, Mithr. c. 112.

թիւն եւ անշահախնդրութիւն ցոյց տալու։ Այս վայրկենին Տիգրան էր իր միմիակ փրկութիւնը, որուն օժանդակութեամբը միայն կը յուսար նա իր փառատենչիկ ծրագիրներն մերձաւոր ապագայի մը մէջ իրականացած տեսնել։ Խորագէտ Միհրդատ շատ կը կասկածէր, եւ այն շատ ալ իրաւամբ, որ այդպիսի գերագոյն աստիճանի փառքէ ու շուքէ այսպէս շարաշար խոնարհած բռնապետ մը կարող էր — երբ մանաւանդ նկարագրով ալ տկար մէկն ըլլար, ինչպիսի էր Տիգրան — զինագրութեան բոլոր տրամադրելի ոյժերը սպառելէ յետոյ՝ իր անձին եւս Հռոմայեցւոց ձեռք յանձնել զիջանիլ, միայն որպէսզի անոնց հետ խաղաղութիւն կնքէ։ Հետեւաբար, ծերունի արքային ամենամեծ արդիւնքն այն եղաւ, որ Տիգրանի կրած այս նախատական նուաստացումէն օգտուելով, գիտցաւ ճարտարօրէն անոր ամբարտաւանութիւնը շահագործել, ու անոր սրտին մէջ փոխվրէժի զգացումներ զարթուցանելով՝ անոր բարոյալքուած ոգին վերականգնել։

---

## ՀԱՏՈՒԱԾ Գ.

## ՅԵՏԻ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՏԱՐԻՆ

---

### Գլուխ Գ.

*Պատրաստութիւնք երկու թշնամի բանակներուն, եւ արշաւանք Լուկուղղոսի դէպի Հայկական բարձրա-գաւառ:*

*I.*

*Բանակցութիւնք Պարթեւաց հետ:*

Այսպէս ուրեմն Տիգրան իւր աներոջ այս սրտապնդիչ ու յուսապատար խօսքերէն այնքան կը խրախուսուի, որ, ի վերջոյ, կ'որոշէ Հռոմայեցւոց դէմ սկսած պատերազմը կրկին շարունակել: Առանց յապաղելու, երկու թագակիր զինակիցները իսկոյն կը սկսին պատրաստուիլ, ու Հռոմայեցւոց դէմ պաշտպանութեան միջոցներ ձեռք առնուլ: Այս առթիւ Տիգրան, որ իւր անձին դառն փորձովը զգացած էր վերջապէս Միհրդատի՝ Հռոմէական պատերազմներու մէջ ունեցած առաւելագոյն փորձառութիւնը, կը յանձնէ անոր, լիազօր իշխանութեամբ, զինուորական գործերու վերին վարչութիւնը: Միհրդատի կը յանձնարա-

րուի, Հետեւաբար, նոր բանակ մը կազմել, ու նոյնին գերագոյն հրամանատարութիւնն ստանձնել[1]։ Եւ ոչ այսչափ միայն, այլ եւ վերահաս ձմեռն եւս կ'օգտագործեն նորակազմ բանակը հռոմէական ձեւով մարզել տալով[2], ու զեն նորանոր զինակիցներ իրենց շուրջը համախմբելով։

Այս 68 տարուայն պատերազմին վրայ խօսող մեր հին աղբիւրներու շարքին նոր մը եւս այժմ կ'աւելնայ՝ Կասիոս Դիոն։ Անոր երկին մէկ մեծ մասը Քսիփիլինոսի քաղուածոյից մէջ հատուածաբար եղանակաւ միայն պահուած է, եւ այս պատճառաւ ալ պատերազմի առաջին տարուան մասին մեր գիտցածը շատ թերի է։ Այսպէս չէ սակայն պատերազմի երկրորդ տարուայն համար։ Հոս, Դիոն իւր պատմութիւնը գրեթէ այն տեղէն կը շարունակէ, ուր Մեմնոն — որ ցարդ մին էր մեր ամենագլխաւոր աղբիւրներէն — կը վերջացնէ, այս է՝ Պարթեւաց ղրկուած դեսպանութենէն։ Դիոն, յամենայն դէպս, իւր պատմութեան այս մասին մէջ օգտուած ըլլալու է Սալլուստիոսէ, ինչ որ արդէն բացայայտօրէն կը տեսնուի պատմագրիս հատակոտորներուն, ինչպէս նաեւ Պլուտարքոսի պատմութեան հետ անոր ունեցած բազմաթիւ նմանութիւններէն։ Եւ եթէ Պլուտարքոս ու Դիոն երբեմն իրարմէ կը շեղին, պատճառն է այն որ առաջինն ունեցած է իւր առջեւ ուրիշ աղբիւր մը եւս։

---

[1] Memnon, c. 58 եւ Appianus, Mithr. c. 87. Համմտ. Կասիոս Դիոն, գիրք ԼԵ. գլ. 1։

[2] Միհրդատի ծառայութեան մէջ գտնուող յոյն սպաներու եւ հռոմայեցի եկերու միջոցաւ։

Արդ, երկու դաշնակիցներու համար կարեւորագոյն խնդիր էր այժմ՝ գիտնալ Պարթեւներու՝ Հայոց այս վաղեմի թշնամիներուն, իրենց հանդէպ բռնելիք դիրքը։ Հարկ էր, ամէն գնով, զանոնք եւս իրենց կողմ շահիլ, եթէ ոչ ուղղակի զինակցութեամբ, գոնէ խիստ չէզոքութեան մը զանոնք պարտաւորելով, որպէս զի մի գուցէ Հռոմայեցւոց հետ ընդհարման մը միջոցին, պետութեան արեւելեան սահմաններն անոնց կողմէ սպառնակուին։ Այս նպատակաւ դեսպանութիւն մը դրկուեցաւ Պարթեւաց թագաւոր՝ Հրահատի, զայն Տիգրանի հետ հաշտեցընելու, եւ միանգամայն անոր զինակցութիւնն ալ ապահովելու ընդդէմ Հռոմայեցւոց։

Հրահատ որդին էր Սանատրուկի, որուն 70/69 (ողիմպիադի 177, 3) թուականին յաջորդելով, պայազատած էր հայրենի աթոռութիւնը։ Պարթեւ թագաւորին՝ որուն դրկուած էր դեսպանութիւնը, այս անուան մեր աղբիւրներէն միմիայն Մեմնոնի ու Փլեգոնի քով կը հանդիպինք, որ դեռ իսկ անոր «Աստուած» մականունը կու տայ. մինչդեռ Կասիոս Դիոն ու Սալլուստիոս աւորական ձեւով զայն պարզապէս Արշակ կ՚անուանեն[1]։

Պարթեւներու դրկուած այս դեսպանութիւնն եւս Միհրդատի ազդեցիկ խորհուրդներուն արդիւնքը պէտք է համարիլ։ Նա էր որ փաստագրօրէն չեշտած էր անոնց հետ հաշտութիւն ու

[1] Հմմտ. տա. այս՝ Մեմնոն, գլ. 58. Փլեգոն. հատուած. Դիոն, գիրք ԼԶ. գլ. 1 եւ Սալլուստիոս, Դ. հատուած 69։

զինակցութիւն կնքելու հռովմայական պաշտպանը, որ եւ յաջողեցաւ իւր կամքը պարտադրել երբեմնի այնքան սէգ ու ամբարտաւան Տիգրանի։ Այն ամէն երկիրները, զորս երբեմն Տիգրան կորզած էր պարթեւներէ, այսպէս Միջագետք, Ադիաբենէ եւ «մեծ հովիտները» — հաւանաբար Սարարանի[1] քով յիշատակուած ձորադաւառները — հարկ էր անպատճառ ետ դարձնել, եթէ լրջօրէն կ'ուզէր Տիգրան պարթեւներն իւր կողմ շահիլ ընդդէմ Հռոմայեցւոց[2]։ Այսպիսի ծանր պայմանադրութեան մը զՏիգրան յօժարեցընել հաւանեցընելը շատ ալ դիւրին գործ չէր, զոր սակայն Միհրդատի հանճարեղ ու գործնական միտքը կրցաւ յաջողութեամբ գլուխ հանել։

Մինչ այս մինչ այն, մեկնեցաւ վերջապէս դեսպանութիւնը, որուն յառաջապէս յանձնած էր Միհրդատ նամակ մը եւս առ Հրահատ, որուն մէջ նա պարթեւա-հայ զինակցութենէ մը պարթեւաց ձեռք բերելիք մեծամեծ շահերն ու առաւելութիւնները չեշտելէ ետք, կը ջանար համոզակեր խօսքերով համոզել Պարթեւը Տիգրանի հետ համաձայնիլ ու դաշնակցիլ ընդդէմ Լուկուլլոսի։ Իւր այս գրութենէն դրական արդիւնք մը կարող էր իրաւամբ ակնկալել Միհրդատ, վասն զի ինքն անձամբ շարադրած էր զայն, որ հայ ու պարթեւ արքունեաց միջեւ առաջիններէ ի վեր տիրող այս ներկայ ոչ բարեկամական ու ցուրտ յարաբերու-

[1] XI. 14. 15 (532).
[2] Մեմնոն, գլ. 58. Դիոն. գիրք ԼԵ. գլ. 1.

թեան ընտ. մասնակցութիւն ու կցորդութիւն ու-նեցած չէր։ Պերճախօս ու ճարտարարան խօսքերով՝ ջանահնար կ՚ըլլար հօն ծերունի Թագաւորը Հրահատը համոզելու որ զգուշանայ Լուկուլլոսի անյագ երկրակալութենէն, որուն ինք, Հրահատ ևս պիտի չուշանար դառն փորձն առնել, եթէ երբեք Հռոմայ յաղթական լեգէոնները անգամ մը յաջողէին պարթեւներու հարեւան այս երկրին վրայ ոտք կռուան մ՚ունենալ։ Այս իսկ պատճառաւ ահա պէտք էր Հրահատ այժմէն, եւ այն առանց ժամանակ կորսնցընելու, ներկայ նպաստաւոր վայրկեանը, ուր Հայաստան դեռ իսկ տակաւին դիմագրութեան բաւականաչափ ոյժ կը զգայ իւր մէջ, յօգուտ գործածելով, իրեն ու Տիգրանի հետ համագունդ Հռոմայեցւոց վրայ դրոհ տալ, որպէս զի այսու անոնց աշխարհակալութեան անյագ անենչին մի անգամ ընդ միշտ վերջ տրուի։

Որչափ որ ալ նամակիս պարունակութիւնը պատմագրին մօքին երեւակայութեան ծնունդն ըլլայ, այսու հանդերձ նա հաւատարմօրէն կը ցոլացընէ մեզ նոյն առեննուան երկու հարեւան ազգերու միջեւ տիրող քաղաքական աղերսն ու յարաբերութիւնքը։ Եւ արդէն այս ձեւով ու այսպիսի խմաստով կարող էր գրած ըլլալ Միհրդատ, եթէ կը յուսար պարթեւէ օժանդակութիւն առնել[1]։

Թէեւ շատ նպաստաւոր էր Հրահատի եղած առաջարկն, ու հրապուրիչ՝ ձեռք բերելիք շահը,

[1] Սալլուստիոս, Դ. հատուածոյ 69։

սակայն թարմ՝ էր տակաւին Պարթևաց յիշողութեան մէջ Հայոցմէ իրենց ցեղին եղած զրկանաց զատն յիշատակը, ու դեռ չէր ափիացած Տիգրանի՝ անոնց ազգային արժանապատուութեան տուած մեծ հարուածը։ Այս կրկնակ պատճառներուն համար մերժեց Հրահատ իւր թշնամւոյն բարեկամական ձեռք կարկառելով, իւր իրաւունքներուն տիրանալու մասին իրեն եղած առաջարկն, եւ նախընտրեց Լուկուլլոսի դեսպանութիւն ղրկելով՝ անոր իւր զինակցութիւնն առաջարկել[1]։ Հրահատի կողմէ ինքնաբերաբար եղած այս առաջարկին վրայ չափազանց ուրախացած՝ որոշեց Լուկուլլոս ինքն ևս պատգամաւորութիւն ղրկել անոր, ու Պարթևաց հետ բարեկամական դաշինք կնքելով՝ զանոնք խիստ չէզոքութիւն պահելու պարտաւորել ամեն պարագայի մէջ։ Իւր այս պահանջման ետևէն մեծ կշիռ ու բարոյական ազդեցութիւն տալու նպատակաւ, սկզբան անոր միմիայն իւր դաշնակիցներէն կազմուած պատգամաւորութիւն մը ղրկեց, որուն անկողմնակալ ու անշահախնդիր միջնորդութենէն շատ աւելի արդիւնք կարող էր Լուկուլլոս ակնկալել։ Արդարեւ ալ այս պատգամաւորութիւնը յաջողեցաւ Լուկուլլոսի ու Հրահատի միջեւ նախնական համաձայնութիւն մը գոյացընել, որուն համաձայն Պարթեւք կը պարտաւորէին պարթեւ զօրաբաժին մը Լուկուլլոսի տրամադրութեան յանձնել։

Երբ հռոմայեցի զօրավարը սակայն դաշնագրութիւնը ստորագրելու համար իւր բարեխոհ

[1] Plut., Luc. c. 30.

տեղակալը Աքսարիլիոս — առ Գիտնի Σηχίλιοςի այլափոխուած — Պարթեւաց արքային զոհեց, վերջինս սկսաւ խնդրոյն երկմտել, թէ Հռոմայեցի այս բարձրաստիճան սպան պարզապէս իբր լրտես է որ կուգայ պարթեւ զինուորական ոյժը լրտեսելու, եւ ոչ թէ իբր դեսպան, որով եւ սկսաւ այնուհետեւ կասկածով վերաբերուիլ Հռոմայեցւոց հանդէպ: Արիամանեան, մէկ կողմէ Հռոմայ սիրելին՝ թշնամի երկու դաշնակից արքաներու, եւ միւս կողմէ Հրահատի միջեւ գաղտնի բանակցութիւնք դեռ կը շարունակուէին: Երկու արքունեաց միջեւ բուռն թափով յառաջ տարւող հակահռոմէական այս բանակցութիւններէն անհնար էր թէ անտեղեակ մնացած ըլլար Լուկուլլոս: Հռոմայեցի արթնամիտ զօրավարը, որ ուշի ուշով կը հետեւէր երկու հարեւան ազգերու իրարու հետ վերջնականապէս հասկացողութեան գալու համար թափած ճիգերուն ու մեծամեծ գոհունակութեանց, բնական է, չէր կարող այնուհետեւ Հրահատի վրայ յոյս դնելով՝ անկէ ոեւէ զինուորական օժանդակութիւն ակնկալել: Մէկ խօսքով, Լուկուլլոսի ու Հրահատի միջեւ կայանալիք բարեկամական դաշնադրութեան յաջորդած էր երկակողմանի անվստահութիւն մը: Այս հետեւութեամբ Հրահատ, որ ամբողջ բանակցութեանց միջոցին երկդիմի դեր խաղացած էր, իր նախապէս տուած խոստման դրժելով՝ զլացաւ Լուկուլլոսի խոստացուած օժանդակ զօրագունդը հռոմէական բանակատեղին ղրկել. եւ ոչ այսչափ միայն, այլ եւ միտքը դրաւ երկու

հակամարտ կողմերու հանդէպ եւս չէզոք դիրք բռնել, ու անոնց ուժասպառ վիճակէն օգտուելով՝ իր պետութեան սահմանները ի վնաս անոնց ընդարձակել[1]։

Այսու, կը յուսամ, մի անգամ ընդ միշտ լուսաբանած ըլլալ, նախ՝ մեր առաջիկայ աղբիւրներուն իրարու հետ ունեցած անմիաբանութիւնը, եւ երկրորդ՝ այն տարօրինակ ընթացքը պարթեւ ինքնակալին, որ, ըստ Ապպիանոսի, Պլուտարքոսի ու Մեմնոնի, երկու կողմերու հետ եւս կը պայմանադրուի։ Նա, յամենայն դէպս, միտում ունէր բնաւ ընդունելու որ հետամուտ Հռոմայեցին ամենադոյզն դիտաւորութիւնն իսկ ունեցած ըլլայ այսպիսի անհաւատարմութեան կամ խոստմնազանցութեան մը համար Պարթեւաց դէմ պատերազմ բանալ ուզելու, եւ անդին երկու ահաւոր դաշնակիցներուն, իբր արհամարհելի քանակութիւն մը, բնաւ նկատի չառնելու։ Լուկուլլոս շատ ալ լաւ կը ճանչնար յամառ Պոնտացւոյն նկարագիրը, որ հանդարտ չէր կրնար կենալ, եւ եթէ անխոհեմութիւնն ունենար Լուկուլլոս արդեամբք Տիգրանի վրայ արշաւելու, ապահովաբար Միհրդատ, պատեհ առթէն օգտուելով, հռոմէական բանակը թիկունքէն անխնայ պիտի հարուածէր։ Տիգրանի ցարդ ունեցած կռուները քանի մը սահմանագաւառէ անդին չէր անցներ, մինչդեռ անոր գերիշխանութեան ներքեւ գտնուող ընդարձակածաւալ պետու-

[1] Հմմտ. այս գեղարժանութեանց մասին Դիոն, գիրք ԼԷ. 91—

Թեւան մը ներկայացուցած զինուորական ոյժը տակաւին շատ պատկառելի կը մնար Հռոմայեցւոց աչքին։ Հետեւաբար, յառաջ քան Հռոմայեցիք նոր ու երկարաձիգ պատերազմի մը ձեռնարկելը, պէտք էին անոնք նախապէս Հայաստանը զինաթափ ըրած ըլլալ՝ անոր զինուորական ոյժն ամբողջապէս խորտակելով։ Այս պարագան լաւ ըմբռնած ըլլալու էր նաեւ Լուկուլլոս, որ մեծ յուծելու իր գիտութիւնը — եթէ երբեք ունեցած էր նա այդպիսի միտք մը — պարզավարար յետաձգած ըլլալու էր զայն անորոշ ժամանակի մը, մինչեւ որ նա երկու դաշնակից արքաները վերջնականապէս պարտութեան մատնելով՝ Հայ բանակն ամբողջովին քայքայէր[1]։

Հնար էր, սակայն, առաջին Հայեցուածքով, այնպէս կարծել, որ Լուկուլլոս իր ձմրոցը պարթեւական սահմաններուն այնքան մօտ փոխադրելովը՝ մտադրութիւն ունեցած ըլլար Պարթեւաստան եւս արշաւելու։ Սակայն Լուկուլլոսի Կորդուքն իբր ձմրոց ընտրելուն գլխաւոր ազդակը պարզապէս նոյն թականն կարող էր եղած ըլլալ, եւ ոչ՝ քաղաքական. վասն զի այդ վայրը — ինչպէս վերեւ տեսած էինք — այն կողմերու ամենաՀարուստ ու ամենալից մէկ գաւառն ըլլալուն՝ դիւրաւ կարող էր Լուկուլլոս իր բանակը պարէնաւորել Հայաստանի խիստ ու երկար ձմրուան

1 Համեմ. նաեւ այս Պլուտարքոս Լուկ. գլ. 15, որ Մծբինի գրաւումն „հետոյ պարթեւական արշաւանքի մը պատրաստութիւններու վրայ կը խօսէ՝ նոյնպէս Eutropius, Brev. VI. c. 9.

ամբողջ անուղղութեանը. բաց աստի, այդ երկրին բնիկները, Կորդուքը, որուն մօտ Լուկուլլոսի յարած ու հիւրընկալ ասպնջականութիւն ցոյց տուեր էին անոր իբր իրենց բարեկամին ու ազատարարին:

Որչափ որ ալ Լուկուլլոսի՝ Հրահատի հետ կնքել փափագած բարեկամական դաշինքն եղծած լուծուած էր այլ եւս, սակայն եւ այնպէս նա հաստատապէս համոզուած էր, որ ոեւէ չարիք պիտի չպատճառէր Հռոմայեցւոց՝ Պարթեւաց կողմէ, եթէ նա իւր հայկական արշաւանքը կրկին սկսէր: Զատ խնդիր, եթէ Լուկուլլոս, ընդդէմ Հրահատի, յայտնապէս պատերազմի պատրաստուած ու իւր զօրաց ապստամբութենէն միայն խափանուած ըլլար անոր հետ զարնուելէ: Արդ, եթէ այսպիսի պարագաներու ներքեւ համարձակէր Լուկուլլոս ինքնակամ գիմագրաւ Հայաստան արշաւել երկրորդ անգամ, ապահովաբար, Հրահատ եւս պիտի գիտնար այս պատեհագին առթէն անմիջապէս օգտուելով՝ Հռոմէական յառաջխաղաց բանակին թիկունքը սպառնալեցընել:

Իսկ սակայն հոս այսպիսի խորհրդածութիւններու պատճառ բնա՛ւ չկա՛յ տեսնելը. վասն զի որ մէկ այդ կամ պետութեան երկրորդի մը դէմ պատերազմ հրատարակել պիտի ուզէր, որուն նախապէս օժանդակութեանը դիմած էր ընդդէմ երրորդի: Այսպիսի անհեթեթութիւն մը մենք չենք կարող վերագրել Հռոմայեցի զօրավարին, անանկ յետոյ անոր, պատերազմի առաջին տարիներուն մէջ ցոյց տուած կարողութեան ու հեռատեսութեան կարկառուն ապացոյցներէ,

եւ այն՝ բազմաթիւ պարագաներու մէջ։ Թէեւ մեր պատմագիրներէն Պլուտարքոս, Եւտրոպիոս եւ Ռուփոս, Լուկուլլոսի՝ Պարթեւաց դէմ պատերազմելու դիտաւորութեան մասին յիշատակութիւն կ'ընեն, սակայն, ընդհակառակը, Կասիոս Դիոն, Ապպիանոս ու Մեմնոն զայն բոլորովին կ'անգիտանան[1]։ Ռայնախ[2], Նիզէ[3], Գարագաշեան[4] եւ Դր. Աստուրեան[5] Պլուտարքոսի ընդարձակ նկարագրութենէն զգալիօրէն ազդուած կ'երեւին, մինչդեռ Մոմզէն[6] պարթեւական արշաւանքի մը մասին ոեւէ դիտաւորութիւն չի վերագրեր Լուկուլլոսի, այլ միայն իբր զրոյց մը զայն կը յիշատակէ, զոր անոր հակառակորդները բանակին մէջ տարածեր էին, որպէս զի զօրքն իրեն դէմ գրգռեն։

2.

*Հայերը զօրք կը գումարեն ու նոր բանակ մը կը սպառազինեն։*

Միհրդատի՝ պարթեւ արքային իր կողմ շահելու բոլոր ջանքերն ի զերեւ ելլելէ ետքը, երկու դաշնակիցք՝ այլ եւս արտաքին օժանդակու-

¹ Հմմտ. Plut., Luc. c. 30; Eutr., Brev. VI. c. 9; Sext. Rufus. c. 15; Dio XXXV. c. 3; Appianus. Mithr. c. 87; Memnon. c. 58.

² Ընդ. էջ 363։

³ Grundr. der röm. Geschichte³, S. 194, Հմմտ. էջ 217։

⁴ Քննական պատմ. Հայոց Բ. 148։

⁵ Քաղաքական յարաբերութիւններ ընդ մէջ Հայաստանի եւ Հռոմայ. Վիեննա, էջ 61։

⁶ Römische Geschichte, III. էջ 74.

թենէ յուսակտուր, կ՚որոշեն միահամուռ զօրաժողով ընել, եւ ի զէն հրաւիրել զինուորական ծառայութեան ենթակայ բոլոր իրենց հպատակները, ի պաշտպանութիւն հայրենատուր հայրենաւանդ հողին։ Թէեւ Ապպիանոս այս զօրաժողովը միմիայն Հայոց մէջ կը սահմանափակէ[1], (որոնք, բնականաբար, միւս հպատակ ազգերէ շատ աւելի սիրայօժար պէտք էին փութացած ըլլալ հայրենեաց կոչին, գիտնալով որ իրենց ընտանեաց ու ստացուածոց պաշտպանութեան համար էր այն պատերազմը, առաջնորդութեամբ իրենց բնիկ արքային, որուն անձին հանդէպ իրենց՝ հակառակութեամբ նուաճուած օտարազգեաց ու այլատոհմիկ ազգերու, առաւելագոյն հաւատարմութեան ու տիրասիրութեան զգացում իրենց սրտերուն մէջ պէտք էին ածել), սակայն Պլուտարքոսի[2] քով Վրաց ու Մարդացւոց եւս անուններուն յիշատակութենէն կ՚իմացուի, որ այս պատերազմին իրենց մասնակցութիւնը բերեր էին նմանապէս Հայաստանի նոյն ատենուան հարկատու եւ նիզակակից երկիրները։ Ասկէ սակայն հետեւցընել, թէ 68ի պատերազմն ու բնէն բոլոր արեւելեայց ընդդէմ Հռոմայ միահամուռ ու միացած ազգային ու կրօնական մէկ պատերազմն էր, սխալ է, ու այսպիսի անհիմն եզրակացութեան մը յանգելու եւ ընաւ պատճառ մը չենք տեսներ[3]։

---

1 Mithr. c. 87.

2 Plut., Luc. c. 31.

3 Հմմտ. առ. այս ի մասնաւորի Mommsen, Röm. Gesch. III, S. 72/73 եւ Reinach, S. 362.

Արդէն Հայագունդ բանակին զօրութիւնը — իբր 100.000 քան Աշպիանոսի[1] — բացէ ի բաց կը ջրէ ու կը տարամերժէ այդպիսի ձրի ու անհիմն ենթադրութիւն մը։ Եւ որքան նուաստ է այդ զաւմարը նոյն Հեղինակին նախորդ տարւոյն պատերազմին համար նշանակածէն, որ միջոցին, բաւ միագնելու ենք, որ Հայք ու իրենց Հարեւան դաշնակիցները պարզ պատերազմի էր որ կը մղէին, առանց մեւէ կրօնական կամ ազգային կնիք մը նոյնին դրոշմելու։ Հաւանաբար Հնար է այլ եւս գուշակել թէ որքան առաւել բազմաթիւ եղած պիտի ըլլար թիւը Հայ զօրաբանակներուն, եթէ բոլոր ասիական ժողովուրդները միահամուռ մասնակցած ըլլային այս պատերազմին։

Ասիական ժողովուրդներու վերագրուած կրօնական ու ազգային պատերազմի մը այս բաղոր ենթադրութիւնը ծնունդ առած է Կիկերոնի վասն Պոմպէի խօսած ճառին մէկ անցքէն[2], ուր, Հռոմայեցի Հռետորը, ինչպէս եւ այլուր, քաղաքական կացութիւնն ի նպաստ իւր արտատա-

---

1 Mithr. c. 87.

2 De imp. Cn. Pomp. c. 9 § 23: Cuius (= Տիգրանի) in regnum posteaquam L. Lucullus eum exercitu venit, plures etiam gentes contra imperatorem nostrum concitatae sunt. Erat enim metus iniectus iis nationibus quas numquam populus Romanus neque lacessandas bello neque temptandas putavit; erat etiam alia gravis atque vehemens opinio, quae animos gentium barbararum pervaserat, fani locupletissimi et religiosissimi diripiendi causa in eas oras nostrum esse exercitum adductum. Ita nationes multae atque magnae novo quodam terrore ac metu concitabantur.

նած ճառին ուղղութեան տառապացուցած կամ՝ բոլորովին չեղ ներկայացուցած է։ Այն ճառին ոգին ու անոր ամբողջ կապակցութիւնն, ըստ իս, — եթէ բացարձակապէս Կիկերոնի խօսքերուն կապուած մնանք — մէկ ենթադրութեան միայն հնարաւորութիւն կը թոյլատրէ, այսինքն թէ ճառախօսն այսու ընդհանրապէս հայկական պատերազմին սկզբնաւորութիւնը՝ ուստի եւ 69 թուականը նկատի առած է[1]։ Արդարեւ ալ մենք վերը տեսած էինք, որ Ասիոյ ժողովուրդներէն շատերը իրենց բանակներովը զօրավիգ եղած էին Հայոց, ուստի շատ կարելի է որ Կիկերոն ազգաւ ին պատերազմ մը տեսնուած ըլլայ։ Իսկ արդէն Կիկերոնի՝ դաւանանօրէն յարձակման ենթարկուած խեղճ Հայերն իրենց աստուածներուն համար պատերազմեցնել տալը ուրիշ նպատակի մը համար է.

[1] Վասն զի վերջինիս այն խօսքերն անընդմիջաբար կը հետեւին այն նախադասութեան, որ պարտուած Միհրդատի Տիգրանի կողմէ գտած ապաստանութիւնը կը նկարագրուի հետեւեալ տողերուն մէջ. Hunc in illo tempore et fuga Tigranes, rex Armenius, excepit diffidentemque rebus suis confirmavit et adflictum erexit perditumque recreavit. (Այս խօսքերն ինչպէս արդէն պայծառապէս կը պատկերացնեն Կիկերոնեան պատմագրութիւնը, եթէ մեր գրած ենք թէ որչափ իրականութեան մէջ, այդ նկարագրուածէն այլապէս անցք ուղղուած էր այն ապաստանութիւնը Հայաստանի մէջ։) — Իսկ թէ ինչպէս մեր պատմագրին գրուածին մէջ նոյն ին անժամանակ կը յաջորդէ. Noster autem exercitus tametsi (այսինքն. թէեւ այսպէս ազգեր Հռոմայ դէմ զէնք վերցուցին) urbem ex Tigranis regno ceperat ..., միջոցին մէջ անցքին եթէ իրապէս 68 թուականին կը վերաբերէր, այդ պարագային պէտք էր նաեւ այդ գրուածը կանխաւ յիշատակուած ըլլալ։

նա կը գիտէ այսու Լուկուլլոսը՝ որ առանց Հրամանի ու առանց պատճառի, լոկ աշխարհակալութեան տենչով խաղաղ ժողովուրդներու վրայ կը յարձակի, Պոմպէոսի հակառակելով, վերջնոյս բարեկամութիւնը ու անոր Լուկուլլոսի վրայ ունեցած առաւելութիւնը երեւան հանել:

Եթէ այս բոլոր առնական ժողովուրդներու մէջէն՝ որոնք «Միախուռն ու գունդագունդ, հեռաւոր ու մերձաւոր վայրերէ, Արգայից աշխարհին օգնութեան փութացեր էին. Արեւելքն ու իրենց առատաձեռն եղեռնագործ ու ամպարիշտ սատարականներու դէմ պաշտպաններու¹»: Միհրդատ յարձակողաց դրսերը միայն զատելով՝ զանոնք զինուորական կրթութեամբ հրահանգել տուած էր, — որովհետեւ փորձը ցոյց տուած էր, որ «աշուոր մարդակոյս բազմութիւններ միագունդ վարելը»՝ յաջողութեան յոյսերով ընդուն պատերազմի մը մէջ ամենի արգելք հանդիսացեր էին, քան եթէ օգուտ, ապա ուրեմն ինչ պատճառ ունէր Միհրդատ այս բոլոր արեւելեան ազգերէն ընդհանուր զօրաժողով ընել հրամայելու, քանի որ անոնց մեծագոյն մասը յետոյ անմիջապէս դարձեալ իրենց տեղերը պիտի արձակէր: Այսպիսի անխորհուրդ գործ չէ կարելի վերագրուիլ Միհրդատի նման հանճարեղ զինուորականի մը, որուն առաջին ու գլխաւոր հոգն էր, ամէն բանէ յառաջ փորձառութիւն՝ սակայն քաջամարտ բանակ մը կազմել, որ թեթեւաշարժ

¹ Mommsen, Römische Geschichte III, S. 72/73.

ըլլար այդ խոպան ու վայրենի լեռներու վրայ մղուելիք պատերազմներու մէջ, եւ երկրորդաբար՝ դիւրաւ ու ապահով կերպով կարելի ըլլար զայն պարենաւորել, պատերազմի միջոցին։ Բայց ասոր, ինչ շահ ունէին հեռաւոր երկիրներու բնակիչները պատերազմի մտնելու։ Տիգրանի մը սիրոյն, որուն՝ 25 ամեայ տիրապետութեան մը միջոցին, վարած անմիտ ու բռնապետական քաղաքականութիւնն անոնց արդար կասկածն ու անվստահութիւնը միայն գրգռելու նպաստած էր։ Նոյն իսկ պարթեւները, որոնք սահմանորդ էին Հայոց, եւ որոնք այնքան մօտ էին մարտավայրին, եթէ չկարողացան իրենց՝ Հայոց հանդէպ ունեցած ադգային հին ատելութեան յաղթելով՝ անոնց բարեկամական ձեռք կարկառել ու օգնել, հապա ինչպէս կ'ուզուի որ հեռաւոր ժողովուրդները յօժարած ուզած ըլլան թէ թիկունք ըլլալ իրենց համար բոլորովին օտարացեր ու հեռաւորակ Հայերու, ընդդէմ՝ նոյնքան եւ աւելի օտար Հռոմայեցւոց։

Արիացի այս ժողովուրդներու կրօնական միութեան խնդիրն ինքնին արդէն նորագոյն ժամանակի մէջ գիւտն է, որ թերեւս Իսլամի սուրբ պատերազմին շատ աւելի ճիշդ պատշաճէր, քան ոգւոյն այն ատենուան դարուն, որ իւրաքանչիւր գաւառ իւրայատուկ կրօնական միջավայր մ'ունէր. մինչդեռ յատուկ իմաստով բոլոր ասիական ազգերու սեպհական կենդրոնական սրբավայր մը, այնպէս ինչպէս կ'երեւակայէ Կիկերոն, ոչ մի կերպ գոյութիւն ունեցած էր երբեք։

Ցայս վայր բառածներէն ալ եւս յայտնապէս կը հետեւի, որ Հայք միայն իրենց սեպհական ուժովն եւ նախորդ տարւոյ իրենց դաշնակիցներուն ընձեռել կրցած օժանդակութեամբը կարող կ'ըլլան նոր բանակ մը եւս կազմել։ Եթէ սակայն յետ այսչափ բանաւոր պատճառաբանութեանց, դեռ իսկ գտնուին անձինք, որ յամառին հակառակ կարծեաց թէր եղել, թող այնպիսիները մեկնութիւն տան, թէ ինչպէս կարելի է տրամաբանօրէն մտածել որ Հայք, որոնք այնքան մեծ դիւրութեամբ կրցեր էին դեռ հերուն մարդակոյտ բազմութիւններէ կազմուած ահաւոր բանակներ համախումբ գումարել, իսկ հիմա, տարի մը յետոյ, Հայաստան աշխարհին իւր բնակիչներէն, յանկարծ, ա՛նքան մարդաթափուր եղած կը նուաղի, որ անոնք եւ ո՛չ իսկ պէտք եղած տարրական ուժը կարող կ'ըլլան գումարել, հարեւանց գոյութեանը ապահովցող յայտնի փաստի մը պահուն։ Մինչդեռ մենք, մանաւանդ թէ որոշակի գիտենք այլուստ, որ Միհրդատի կոչին ներկայացողներու թիւն ա՛նքան շատ կ'ըլլայ, որ նա կը ստիպուի անոնց մէջէն լաւագոյնները ու յարմարագոյնները ընտրանօք զատել հայ գրօշի ծառայութեան։ Հայոց այս ընդհանուր զօրաժողովին իրենց մասնակցութիւնը բերին յետոյ դեռ քանի մը դաշնակիցներ եւս։ Ահա այս ու այսպիսի հսկայ մարդկային զանգուածէն զօրընտիր ընելով կազմեց Միհրդատ փոքր, սակայն քաջակիրթ բանակ մը, որուն զօրաթիւը Ապպիանոս 70.000 հետեւակ եւ 35.000 ձիաւոր կը

նշանակէ[1]։ Իսկ տակայն պատմագրիս ցոյց տուած այդ թիւերը, թէեւ անոնք նախորդ տարուաններուն չհաւատարին, այսու հանդերձ զարմանալ չափազանց կը գտնեմ։ Եթէ անգամ մը եւս նկատողութեան առնունք երկրին աշխարհագրական դիրքն ու անոր ունեցած գերազանցօրէն լեռնային հանգամանքը, եւ միանգամայն, պատերազմի միջոցին, անոր պատճառած անյաղթելի դժուարութիւնքը, ի մասնաւորի օտարներու, որոնք լեռնաշխարհը բացարձակապէս չէին ճանչնար, այն ատեն միայն կ'ըմբռնենք, որ դեռ շատ աւելի փոքր բանակ մը կարող էր, ուրիշ աշխատանքով, հռոմէական փոքրաթիւ բանակը կասեցնել՝ անոր յառաջխաղացութեան առջեւ լեռնաշխարհին բոլոր անցքերը փակելով։

Առաջին իսկ հայեացքով ինծ շատ զարմանալի ու միանգամայն անըմբռնելի կը թուի Հայ ազգաց գունդերուն այսքան բազմապատկութիւնը, եւ այն՝ Հայաստանի նման համակ լեռնային ու անանցանելի երկրի մը վրայ, ուր՝ յոլովաձեւն հեծելազօրու ռազմական շարժումներուն համար անգամ, յարմար ու հարթայատակ գետիններ կը պակսին։ Եթէ այս տարուան մէջ տեղի ունեցած դէպքերու ընթացքին ուշի ուշով հետեւելու ըլլանք, պիտի տեսնենք որ Միհրդատի ռազմագիտական ծրագիրն եղած էր, ըստ կարելւոյն թշնամւոյն հետ չփում ունենալէ կամ անոր որոշիչ ճակատ տալէ խուսափելով՝ զայն, իւր արտա-

[1] Mithr. c. 87. εἰς ἑπτακισμυρίους πεζοὺς καὶ ἱππέας ἡμίσεας.

գոտի ձիաւոր գունդերուն միջոցաւ շարունակ վառանգաւոր գիրքեր հրատարակել, ու անոնց ի անդ զարնել փճացընել: Միհրդատի այս մարթանքն այնքան աւելի յոյս կը ներշնչէր յաջողութեան, որքան հռոմէական այրուձին, որ արդէն իսկ շատ ալ նկարագած ըլլալու էր, այս անծանօթ երկրին մէջ, իրեն բոլորովին օտար ու անսովոր պայմաններու ներքեւ գրեթէ այլ եւս անօգուտ ու անզօր էր հայ բանակին վրական ու մարդական քաջամարտիկ հեծելազօրքերուն հանդէպ, որոնք ինքնին արդէն լեռնորդեալք, լեռնագաւառի մը հանգամանաց վարժ էին, ու անոր բազմապիսի վտանգներուն քաջածանօթ:

Արդ, այս բանակը Միհրդատ, ճիշդ հռոմէական ոճով, բաժնեց ու դասաւորեց զանազան գումարտակներու եւ գունդերու, որոնց իւրաքանչիւրին մարզիչ կարգեց իր նախկին պոնտական զօրաբանակներուն վաստակաւոր զինուորները, պաշտօն տալով անոնց հայ զինուորները յար եւ նման հռոմէականին մարզել, ինչպէս որ նա եւս զինքը մարզել տուած էր երբեմն հռոմայեցի աշտանականներու[1]: Բաց աստի, ամբողջ ձմեռը շարունակաբար զէնքեր ու պատերազմական իրեղէններ կազմել ու պատրաստել տուաւ մեծ քանակութեամբ, նմանապէս յարմար դատած վայրերը մեծամեծ շտեմարաններ շինեց[2], ուր համ-

1 Փլէգոնի քաղ. FHG III, էջ 606 հայ զինուորներու ստացած այս հռոմէական մարզանքը սխալմամբ Տիգրանեանի ժամանակաշրջանին առթիւ նշանակուած է:

2 Plut. Luc. c. 31 եւ Appianus. Mithr. c. 87.

բարձել տալու մեծապատւակ պաշար ու ցորեններէն, որպէս զի զօրաց սնունդը բանակատեղին մօտերը գտնուելով՝ անոնց պարենաւորման գործը դիւրանայ. ու Հարկ չըլլայ զայն ալ լեռնավայրերու նեղ ու անկոխ արահետներու վրայով ու տաժանագոյն աշխատութեամբ՝ բանակին ետեւէն, ագին անդին փոխադրել: Այսպէս Հայք ծերունի Մխիթարի իմաստուն ու աչալուրջ վարչութեան ու առաջնորդութեան ներքեւ գիտցան այս անգամ՝ իրենց պարապոյ ժամերնին Հիանալիօրէն օգտագործել, ու լաւ կազմակերպուիլ: Իրենց զինուորական պատրաստութիւնը մեծ չափով արդէն աւարտած վերջացած էին, երբ Լուկուլլոս վճռեց իւր ձմերոցէն ելլելով նոր պատերազմին թատերավայրը Հայաստանի ներքնաշխարհը փոխադրել:

3.

Դժուարութիւնք Լուկուլլոսի, իւր անձին դէմ, ի Հռոմ, նիւթուած նենգութեանց երեսէն:

Այս նոր յարձակման պատրաստութեան Համար, ինչպէս նաեւ իւր բանակին անսպառցած շարքերը զօրացընելու դիտաւորութեամբ, Հրաման ղրկեց Լուկուլլոս իւր տեղակալին՝ Սօռնատիոսի, որուն, ինչպէս ծանօթ է, յանձնւած էր 6000 Հոգւով Պոնտոսը պաՀպանել, իւր զօրագունդովը շուտափոյթ ընդՀանուր բանակատեղին շտապել, եւ գլխաւոր բանակին զինուորական գործողութեանցը մասնակցիլ: Լու-

կուլըս կարող էր այսպիսի կարգադրութիւն մ'ընել, վասն զի նա բնականաբար վստահ էր, որ իրաց ներկայ վիճակին մէջ Հայք՝ իրենց ամբողջ մտադրութիւնը միմիայն Հայաստանի պաշտպանութեան վրայ կեդրոնացընել ստիպուած ըլլալով, երբեք պիտի չկարենային մտարերել Պոնտոսի վրայ եւս միանգամայն յարձակում մը գործել։ Սակայն ճիշդ նոյն միջոցներուն էր, որ Հռոմայ ժողովրդեան, ինչպէս նաեւ իւր բանակին մէջ գաղափարի այնպիսի յանկարծակի յեղաշրջում մը տեղի ունեցաւ, որ, ի վերջոյ, Լուկուլըսի բոլոր ձեռնարկքն ի գերեւ հանեց։

Երկար ատենէ ի վեր, Լուկուլըսի անձին դէմ, ի Հռոմ, սուր անդոհութիւն մը սկսած էր խմորիլ. ընդհանուր կասկած մը սկսած էր ծայր տալ անոր մասին, թէ նա իւր լիազօրուած հանգամանքէն կ'ուզէ օգտուիլ պարզապէս իւր փառասիրութեանը յագուրդ տալու, եւ ոչ թէ պետութեան ընդհանուր օգտին զայն ծառայեցընելու։ Այսպէս մենք տեսեր էինք, որ զօրավարին դէմ եղած գրգռութիւնք, հայկական արշաւանքին սկիզբներն արդէն այնպիսի համեմատութիւններու հասեր էին, որ կառավարութիւնն ու ծերակոյտը զլացեր էին տալ անոր՝ այդպիսի վտանգաւոր ձեռնարկի մը համար պահանջուած նոյն իսկ ամենատարրական ձեռնտուութիւնը. այնպէս որ Լուկուլըս սոսկ իւր անձնական միջոցներովը ստիպուած էր՝ հակառակ յայտնի իսկ կամաց իւր հայրենի կառավարութեան, առանձին հայկական արշաւանքին ծրագիրը յա-

բինել։ Բայց թէ իրերու այս տխուր վիճակին առաջին ու խնկական պատճառը ինքնին իսկ կառավարական ձեւին փոփոխութիւնն էր՝ այն յայտ իսկ է, վասն զի, ինչպէս վերեւ տեսեր էինք, Պոմպէոսի ու Կրասոսի Հիւպատոսութեանցին ազնուապետական փարչաձեւը տապալելով՝ ռամկավար կուսակցութիւնը պետութեան ղեկն իր ձեռքն առաւ։ Մինչ այս մինչ այն, Լուկուլլոսի դէմ գրգռիչ լեզուներն ոյժգին յառաջ տարին իրենց շահատակութիւնները, մինչեւ որ ընդհանուր ամբոխութիւնն իր գագաթնակէտը հասանելով, 69/68ի ձմեռը, ժողովուրդը Հրապարակաւ Լուկուլլոսի դէմ պոռթկաց։ Տիգրանակերտի առջեւ շահուած փայլուն յաղթանակը, որ Հռոմայեցւոց ազգային դիւրազգածութիւնն անչափս փայփայած էր, սակայն թեման այդ պոռթկումը քանի մը ամիսներ մնանալ առաւ թէեւ ժողովրդեան, սակայն երբ անտանելցաւ որ դեռ իսկ պատերազմը չէր վերջացած, այլ տակաւին տարի մը պէտք էր, առ նուազն, մինչեւ որ Լուկուլլոս Հռոմայեցւոց մահացու թշնամի Միհրդատն իր ձաղանքի կառքին ետեւէն ցուցադրէր ժողովրդեան, այն ատեն զինքը յայտնապէս մեղադրեցին իբր պատերազմը դիտմամբ ու աւելորդ երկարող, որպէս զի բանակին վերին հրամանատարութեան պաշտօնն երկար վարելով՝ աւելի եւս մեծ հարստութեան մը տիրանայ, ու թշնամիներէն ինկած հարուստ աւարին առատագոյն բաժինն իր անձին սեպհականել կարենայ[1]։ Ռամկավարնե-

[1] Կասիոս Դիոն, գիրք 35, գլ. 2։

րու համար, ի Հռոմ, արդէն իսկ ծանօթ իրողութիւն էր այն, որ Լուսինեան պարտուած թշնամւոյն վայրավարին ցրուած բանակին անդադար ու երագ երագ հետապնդելով չուզելով, իր ստացած փառայեղ յաղթութենէն չէր կրցած օգտուիլ, այլ ժամանակ տուած էր թշնամւոյն՝ զօրաժողով ընելով, նոր բանակ մը եւս կազմելու, որպէս զի այս պատրաստուելով հետեւեալ տարին եւս պատերազմը շարունակելու կարենայ: Ասոր վրայ ահա ժողովուրդը կը զայրանայ, ու կը պահանջէ Լուսինեանի պաշտօնանկ ըլլալը:

Միհրդատեան երկրորդ պատերազմին սկզբները էր, երբ Ասիա ու Կիլիկիա նահանգներուն վարչութիւնը յանձնուած էր Լուսինեանի, ցամաքի վրայ հրամանատարութեամբ: Այո՛, թէեւ քիչ մը տարօրինակ կը թուի երկու նահանգներու վրայ միանգամայն Լուսինեանի կուսակալ կարգուած ըլլալուն պարագան, սակայն պատճառ մը չկայ անոնք այս իրողութեան վրայ կասկածելու, նոյն իսկ եթէ այս պարագան իմ ցոյց տուած աղբիւրներուս մէջ որոշակի կերպով յիշատակուած չգտնուի: Պատմագիրները ամենք, ինչպէս Ապպիան եւ Վելլէյոս Պատերկուլոս կը վկայեն, թէ Լուսինեան Ասիա նահանգին վրայ փոխանակ բդեշխի կամ անթիպատ կարգուած էր, մինչդեռ սակայն Պլուտարքոս անոր՝ Կիլիկիոյ կուսակալութիւնը միայն կու տայ[1]: Բայց որովհետեւ Պլուտարքոսի տուած տեղեկութիւններուն մէջ ամե-

[1] Ապպիան. գլ. 37. Վելլէյոս. Բ. գլ. 33. Պլուտ. Լուկ. գլ. 6.

նագոյդն մանրամասնութիւնքն անգամ՝ ճշգիւ նշանակուած կը գտնենք, այս իսկ պատճառաւ պէտք է վստահօրէն ընդունիլ, որ անոր վկայութիւնքն ուղիղ են։ Ու երբ կը տեսնենք որ Լուկուլլոս՝ որուն ստորակարգեալ հրամանատարներն, ու զէնքի ընկերը՝ Կոտտա, Պոնտոսի մէջ պարսպապատ քաղաքներ ու բերդեր կը պաշարեն, իսկ ինքը 72/70 տարիներուն մէջ Ասիա նահանգին խաղաղ գործերը յաջողապէս կարգադրած ըլլալուն համար — ինչպէս Պլուտարքոսի ու Ապպիանոսի պատմութիւններէն կը լսենք[1] — նոյն նահանգին բնակիչներուն առ հասարակ սէրն ու երախտագիտութիւնը կը շահի, բնականաբար կը մտածենք այնուհետեւ ընդունիլ, որ նա իւր սեպհական նահանգին մէջ միայն կարող էր այդպիսի ընդարձակ իշխանութիւն մը բանեցնել, ու նահանգի մը ներքին գործերն իր ուղածին պէս անօրինել անվրդով։ Հետեւաբար, այս պարագան ինքնին բաւական է, կարծեմ, զմեզ համոզելու, որ Ասիա նահանգն եւս Լուկուլլոսի կուսակալութեան կամ՝ անթիպատոսութեան մասը կազմած ըլլալու էր անպատճառ։

Այս իրողութիւնն աւելի եւս կը հաստատուի Կասիոս Դիոնի մէկ վկայութեամբը[2]։ Պատմագրէս կը տեղեկանանք, որ Տիգրանակերտի ճակատամարտէն յետոյ, Հռոմայեցիք Ասիա նահանգին վարչութիւնը դարձեալ պրետորներու յանձնած կ'ըլլան, վասն զի Լուկուլլոսի արարք-

1 Luc. c. 20 եւ 23, Mithr. c. 83.

2 Դիոն 35, գլ. 2։

ներէն անգոհ եղած էին։ Նմանապէս Պլուտարքոս՝ Լուկուլլոսի իշխանութեանը սահմաններուն մէջ կը զետեղէ Կիլիկիա, Ասիա, Բիւթանիա, Պափլագոնիա, Գաղատիա նահանգները, ինչպէս նաեւ յետոյ Տիգրանէ յափշտակուած երկիրները։ Հետեւաբար շատ ալ հաւանական է, որ նա իր նախապէս ունեցած միայն Կիլիկիա նահանգին վրայ — զոր Պլուտարքոս հօս եւս նախ կը յիշատակէ — դեռ Ասիա նահանգը, ու թերեւս՝ Կոտտայի մեկնումէն յետոյ, Բիւթանիան եւս աւելցուցած ըլլայ. եւ որպէս զի իր միհրդատեան արշաւանքներուն կազմակերպութիւնն ու պատրաստութիւնքը մասամբ մը դիւրանայ, հաւանական է որ Հռոմայեցիք անոր իշխանութեան ենթարկած ըլլան յետոյ նաեւ բովանդակ հռոմէական փոքր Ասիան։

Արդ, Լուկուլլոսի ունեցած այսչափ ու այսպիսի ընդարձակ իշխանութիւնն այժմ՝ կարճեցնել կը ջանային Հռոմայեցիք, որոնք անոր յաջողութեանցը վրայ սկսեր էին արդէն խանդալ, ու միանգամայն դժգոհիլ պատերազմին այսքան երկարելուն։ Դժբախտաբար սակայն այս դէպքերն իրարու կը յաջորդէին այնպիսի մէկ պահուն, որ նա իր թշնամիներուն հաշիւը վերջնականապէս յարդարել կարենալու համար իր հրամանին ներքեւ գտնուող բովանդակ զինեալ ուժերուն համակեդրոնացման զգալապէս պէտք ունէր։ Ուստի եւ նախ Ասիա նահանգին վարչական գործերը պրետորի մը յանձնեցին. եւ երբ՝ Տիգրանակերտի պատերազմէն ետք, Լու-

կուլլա թոյլ տուաւ Տիգրանի ու Միհրդատի ինքնամիտութեան, եւ նոր զօրաբանակներ կազմելով՝ Հռոմայեցւոց դէմ սկսուած պատերազմը կրկին շարունակելու, այս դէպքին վրայ Հռոմայեցիք գերագրգռուած, Կիլիկիա նահանգին համար եւս ուրիշ կուսակալ մը կարգեցին՝ 68 տարւոյն հիւպատոսը — Մարկիոս Ռեքս — որ իւր պաշտօնական շրջանին լրանալէն յետոյ իւր նոր պաշտօնատեղին մեկնեցաւ, որովհետեւ մենք անոր 68ի ձախողանքէն յետոյ միայն, իբր անթիպատ, Կիլիկիա կը հանդիպինք[1]: Նա այս իբր փաստ կը ծառայէ մեզ Դիոնի սա տեղիքը[2] . . . τὸν ὕπατον αὐτῷ τὸν κατ᾽ ἐκεῖνον τὸν χρόνον ὄντα, διάδοχον ἔπεμψαν Այս խօսքն, ի հարկէ, նկատելով որ 68րդ տարւոյն մէջ կը գտնուինք, անհնար է՝ ընդհանուր հրամանատարութեան մէջ անոր յաջորդ. Ակիլիոս Գլաբրիոյի՝ 67ի հիւպատոսի անձին մերձեցընել: Իմ այս վարկածիս նեցուկ կ'ըլլայ նաեւ այն պարագան, որ Դիոն սոյն այս դէպքը յետոյ 14րդ ու 15րդ գլուխներուն մէջ եւս բացայայտ կերպով կը յիշատակէ: Արդ՝ ենթադրելով որ 2՝դ գլխուն մէջ յիշատակուած տեղեկութիւնը սխալ տեղ ինկած չէ, Դիոն երկու զանազան յաջորդներու մասին կարող էր խօսիլ, եւ հետեւաբար նա իւր առաջին տեղեկութեամբը կարող էր միմիայն Մարկիոս Ռեքսն ակնարկած ըլլալ, թէեւ այլուստ միեւնոյն պատճառները գոյութիւն ունե-

[1] Կասիոս Դիոն, գիրք 35, գլ. 15:

[2] Գիրք 35. գլ. 2:

բուած էին այն միջոցին, որ Լուկուլլոսի ընտիր ընտիր ծրագիրներուն անգամ՝ չէին խնայուած, այլ անոնք եւս իրր խարդախութիւն եւ կամ պարզապէս իրր բարուքանք ժողովրդեան աչքին ներկայացուցուած էին։ Լուկուլլոսի դէմ ծայր առուած այս անհաշտ ատելութեան ոգին բացայայտ կերպով շեշտուեցաւ, երկրորդաբար, Պոմպէոսի ու Կրասոսի հիւպատոսութեամբը։ Ասոնք իրենց իշխանութեան օրով, Սիլլասի հաստատած բոլոր կարգերն անխնայ ջնջելով, ազնուապետական փորձառեւն եւս յոգուտ եւ ի նպաստ ռամկավարականին շրջեցին։ Ռամկին՝ պետութեան ղեկն իր ձեռքն անցնելէն առաջին առաւօտներէն մին պէտք էր ըլլալ նաեւ Լուկուլլոս բնականաբար, որ իրր կարկառուն ու աչքառու մէկ դէմքը բարձրագոյն ազնուականութեան, եւ իրր ձեռնասուն մեծանուն Սիլլասի՝ ատելի եղած էր ռամկին։

Հասարակապետութեան մայրաքաղաքին մէջ նոյն միջոցներուն տիրող քաղաքական այս անհաստատ պայմանները բնականաբար իրենց հակազդեցութիւնքն սփռած ունենային նաեւ արեւելք՝ Հռոմէական բանակներուն վրայ, որոնք, ի հարկէ, Հռոմայեցի ժողովուրդէ կազմուած ըլլալով՝ անձամբ կերպով նաեւ պէտք էր կապուած ըլլային մայր երկրին, ու հոն տեղի ունեցող քաղաքական անցուդարձերով միանգամայն շահագրգռուած։ Արդարեւ ալ, երբ Հայրենիքէ հասած լուրերէն տեղեկացաւ բանակը, թէ Լուկուլլոսի դէմ, ի Հռոմ, ժողովրդական ցոյցեր ու

գերուն հեստութեան առաջքն առնուլ. այսքան արդէն թուլացած էր անոնց զինուորական կարգապահական ոգին՝ գրաւուած երկրի մը մէջ անոնց վարած անգործ ու զեղխ կենցաղի մը երեսէն։ Այսպէս ուրեմն Լուկուլլոս այդ 6000նոց գունդին ծառայութենէն եւս հրաժարելու ստիպուած՝ որոշեց, ի վերջոյ, իր տրամադրութեանը տակ գտնուող փոքրիկ բանակովը Հայկական արշաւանքներն ի գլուխ հանել վերջացընել։

Բայց, դժբախտաբար, պոնտական զօրաբաժնին ապստամբական այն շարժումը Պոնտոսի մէջ միայն ամփոփուած չմնաց, այլ շուտով տարածուեցաւ նաեւ Լուկուլլոսի զօրաբանակի շարքերուն մէջ, վարակելով բոլոր զինուորները։ Անոնք հազիւ թէ պոնտական զօրաբաժնի լեգէոնականներուն այս ապստամբութեան լուրն առին, իրենց ուրախութենէն սկսան խայտալ ու կայթել, եւ իրենց ապստամբ ընկերները գովաբանել։ Եւ որովհետեւ Տիգրանակերտի կողոպուտէն իրենց ձեռքն ինկած մեծագումար դրամներուն շնորհիւ, Կորդուաց ամենալից ու ամենաբեր անդաստաններուն[1] վրայ իրենց վարած զեղխ ու շռայլ կեանքը շատ աւելի հաճելի երեւցած էր իրենց, քան պատերազմի դաշտերուն վրայ իրենց սպասող տառապանքը, այս պատճառաւ իրենք եւս մերժեցին հնազանդիլ իրենց հրամանատարին, պահանջելով անկէ որ

1 Plut. Luc. c. 29. Համմ. նաեւ Xenophon. Anab. c. 1 § 8. ուր նա Կորդուաց երկրին առատ ու հարուստ պաշարներուն վրայ կը խօսէ։

միայն իրենց հանգիստը չվրդովել, այլ նաեւ զիրենք ազատ արձակել զինուորական ծառայութենէ։ Այս ալ կարծես բաւական չըլլար, Լուկուլլոսի քենայրը՝ Կլոդիոս անգամ, հետ ու ընդոստ զինուորներուն մէջ շարունակ գրգռութիւն սերմանելով՝ զանոնք յայտնապէս ապստամբութեան կը յորդորէր հրամանատարին դէմ։ Եւ նկատելով անոր մերձաւոր ազգականութիւնը Լուկուլլոսի հետ, ընական է ենթադրել, թէ որքան մեծ եղած ըլլալու էր այդ մեծ ռամկավարին ազդեցութիւնը բանակին վրայ։

Այսպէս ահա Լուկուլլոս իր երկարամեայ ու արդիւնալից աշխատութեանց վերջնական արդիւնքը տակաւին չքաղած, իր դէմ ցցուած տեսաւ իր գունդերուն հեստութիւնն ու ընդոստութիւնը, եւ այսու միանգամայն իր նախապէս շահած բոլոր փայլուն յաջողութեանցն ապառնացող յայտնի վտանգը։ Իր աննկուն կորովին ու իր ազդեցիկ անձնաւորութեանը շնորհիւ կրցաւ Լուկուլլոս անգամ մը եւս, գէթ այն լեգէոնները, զորս նա Տիգրանի դէմ ճակատեցուցած էր, զգաստացընելով՝ շահիլ զանոնք նոր արշաւանքի մը համար եւս, որ թերեւս իր ահաւոր թշնամիներուն դիմադրական այս վերջին ոյժն ի սպառ խորտակէր։ Գուցէ թէ ինքն ալ կռահած ըլլալու էր այն սոսկալի վտանգը, որ այդպիսի յանդուգն որոշման մը գործադրութիւնը կարող էր սպառնալ իր բանակին։ Գիտէր նա միանգամայն թէ իր տրամադրութեան տակ առձեռն գտնուող քանի մը վաշտերով, —

որոնց ուղղամտութեան վրայ ի հարկէ չէր կարող այլ եւս վստահիլ, — ընաւ ամենեւին խոհեմութիւն չէր դիմագրաւ դիմել պատերազմի մը արշաւիրքներուն՝ անծանօթ, համակ լեռնային ու անհիւրընկալ երկրի մը մէջ, որուն ի բնէ քաջ ու ազատասէր բնակիչները բնականաբար պիտի դիմադրէին մինչեւ վերջին կաթիլն իրենց արեան, որպէս զի իրենց հայրենական հողն օտար ոտնձգութեան մը դէմ՝ պաշտպանեն։ Այս բոլոր վտանգներն աչքի առջեւ ունենալով հանդերձ, Լուկուլլոս սերտագոյնս վստահացած իր բարեգուշակ աստղին, ինչպէս երբեմն իր քաջանուն վարպետը, եւ միմիայն իր անպարտելի համարուած քաջարութեանն ապաւինած, որ ոչ մէկ դժուարութենէ գիտէր վհերել, կազմեց պատրաստեց իր բանակը. Կորդուաց ձմերոցէն նոր յարձակողականի մը սկսելու։

Մինչ այս մինչ այն, ամառնամէջն արդէն իսկ յառաջացած էր[1]։ Ասկէ հեշտ է գուշակել թէ որքան թանկագին ժամեր կորսնցուցած էր Լուկուլլոս իր զօրաց այս ըմբոստութեան երեսէն։ Ասոր վրայ աւելցընենք նաեւ Հայաստանի գաւառներուն՝ բարձրագոյն երկիրներու յատուկ, ցուրտ ու խիստ կլիման, այնպէս որ այս պատճառաւ ալ նա զօրախաղացքը՝ հակառակ իսկ իր կամաց, ստիպուած էր յապաղել ու երկարաձգել։ Վասն զի շատ լաւ գիտէր Լուկուլ-

1 Plut. Luc. c. 31. θέρους ἀκμάζοντος և Cassius Dio XXXV. c. 4. μεσοῦντος ἤδη τοῦ θέρους; Նոյն միջոցին արդէն Յուլիսի մէջերն էր։

լոս, որ հոն վերը տարերու վրայ, Հայկական բարձրաւանդակին ձմեռը շատ աւելի կանուխ կը սկսի ու շատ աւելի խստաշունչ կ'ըլլայ, քան ուրիշ ոեւէ մէկ կողմը Փոքր Ասիոյ։

5.

*Լուկուլլոսի արշաւախումբը կը մտնէ Հայաստանի բարձրագաւառը:*

68ի Հայկական այս երկրորդ արշաւանքին մասին խօսող միմիայն երկու անհրաժեշտ աղբիւր ունինք առջեւնիս, որոնք ուղղակի Սալլուստիոսէ քաղուած են իրենց տեղեկութիւնները. ասոնք են նախ՝ Պլուտարքոս, որ հոս ևս՝ ինչպէս միշտ, իրեն առանձնայատուկ ճշգրտութեամբն իր առջեւի աղբիւրներէն նոյնութեամբ կ'ընդօրինակէ. եւ երկրորդ՝ Կասիոս Դիոն, որ Հայկական արշաւանքներուն ամբողջական պատմութիւնը մէկ գլխոյ մէջ ամփոփած կը ներկայացնէ։ Այս երկուքին վրայ կարող ենք այժմ նաեւ աւելցնել երրորդ մը — Ապպիանոսը, որուն՝ ինչպէս նախորդ, նմանապէս այս արշաւանքին մասին տուած մի քանի տեղեկութիւններն այնքան խառնակ, այնքան վարկպարագի են, որ անկարելի է անոնց միջոցաւ միայն, — առանց Պլուտարքոսի օգնութեան, — դէպքերու ընթացքին մասին յստակ պատկեր մ'ունենալ։ Այս պատճառաւ մենք դարձեալ Պլուտարքոսի պատմութեանը վրայ ստիպուած ենք հիմնուիլ, առանց սակայն ի սպառ զանց առնելու յիշատակել նաեւ

միւս երկուքին տուած տեղեկութիւնները, զորս պիտի գտնուորենք իրենց պատշաճ տեղերը։ Սիմէոն անգամ մ'իր պատմութեանը մէջ նկարագրած ըլլալ կը թուի Լուկուլլոսի այս երկրորդ արշաւանքին ի Հայաստան, ինչպէս Պլուտարքոսի[1] ալ մէկ վկայութենէն φησὶ δὲ ὁ Λιούιος կ'իմացուի, զոր կու տայ նա Արածանւոյ քով մղուած ճակատամարտին նկարագրութենէն յետոյ. սակայն դժբախտաբար այս մասին ոչ մէկ խօսք աւանդուած է մեզ անոր պատմութեան ընդօրինակողներէն։ Այս պատճառաւ ալ, ուսումնասիրութեանս ներկայ շրջանին քննութեանը համար մեր աղբիւրներուն մեզ մատակարարած նիւթը շատ չնչին է եւ միանգամայն անբաւական, իրաց վիճակին վրայ յստակ գաղափար մը կազմելու։ Այս շրջանին պատմութեան մասին մեր բոլոր գիտցածները առաւելապէս կարծիքներու կամ ենթադրութեանց վրայ հիմնուած են, քան հաստատուն կամ ճշմարտապատում տեղեկութեանց վրայ։

Արդ ուրեմն, երբ Լուկուլլոս իր գունդերը համախմբեց Հայկական արշաւանքները վերջացնելու, անոնք բանակած էին տարբեր բարձրաբերձ լեռնագօտւոյն հարաւակողմը, եւ մեծ մասամբ Հռոմայեցւոց բարեկամ ու զինակից Կորդուաց երկրին սահմաններուն մէջ, որուն առատ մթերքը հռովմէական բանակին ձմեռուան ապրուստին գործածուած էր։ Հնար է, հետեւաբար,

[1] Luc. c. 31.

տանց վարանելու ընդունիլ, որ Լուկուլլոս եթէ ոչ բոլոր զինուորները՝ այլ գոնէ անոնց մեծագոյն մասը այս երկրին մէջ խմբած ըլլալու էր, ինչպէս բացորոշ կը պատմէ Պլուտարքոս[1], երբ նա Հռոմէական բանակը Կորդուաց երկրէն սկսելով դէպի Հայաստան յառաջ կը խաղացընէ։

Լուկուլլոս ուրեմն իւր ձմերոցը հաստատած կընար ըլլալ աշխարհագրաբար ձախակողման կամ՝ արեւելեան եզերքը Տիգրիսի, որ այդ կողման բոլոր աղբերակներու, ինչպէս նաեւ Վանայ լճին տարահարթէն դէպի հարաւ հոսող գետակներու ջուրերուն խառնուելով՝ հարաւ-արեւելեան ուղղութեամբ իւր ընթացքը կը շարունակէ, եւ Խահման-չայի՝ Քսենոփոնի Կենտրիտեսի, ուղղակի հարաւակողմը. վասն զի այս գիծը Կորդուաց երկրին կոխիղն էր[2]։ Անհնար չէ սակայն նմանապէս ենթադրել, որ քանի մը վաշտ զինուոր ալ Տիգրիսի աջակողման եզերքը ձմերած ըլլայ. սակայն, բաւ իս, դժուար է զայս հաստատել կարենալը, նկատի առնլով նախ՝ գետին ունեցած արընթաց հոսանքը, որ անանցանելի կ'ընէր զայն, եւ երկրորդ՝ այդպիսի փոքրաթիւ ջոկատի մը ամէն վայրկեան թշնամի յարձակման մը ենթարկուելու հաւանականութիւնը Մծբինի հայ բերդապահ գունդէն, — վասն զի քաղաքը տակաւին Հայոց ձեռքն էր, — եւ մինչեւ որ կենդրոնական բանակը դժուարանցանելի գետէն անցնելով օգնութիւն հասցընէր ա-

[1] Luc. c. 30.

[2] Kiepert, Atl. antiqu., Tab. IV.

նոնց, հայ պահակազօրը հռոմայեցի ջոկատը բնաջինջ ըրած կ'ըլլար արդէն։ Այս իսկ միայն կը հաւանեցընէ զիս տարամերժելու հռոմէական ձեռագրներուն նաեւ Տիգրիսի աջակողման եզերքն տարածուած ըլլալու ենթադրութիւնը։

Կորդուաց երկրէն զանազան ուղղութեամբ Հայաստանի ներքնաշխարհն առաջնորդող երեք ճամբայ ունէին Հռոմայեցիք իրենց տրամադրութեան ներքեւ։ Առաջինը՝ Դերջինկի կիրճէն անցնող ճամբան է, որ Տիգրան գործածած էր, երբ պաշարուած Տիգրանակերտի պաշտպանողաց օգնութեան կը փութար. երկրորդ ճամբան Բաղէշի (Բիթլիս) կիրճին մէջէն կ'անցնի, իսկ երրորդը՝ Վանայ լիճին շրջանն ընելով մինչեւ Բայազիտի դաշտավայրինը կ'երկարի։ Արդ, ինչպէս քիչ յետոյ պիտի տեսնենք, մենք ստիպուած ենք հոս այս երրորդ ճանապարհը նկատողութեան չառնել, վասն զի Պլուտարքոսի տուած վկայութիւններէն ոչ մէկն անոր կը պատշաճի։ Հետեւաբար մեզ կը մնայ միայն Բաղէշի եւ Դերջինկի կիրճերուն վրայով անցնող ճամբաները հոս քննութեան առնել։

Կարբէ[1] իւր ուսումնասիրութեան մէջ այս երկու կիրճերուն հայող բոլոր պէտք եղած ծանօթութիւնները ժողված՝ ի մի ամփոփած է. Նմանապէս Հայաստանի աշխարհագրութեան ու բնութեան վրայ բաւական կոկիկ ու ամփոփ տեղեկութիւններ տուած է։ Իւր երկին 32րդ էջին

[1] Der Marsch der Zehntausend (Հոր. Թ., էջ 401 ծնթ.)։

վրայ, այն վերջինչեալ երկու կիրճերուն մասին հետեւեալը կը կարդանք.

«Բաղէշ-Սղերդ գծին վրայ խօսող երկու ուղեգրութիւն ունինք մեր առջեւ, իրարու ներհակ ուղղութեամբ ուղեւորող ճամբորդներէ գրուած։

Բաղէշէ՝ համանուն գաւառի մը լայնանիստ, բարեբեր եւ 1550 մետր բարձրութեամբ կիրճի մը վրայ զետեղուած այս քաղաքէն Շիլ, 1836ին, մեկնեցաւ, գետն ի վար ուղղութեամբ, դէպի Սղերդ[1]։ Գետը մանուածապատ շրջաններով բազմաթիւ կիրճերէ կը սահի կ'անցնի։ Անոր բարձրագիր ափերէն անցնող ճամբաները շատ վտանգաւոր են կողմնակի գահավիժող անդնդախոր վիհերու պատճառով, համակ ժայռի ստուար հատուածներ, որոնք, շատ տեղեր, հազիւ թէ ձիու մը քայլափոխին համար պէտք եղած լայնութիւնն ունին։ Այսօր սակայն ճամբուն այս դժուարութիւնքը նուազած են բաւ մասին, մարդկային ձեռարուեստի զանազան կերտուածներով. այսպէս մենք հոն ձգուած կը տեսնենք 20ի չափ քարաշէն կամուրջներ, որոնք թոյլ կուտան գետեզրին յարմարագոյն մէկ կողմը օգտագործել. դարձեալ հոն կը հանդիպինք իբր 20' երկայնութեամբ փապուղւոյ մը, որ ճամբուն անցքը խափանող հսկայ ժայռի մը մէջէն փորուած է եւն։

Մեր միւս տեղեկատուն[2] եւս Բաղէշէ Սղերդ

[1] Ritter: Erdkunde IX, S. 1006 ff.

[2] Müller-Simonis: Du Caucase au golfe

տանող այս ճամբուն յարուցած աՀաւոր դժուարութիւնները զանց չ'առնուր մանաւորապէս շեշտել, որ իրեն 2 օր' մերձաւորապէս 23 ժամ արժած էր ձիու վրայ։ Շիլ սակայն դեռ աւելի յառաջ կ'երթայ, ու կը պատմէ թէ ինչպէս իր ուղեւորութեան միջոցին, ամբան, իր կարաւանին Հեծանելի ձիերէն երկուքը, ու գրաստներէն չորսը սատկեր էին այդ ճամբուն անՀարթութեան երեսէն ։

Ներջիկկիի կիրճին վրայով գծուած ճամբան ընդՀակառակն "ի սկզբան (այսինքն՝ Նմանապէս Բոհտան-չայէ սկսելով) մեղմաւէտ Հարթագաւառէ մը կ'անցնի։ Այս ճամբուն դժուարութիւնը զգալի կ'ըլլայ առաջին անգամ երբ Ներջիկկիի մօտենանք. այնպէս որ Հոս լեռնուղին շատ աւելի կարճ է, քան Բաղէշի ճանապարհին վրայ։ Ներջիկկիէ անդին սակայն ճամբան անտափոր կերպով կը վատթարանայ։ Բրանտ, այս կիրճէն, որուն բարձրութիւնը 2050 մեթրի կը Հասնի[1], անցնելով, իր վայրէջքը (որ բնականաբար վերելք էր Լուկուլլոսի Համար) Հետեւեալ կերպով կը նկարագրէ[2]. "Վայրէջքի միջոցին աՀաւոր դարաւանդներ գրեթէ ուղղաձիգ դիրքով դարաՀոս դէպի վար կը գաՀավիժին, ուր մեր ձիերը 1000'է աւելի դժուարանցք ու [illegible] ժայռերու վրայ շատ անգամ [illegible]։ Հետե-

Persique à travers l'Arménie, le Kurdestan et la Mesopotamie, Washington 1892.

1 H Kiepert: Nouvelle carte générale.

2 Ritter: X, 694.

ւակագնաց ուղեւորներու. Համար եւս վտանգներով լի են այս վախուտ վայրերը, որոնց ստորոտէն մռնչելով կը սուրայ խորաջուր հեղեղը: Լեռն ի վայր տանող արահետն այնքան նեղ էր, որ երկու ամբողջ ժամ՝ լեռնագնաց ըլլալէ յետոյ, հազիւ թէ՝ հորիզոնական անջրպետով, քառորդ ժամու ճամբայ կրցեր էինք յառաջանալ»: Բրանտ կը հաւաստէ թէ այս ճամբան՝ իր կեանքին մէջ ըրածներուն մէջէն ամենավտանգաւորն եղած էր: Հոս այս դիրքերուն վրայէն չուել խիզախող զօրասիւն մը շատ դիւրաւ կարելի էր քիչ մարդով բնաջինջ ընել: Նոյնը կարող ենք մտածել Քաղէշի ճանապարհին համար եւս:

Այսչափ կարծէք մեր վերի երկու կիրճերուն նկարագրութեանը մասին: Ներջիկիի կիրճի մասին Բելքի քով եւս նկարագրութեան մը կը հանդիպինք, ուր սակայն ճանապարհի անհարթութիւնք շատ աւելի նուազ ցոյց կը տրուին: Բելքի ըրած ճամբան Բրանտինէն այնու միայն կը տարբերի, որ նա հակառակ ուղղութեամբ կտրած անցած էր զայն, ինչպէս Լուկուլլոս եւս ստիպուած էր զայն ընել: Համաձայն իր նկարագրութեան[1], Ներջիկիէ անդին երկու տարբեր ճամբաներ կը բացուին դէպի Մուրադի դաշտը: Մին կ'երկարի Անդոկ լերան[2] հիւսիսային զառիթափերուն երկայնութեանը եւ Կուրտիգ-դաղի

1 Zeitschrift für Ethnologie, S. 255.

2 Անդոկ-դաղ նշանակուած է Հ. Կիբերթի եւ Լինչի քարտէսներուն մէջ:

վրայով գրեթէ մինչեւ Մուշ. իսկ միւս երկար շրջան մը գծելով Խուլփ-սուի ձորի մէջէն կը բարձրանայ մինչեւ Չէն գիւղը, եւ անկէ կամ Նմանապէս Կուրտիկ-դաղի, եւ կամ Կողմի-դաղի վրայով կ'իջնէ Մշոյ դաշտը։ Բոլոր այս երկրորդ ճամբէն կը քալէ, զոր «բաւ բաւականին տա-նելի» կը գտնէ, որ միջոցին նա «արագաշաւ լեռ-նագնաց երիվարն անգամ անցնիլ կը սոսկայ»։ Բայց աւաղ, Չէն գիւղին քով գտնուող Խուլփ-սուի ակնաղբիւրն երթալու համար ստիպուած կ'ըլլայ 750 մետր բարձրութեամբ դժուարա-անց լեռ մը եւս բարձրանալ։ Գետն ի վեր ուղ-ղութեամբ դէպի Չէն տանող կողմնակի բացուած ճամբայ մըն ալ կայ հոն, որուն հետեւելով խնայուած կ'ըլլայ երկու ժամ եւ յոգնեցուցիչ ելեւէջքն այդ սեպ լերան։ Այս ճամբան սա-կայն՝ գետանկողնոյն մէջի կարկառակոյտ ժայ-ռերու պատճառաւ անգործածելի կը մնայ ձիա-ւորներու համար, եւ միայն հետեւակագնացնե-րու մատչելի։ Մինչդեռ ընդհակառակն լեռնու-ղին, որ 3 քիլոմետր դէպ արեւելք գիւղին եր-կայնութեամբ կ'երկարի, թէեւ ան ալ ելեւէջ-քէ բոլորովին զերծ չէ, սակայն շատ աւելի հեշտ ըլլալու է քան Բելքի զարկած ճամբան։

Չէնէ անդին երեք տարբեր ճամբաներ կը բացուին մեր առջեւ, որոնց երեքն ալ Մշոյ դաշ-տը կը հանդիպին. մին արեւմտեան ճամբան է, որ թէեւ մէկալներէն երկարագոյն է, սակայն տափ փոխարէն ամենահեշտը, որ կը տանի Կող-մի-դաղի տարբին կողերէն, — եւ այս է այսօր-

ւան ամենէն աւելի գործածական եղողը, — միւսը՝ արեւելեանն է, իսկ երրորդը՝ միջինը։ Ասոնց մէջէն միայն արեւելեանն է որ Կուրտիգ-դաղի վրայով չիտակ Մուշ կ'առաջնորդէ, մինչդեռ միջինը Կարա-սուի՝ Մուրադ-չայ գետախառնունքէն 12—15 քիլոմեդր վեր դաշտ կը հանի։ Արեւմտեանն իսկոյն Մուրադ-սու կը հանէ, Կարա-սուի գետախառնունքէն վար։ Ներջիկիէ մինչեւ Մշոյ դաշտը՝ Բէլքի վկայութեամբ համաձայն, երկու օրուան ճանապարհ է։

Ներջիկիի վրայով անցնող ճամբան ուրեմն այնքան ալ չափազանց դէշ չի ներկայանար, ինչպէս գուցէ պիտի կարծուէր, եթէ երբեք այդ ճամբուն նկատմամբ մեր ունեցած բոլոր ծանօթութիւններուն միակ վստահելի աղբիւրը՝ Բրանտի տուած տեղեկութիւններն եղած ըլլային։

Հարց է այժմ, թէ Լուկուլլոս որ ճամբան կրնար բռնած ըլլալ իր բանակին համար՝ Բաղէշի վրայով անցնողը թէ Ներջիկիինը։ Իմ կարծիքովս շատ պարզ է այս հարցման պատասխանը։ Լուկուլլոս, ինչպէս երբեմն նաեւ Քսենոփոնի հրամանին տակ չուող Տասն Հազարը, կարող էր միայն եւ միայն Ներջիկիի կիրճին վրայով չուած ըլլալ[1]։

---

[1] Իմ այս վարկածիս մէջ զիս առաւել եւս կը հաստատէ Լեման-Հաուպտի այս խնդրոյն նկատմամբ տուած մէկ վճիռը։ Անուանի հնախօս-պատմաբանն իր Հայաստան վերջին ուղեւորութեանը միջոցին Բաղէշի-կիրճին ճամբով անցնելով, անկարելի կը գտնէ զօրաբանակի մը համար այն ճամբով յառաջանալ։ Այս ճամբուն հետ կապուած դժուարութիւններն այնքան ակնյայտ նկատի առնուած են, որ ու-

Այս ճամբուն ընձեռած առաւելութիւնները Բաղէշի ճամբուն ունեցածներուն համեմատութեամբ այնքան շատ են, որ, իմ կարծիքովս, վերջինիս մասին հազ այլ եւս խնդիր չի կրնար ըլլուիլ: Նախ որ, ինչպէս ըսած էինք, տարընտուղին շատ աւելի կարճ է քան միւսինը, որ 80—90 քիլոմեթր է միայն լերան ճամբայ. եւ եթէ այդ ճամբան շատ հեշտ չէ, գոնէ ապահովաբար շատ տաժանելի ալ չէ: Այս համգամանքն ինքնին արդէն պէտք էր բաւական համարուիլ, որ Լուկուլլոս նախընտրէր այս ճանապարհը, որ թէեւ երկրորդէն շատ աւելի երկար էր, սակայն ատոր փոխարէն ի սկզբան գեղածիծաղ մարգերէ ու մրգաւէտ դաշտերէ կ'անցնէր:

Յետոյ կար նաեւ մտադրութեան առնուելու արժանի ուրիշ պարագայ մը եւս, որ Ներջիկին ճանապարհը անհամեմատօրէն նախամեծար ընէր կու տար Լուկուլլոսի: Բաղէշի կիրճին վրայով անցնող ճամբան միակ է, մինչդեռ անդին Ներջիկի վրայով երկու ճամբաներ կը բացուին, եթէ միայն Լուկուլլոս ուղղակի գետին քովէն ու գետամիջի կրկնակ ճամբաներէն օգտուիլ ուզէր. մանաւանդ թէ Շէնէ անդին դեռ երրորդ մըն ալ իւր տրամադրութեան տակ կ'ու-

---

ղեգրական նորագոյն մատենագրութեան մէջ՝ տասր համգամանաց մասին, շատ մը սխալ գաղափարներ մուտ գործած են: Ցես այս մասին անոր ուղեգրական գեղեցիկ ուսումնասիրութիւնը Armenien einst und jetzt. Բ. Հատ., էջ 327—332:

նենար. այնպէս որ լեռնուղւոյն վրայէն կարող էր նա, առանց շատ մեծ դժուարութեան, երկու կամ երեք զօրասիւնով չուել։ Եւ եթէ լսած ենք թէ այդ ճամբու վրայէն հազիւ թէ կարենան երկու կամ առ առաւելն երեք անձ իրարու առընթեր քալել[1], այն ատեն միայն յստակ կ'ըմբռնենք, թէ ինչ շահ ունէր Լուկուլլոս իր բանակն երկուքի բաժնելով։ Դիւրին պիտի ըլլար իրեն դարձեալ Աշոց դաշտը զինուոր փոխադրելու գործողութիւնը, եթէ անգամ մը այդ երեք կիրճերն իր գրաւման տակ ունենար։ Վստահ զի եթէ յաջողէին Հայք անոնցմէ մին փակել, կարող պիտի ըլլար Լուկուլլոս զայն երկրորդին կամ թէ մնացեալ երկու կիրճերու միջոցաւ դարձեալ բանալու ստիպել թշնամին։ Իսկ եթէ, ընդհակառակն, միակ ճամբայ մը գոյութիւն ունենար դէպի Աշոց դաշտն առաջնորդող, այդ պարագային ստուգիւ շատ խնդրական եղած պիտի ըլլար գործողութեանց արդիւնքը, նկատի առնելով մանաւորաբար այն անյաղթելի դժուարութիւնքն, որոնց պիտի ենթարկուէր հռոմէական բանակը, եթէ Հայ զինուորներն առապար լեռանց անմերձենալի ժայռերուն վրայ կանխաւ դիրքեր բռնած ու ամրացած ըլլային, ինչպէս երբեմն Քսենոփոնի բանակներուն դէմ բռնած էին սակաւաձեռն Հելլէնները, Թերմոպիլէի կիրճին վրայ։ Հետեւաբար այս բոլոր ազդակները մենք նկատի առնելով, կը յանգինք այն եզրակացութեան, թէ Լուկուլլոս միմիայն այս

[1] Նոյն. անդ. էջ 256։

ճամբան, եւ ոչ ուրիշ, կարող էր ընտրած ըլլալ իւր բանակին խաղացքին համար, եւ ես ուրեմն այս մտքով պիտի ներկայացընեմ այժմ Հռոմայեցւոց չուն Կորդուաց երկրէն Հայաստանի ներքնաշխարհը։

Յուլիսի վերջերն ուրեմն մեկնելով Տիգրակերտէ[1], հին Կորդուաց աշխարհին[2] ամրակուռ այս մեծագոյն քաղաքէն, կամ թէ թերեւս նոյն իսկ երկրին մայրաքաղաքէն, ուր հաւանաբար հաստատած էր Լուկուլլոս իւր ընդհանուր բանակատեղին, համախումբ կը գումարէ իր ուժերը, Մուտիա գիւղին շրջակայքը, ուր ոչ թէ հուն մը այլ, անտարակոյս ամենայարմար գիրքը կը գտնուէր Բոհտան-չայէ՝ Քսենոփոնի Կենտրիտեսէն, հունելու, ուսկէ այս վերջինս եւս իւր տասնհազարութեան տակ նահանջող յունական բիւրն անցուցեր էր երբեմն[3]։ Այն անցքին վայրը Հ. Կիպերտի քարտէսին վրայ եւս նշանակուած կը գտնենք մերձաւորապէս այն կէտին վրայ, ուր Բէօյէօկի ուղին՝ Թիլէ դէպի Բեներիս տանող ճամբուն ճիշդ

---

[1] Գինտեկա նոյն է այսօրուան Ֆինիկ գիւղին հետ, որ Ջէզիրէ իբն-Օմարէ դէպի հիւսիս՝ Տիգրիսի արեւելեան կամ ձախակողմեան ափէն դէպի Բոհտան չայի ձորը տանող ճամբուն վրայ կը գտնուի։

[2] Համմտ. Մարքարտ ԺԶ. 1. 24 (747)։

[3] Համմտ. առ այս C. F. Lehmann-Haupt ի Թերթ. Wiener Zeitschrift für die Kunde des Morgenl. 14 (1900) S. 40; Abh. der Berl. Akad. d. Wiss. 1899, S. 745 եւ Literar. Zentralblatt 1900. (քննադատութիւն Մարրէի յօդուածին առթիւ) Տես նաեւ Armenien einst und jetzt, Ա. հատ., էջ 342 եւն.

Բօհտան-չայի արեւելեան եզերքը կը հան-դիպի[1]։

Հոս ուրեմն, այս հունէն Լուկուլլոս, առանց մեծ դժուարութեան, իր լեգէոնները գետին հանդիպակողմը կ՚անցընէ, եւ աջակողմեան եզերքի բարձրաւանդակ սարահարթէն յառաջանալով՝ կը հասնի այսօրուան Կերբիկերոյ եւ Թեղ-վան կոչուած վայրերը, ուսկէ անդին իր, ինչպէս նաեւ երբեմն Քսենոփոնի առջեւ, Հաղըուի վրայով Նկրշիկի տանող ճամբան կը բացուէր։ Յետոյ կը բաժնէ նա իր բանակն երկու խումբերու, որոնցմէ հեծելագունդն ու աղխերն հեշտ վերելքով լեռնուղիէն կը բարձրանան, իսկ հետեւակները ձորի մէջէն ու նոյնին վերի կողմէն տանող ճամբով քալելով Շէնի փոքր մէկ հարթավայրը կը հասնին, ուր երկու խումբերն իրարու միանալով դադար կ՚առնուն։ Եւ երբ յետոյ ձիաւորները գունդը ձախ թեւն առած՝ աղխերով միասին, կողմի-դաշտի ճամբան կը բռնէ, լեգէոնները միջին ու արեւելեան ճամբաներով իրենց չուն կը շարունակեն, մինչեւ որ բոլոր գունդերը՝ դաշտագետնի մը վրայ, հետեւեալ օրը, դարձեալ իրարու կը միանան։

Այսպէս ուրեմն Լուկուլլոս՝ Կենտրիտեսի հունէն մինչեւ Մշոյ դաշտն երկարող 175 քի-լոմեթր ճամբան 10—11 օրուան մէջ, որոնցմէ

[1] Շատ աւելի որոշ ցոյց կու տայ Ռ. Կիպերտի քար-տէսն այս կողմերու երկրագրական գիրքը։ Հոս առնկայն փո-խանակ Բէօյլէօկի-Բուլակ. եւ փոխանակ Մուսուփի-Մուսի նշանակուած է։

երկիրը լեռնուղւոյ վրայ միայն, կարել անցնելէ ետքը, կը մտնէ բուն Հայաստան։

---

## Գլուխ Ը.

### Պատմական մեծ զօրաշարժերու եւ ընդհարում-ներու:

### Ա.

#### Մշոյ դաշտին կռիւները:

Լուկուլլոս Մշոյ դաշտը մտնելէն վերջ միայն զգաց թէ ծանրապէս սխալած էր իւր բրած հաշիւներուն մէջ։ Հայկական բարձրագաւառին յատուկ կլիմայաբանական երեւոյթներուն բաւ բաւականի ծանօթութիւն չունենալն էր պատճառ իւր այս առաջին յուսախաբութեան. վասն զի երբ նա Կորդուաց երկրէն մեկնեցաւ՝ ամառուան խորքն էր արդէն, եւ տեղական արմտիքը հասունցած էր հոն ամէն կողմ։ մինչդեռ հոս, Մշոյ բարձրաւանդակին վրայ, — որ 500-600 մետր աւելի բարձր է քան Տիգրիսի դաշտավայրերը[1], — տեսաւ որ ցորենը դեռ առողջացած իսկ չէր[2], — թէեւ Օգոստոս՝ հնձոց ամիսը մօտ էր, — բարձրագաւառին վրայ տիրող գարնանային սաստիկ ցուրտերուն երեսէն[3]։ Ահա այս

---

1 Կարբէ. անդ. էջ 17։

2 Plut. Luc. c. 31.

3 Կասիոս Դիոն. գիրք 35. գլ. 4։

պարագան նա նկատի առնուլ կրցած չէր, երբ բանակի համար ճամբու պաշարը հոգալ սահմանուած էր Կորդուաց երկրէն։ Այս ձախող պատահարէն սակայն առանց ամենևին շուարելու, կազմեց իր բանակը, շարժեց գունդերն իրենց տեղերէն, խաղացուց զանոնք դաշտավայրին խորերը, այն վստահութեամբ որ Հայք պիտի չհատամէին իր վրայ յարձակիլ, որուն միայն նա տենչանօք կը սպասէր։ Սակայն Հայք իրենց ամրացած դիրքերուն վրայ անշարժ կեցան, առանց կարևորութիւն ընծայելու Լուկուլլոսի այս հրապոյրներուն։

Հնարագէտն Միհրդատի կազմած այս ծրագրին բուն խնդ նպատակը, ինչպէս վերև ալ արդէն ըսեր էինք, ոչ այլ ինչ էր, եթէ ոչ իր հեծեալ գունդերու գերակշռութեամբը թշնամի ուժերն ամէն կերպով հարուածելով զանոնք տեղւոյն վրայ բնաջնջել, առանց այս ընդհարումէն ինքն ևս վնասուելու։ Իր այս ռազմական ծրագիրն իրագործելու նպատակաւ բաժնեց հայակոյս բանակը երկու ուրոյն գումարտակներու, որոնց միոյն, որ հետևակազօրէ ու քանի մը հեծեալէ կը բաղկանար, հրամանատարութիւնն ինքն ստանձնելով, քաշուեցաւ բարձունքներու վրայ, ու հոն ամրացաւ. իսկ երկրորդ գումարտակին, որ ամբողջովին հեծելազօրէ կազմուած էր, հրամանատարութիւնը Տիգրանի յանձնելով, բաց դաշտի վրայ դիրք բռնել տուաւ անոր, և յանձնարարեց հռոմէական բանակին շուրջը շարունակ թափառելով՝ զայն նեղել, ու գլխաւո-

բարար անոր պարենաւորումը խափանել։ Հռոմայեցիք հոն երկու օրոյ մէջ ինկած էին. վասն զի դաշնակիցներն որոշիչ ճակատ առնելէ կը զգուշանային ու կը խուսափէին, համաձայն իրենց ծրագրին, ու երբ Հռոմայեցիք անոնցմէ միոյն վրայ կը յարձակէին, միւսն իսկոյն թիկունքէն իրենց վրայ կը խոյանար, եւ այսպէս փոխադարձաբար[1]։

Այսու հանդերձ, ճակատ կազմած Հռոմայեցի լեգէոնները կրցան հայ թեթեւազէն հեծելազօրաց քանի մը անընդհատ յարձակումներն ետ վանելով բազմաթիւ գիւղեր թալլել ու քանդել, եւ, մինչեւ իսկ հակառակ Հայոց բուռն դիմադրութեան, քանի մը հարուստ մթերանոցներ եւս ձեռք ձգելով՝ մէջը համբարուած պաշարով իրենց պարէնի պակասը լրացընել[2]։ Այս փոքրիկ յաջողութիւններով հանդերձ սակայն չհամարձակեցաւ Լուկուլլոս իր ամրացած դիրքէն քայլ մ'անդին յառաջանալ, վասն զի հայ բանակը բացարձակապէս հակառակ էր որոշիչ ճակատամարտ մը մղելու գաղափարին, որմէ միայն իր փրկութիւնը կը սպասէր Լուկուլլոս։ Նա համոզուած էր, թէ մեծ ու որոշիչ ճակատամարտով մը միայն պիտի կարենար թշնամւոյն դիմադրական վերջին այս ոյժն ալ խորտակել. մինչդեռ փոխանակ անոր՝ դաշնակից արքայից կողմէ իրեն այժմ կը պարտադրուէր յառաջամար-

[1] Հայ բանակին ռազմական այն ծրագիրը Ապպիանոսէ՝ Միհրդ. գլ. 87. բացայայտ կ'իմացուի։

[2] Plut. Luc. c. 31.

տիկ փոքր գուպարաններ, որոնց մէջ Նիքն էր առաւելապէս առաւօտը քան թէ թշնամին. վասն զի հայ այրուձին իւր արտաքոյ կարգի արագութեան շնորհիւ, կարող էր սկսուած կռիւ մը՝ որ իրեն համար աննպաստ պիտի վերջանար, անմիջապէս ընդհատելով փախուստ տալ, եւ առանց հետահաս ըլլալու զինքը հետապնդող հռոմայեցի հեծեալներէ, փախուստի միջոցին յետս ընդդէմ դարձած անոնց վրայ նետեր տեղացընել ու անոնցմէ շատերն այս կերպ դիաթաւալ գետին փռել կամ վիրաւորել։ Բայց սակայն, Լուկուլլոս իւր դէմը հակառակորդ մը միայն ունէր, որմէ, յիրաւի, պատճառներ ունէր նա խիթալու, եւ եթէ Նիքն ուզէր նախայարձակ ըլլալ Միհրդատի վրայ, կը վախնար Տիգրանի անվեհեր ձիաւորներէն, որոնք յանկարծ իրենց դիրքերէն դուրս խոյանալով՝ կարող էին թիկունքէն անխնայ հարուածել հռոմէական լեգէոնները։ Այս ամէն դժպհի պարագաները հասուն խորհրդով մի առ մի կշռելէ յետոյ Լուկուլլոս բնականաբար պիտի ուզէր Հայերն իրենց թաքստոցներէն դուրս հրապուրել, եւ բաց դաշտի վրայ իրեն դէմ ճակատելու ստիպել զանոնք։

Այս նպատակաւ ալ յառաջ շարժեց նա իւր բանակը մինչեւ Միհրդատի ամրացած դիրքերուն առջեւները, ու բանակեցաւ դէմ յանդիման անոր բանակին, որպէս զի գոնէ այսու զինքը ստիպէ բաց դաշտ իջնելով իրեն դէմ ճակատելու, եւ կամ որպէս զի զինքը պաշարման տակ պահելով՝ անգործութեան դատա-

պարտէ[1] ։ Այս պարագայիս մէջ անգամ ակներեւ տեսնուեցաւ առաւելութիւնը Հայոց ռազմավարական այս ծրագրին, զոր Հայ սպայակոյտը այնքան խղճամիտ հաւատարմութեամբ կրցաւ գործադրել բոլոր պատերազմներուն մէջ։ Այն ինչ սկսելու վրայ էր Լուկուլլոս Միհրդատի ճամբարը պաշարման տակ առնուլ, եւ արդէն սկսած էր անոր բանակած լերան շուրջը խրամներ բանալով զայն չորս կողմէ շրջապատել, յանկարծ Տիգրան իւր ստուարաթիւ ու պնդակազմ ձիաւոր գունդերուն գլուխն անցած դարձեալ երեւան եկաւ, ու այս անգամ, ապահովաբար, Լուկուլլոսն իւր ամբողջ բանակովն երկու կրակի մէջ պիտի յաջողէր առնուլ, եթէ հռոմայեցի հրամանատարն իւր հեծելազօրաց այրերուն մէկ գունդը, յարմար առենին, Տիգրանի ձիաւորներուն վրայ արձակելով, անոնց գրոհը՝ ընդարձակ հեռաւորութեան մը վրայ կասեցուցած չըլլար։ Ասոր վրայ Լուկուլլոս մնացած բանակովը ճակատ կազմեց Միհրդատի դէմ, յուսալով որ նա եւս այդ միջոցին պիտի դիմէ ինքնապաշտպանութեան համար։ Սակայն դարձեալ յուսախաբ եղաւ. վասն զի խոհեմ ծերունին ընաւ կարեւորութիւն չտուաւ անոր այս մարտակոչին, այլ իւր գունդերը ճամբարին մէջ ռազմական դիրքի վրայ անշարժ պահեց, աչալուրջ հետեւելով թշնամի զօրաց մէն մի շարժումներուն։ —

Մշոյ դաշտին վրայ տեղի ունեցած կռիւներու մասին խօսող մեր աղբիւրներէն՝ Ապպի-

[1] Appianus, Mithr. c. 87 եւ Plut. Luc. c. 31.

անոսի եւ Պլուտարքոսի վկայութիւնն այս ձեւով միայն կարելի է իրարու միացնել:

2.

*Լուկուլլոս Արտաշատի վրայ կը քալէ: Արածանիայ ճակատամարտը:*

Արտաշատի վրայ Լուկուլլոսի այս արշաւը միայն Պլուտարքոս եւ Ապպիանոս[1] կը յիշատակեն: Ապպիանոս զԼուկուլլոս՝ Հայկական ճամբարին անօգուտ պաշարումէ մը յետոյ, վերահաս ձմեռուան խստութեան պատճառաւ կրկին Միջագետք կը դարձնէ: Իսկ Կասիոս Դիոն[2] թէեւ Արտաշատի այս արշաւի մասին որոշ բան մը չի հաղորդեր, սակայն, ապահովաբար, իր ἐπ' αὐτοὺς ὥρμησε խօսքովը զայն ակնարկել կ'ուզէ, մանաւանդ որ կանխաւ ալ կ'ըսէ, թէ Հայք ճակատ տալէ խուսափեցան, մինչ որ մեր առջեւի միւս աղբիւրներուն այս մասին տուած վկայութեանցը լիովին կը համապատասխանէ: Հռոմայեցւոց կողմէ Հայոց դէմ ուղղուած զօրաշարժ մը՝ Հայ ճամբարի պաշարման առթիւ միայն հոն յիշատակուած կը տեսնենք. որով կարելի է ենթադրել թէ գուցէ անոր վերաբերմամբ ալ ըսուած ըլլան այն խօսքերը: Այս ենթադրութիւնը սակայն ես հաւանական չեմ գտներ, քանի որ այդ զօրաշարժն եւս ոչինչ նպաստեց թշնամին իր կրաւորական դիրքէն դուրս հրա-

---

1 Դ. Հատուածոր. 74:

2 Դիրք 35. գլ. 4 եւ 5:

պարելու։ Բայց որովհետեւ 5ՐԴ գլխուն բովանդակութիւնը բուռն ու սաստիկ պատերազմ մը ենթադրել կու տայ մեզ, ապա այն խօսքերն ալ Արտաշատի վրայ տեղի ունեցած արշաւանքի մը հետ պէտք են վերաբերում ունենալ։ Ասկէ ուրեմն հետեւցընելով, հեծելազօրաց ընդհարման նկարագրութիւնը Արածանւոյ քով մղուած ճակատամարտին մէկ դրուագը պէտք ենք նկատել։

Եթէ ուրեմն հռոմայեցի զօրավարը ներկայ տարուան իսկ ընթացքին Հայոց այս խոհեմ եւ միանգամայն զգուշաւոր ռազմավարութեան վրայ յաղթութիւն մը եւս շահիլ կ'ուզէր, պէտք էր նա Տիգրանի ամենազգայուն մէկ ջիղին դպչիլ, այս է՝ ասպատակ տալ Արտաշատի վրայ, ուր նա՝ Տիգրանակերտէ փոխադրել տալով՝ ապահովցուցած էր իր թանկագին գանձերը, կանանին ու զաւակը։ Եւ ինչպէս Հայ արքային իր դաստակերտը փրկելու, եւ զայն պաշարող հռոմէական բանակը վանելու համար ինքն անձամբ օժանդակ ուժերու գլուխն անցած օգնութեան վազած եկած էր, նմանապէս հոս այս դէպքին մէջ նա անհրաժեշտօրէն ճակատ տալ պիտի ստիպուէր թշնամւոյն, միայն իր սիրելիներուն հոգէն տարուած, որպէս զի զանոնք թշնամւոյն ձեռքն իյնալու վտանգէն ազատէ։ Ուստի եւ իր այս նոր ծրագիրը գործադրելու դիտաւորութեամբ, նա կեցաւ Լուկուլլոս թշնամին ճակատ տալ ստիպելու իր նախկին մարտագրութենէն, որ, ինչպէս տեսնուեցաւ, անիրագործելի էր, եւ բանա-

կը, որ մը, յանկարծ վերցընելով՝ քալեց Արտաշատի, Հայոց հին մայրաքաղաքին վրայ, զոր երբեմն Աննիբալ, Հռոմայ այս ոխերիմ թշնամին հիմնած ու կառուցած էր Արտաշէսի համար[1]:

Ինթէ մենք յաջողեցանք — մասամբ մը գոնէ — այս երկրորդ տարւոյ պատերազմին առաջին մասին համար ճշդել աշխարհագրօրէն այն ճամբաները, որոնց հետեւելով մտած էին հռոմէական լեգէոնները Հայաստան, չենք կարող նոյնը հաստատել այս երկրորդ մասին համար եւս, որ գրեթէ անկարելի է: Այս պատճառաւ ներկայ շրջանիս դէպքերու ընթացքին լոկ պատմականօրէն պիտի հետեւինք, ու յետոյ, ի վերջոյ, տեղագրութեան նկատմամբ ինչ ինչ ենթադրութիւններ կամ կարծիքներ մեր կողմէ վրան պիտի յաւելունք:

Երբ ուրեմն Տիգրան տեսաւ որ Լուկուլլոս իր բանակը ժողված չեշտակի Արտաշատի վրայ կը քալէ, սաստիկ խռովեցաւ, ինչպէս նախորդ տարին, երբ Լուկուլլոս Տիգրանակերտի վրայ կը քալէր, եւ իր սիրելիներուն ու գանձերուն մասին դարձեալ մտահոգուելով՝ որոնց այս անգամ եւս, ամէն գնով, թշնամւոյն դէմ ճակատիլ, ու թող չտալ որ իր ամենասիրելիներն անոր ձեռքն իյնան:

Այսպէս Լուկուլլոս հայ արքային նկարագրին տկար կողմը լաւ ուսումնասիրած, եւ միանգամայն գիտցած էր զայն, այս երկրորդ ան-

---

1 Plut. Luc. c. 31 եւ Strabo. XI. 14. 6 (529).

գամ՝, իր ծրագիրներուն իրականացմանը ծառայեցընել օգտակարապէս։

Տիգրան իր մայրաքաղաքը փրկելու հոգէ մղուած՝ նա շարժեց իր բանակը, եւ չորրորդ օրը բանակեցաւ Արածանւոյ աջակողմեան եզերքը[1], որպէս զի դիմակալ ըլլայ Հռոմայեցւոց, ու չթոյլատրէ անոնց գետին աջ կողմն անց կենալ. վասն զի գետէն հարկ էր անցնիլ, եթէ Արտաշատի վրայ դիմել կ'ուզուէր։ Գրեթէ միեւնոյն ատեն հասան նաեւ Հռոմայեցիք Արածանւոյ ափը, հայ բանակին ճիշդ հանդիպակաց եզերքը[2], այնպէս որ հոս եւս դարձեալ — ինչպէս տարի մը յառաջ Տիգրանակերտի քով — գետով մը միայն իրարմէ անջատուած՝ երկու հակամարտ կողմերը դէմ դէմի բանակած կեցած էին։

Հետեւեալ օրն, Լուկուլլոս, որ հոն եւս նախայարձակ էր եղած, առաւօտեան դէմ, անցաւ Արածանին։ Թէ ճակատամարտը հետեւեալ՝ այսինքն հինգերորդ օրը տեղի ունեցած է, կը հետեւի παρεστρατοπέδευσε τοῖς Ῥωμαίοις խօսքէն, որ երկու հակամարտ կողմերու եւս բանակ դրած ըլլալը կ'ենթադրէ։ Այս բանակադրութիւնը սակայն կրնար միայն օթագան ըլլալու ծառայած ըլլալ հռոմէական բանակին, վասն զի կարող էին Հռոմայեցիք իրենց չուի միջոցին անմիջապէս Արածանին անցնիլ՝ առանց հոն նախապէս բանակ հաստատած ըլլալու, նոյն

1 Հմմտ. Ճակատամարտին մասին Plut. Luc. c. 31.

2 Ըստ Սալլուստիոսի, Դ. Հատոր. 74, առաջին անգամ բիւթանացի գունդերն էին գետը հատողները

իսկ ենթադրելով որ անոնք կանխաւ ձախ եզերքին վրայ քիչ մը ժամանակ եւս դադար առած նստած ըլլային։ Յամենայն դէպս սակայն Լուկուլլոս իր այս արշաւին ձախողութեան պարագան եւս նկատի առնելով՝ կանխաւ հոգացած ըլլալու էր իր բանակին համար ամուր համախմբավայր մը, որով կրնանք գրեթէ ապահովաբար ընդունիլ, որ նա չորրորդ օրուան մէկ մասը յառաջապէս պէտք էր նուիրած ըլլալ բանակետղին ամրութեանցն, առանց նաեւ զօրաց պէտք եղած հանգիստը զլանալու։

Ուստի եւ, առաւօտուն, իր բանակը ճակատեցուց Լուկուլլոս։ Ճակատ մը հնար էր արդէն կարգել, առանց վտանգի, ձախակողման եզերքը. վասն զի նոյն միջոցին գետն այնքան ծանծաղ էր, որ լայն տարածութեան մը վրայ կազմուած ճակատի մը համար հնարաւորութիւն կար անկէ անվտանգ հունելու։ Լուկուլլոս իր ձեռքին տակ ունեցած վաշտերէն տասուերկուքը՝ իբր յառաջապահ, շարեց ճակատին առջեւ, մնացածները՝ իբր վերջապահ, կարգեց ճակատին ետեւ, որպէս զի թիկանց կողմէ եղած հայ հեծելազօրաց յարձակումներուն դէմ ճակատն ապահովէ, ու յետոյ, որպէս զի ինքն եւս, ի պահանջել հարկին, իր պահեստի վաշտական զինուորներուն գլուխն անցած կողմնակի յարձակման ձեռնարկել կարենայ։ Այլ եւս յաղթութեան մը վրայ լիայոյս, մնայց նա, բայց սովորութեան, Հռոմայ աստուածներուն օրինական զոհը, որմէ յետոյ ժողվեց խանդավառ իր

լեգէօնները, եւ շտապեցուց զանոնք գետին հան-դիպակաց եզրը՝ յաղթութեան դափնւոյ մ'եւս ի խնդիր։

Արածանւոյ աջակողմեան եզերքը ճակատեցուցած էր արդէն Տիգրան իւր ամբողջ հեծելազօրը։ Կ'երեւայ թէ հայ հետեւակազօրն այս ճակատամարտին մասնակցած չէր։ Պլուտարքոս հայ հետեւակազօրաց նկատմամբ խօսք չ'ընէր. Նմանապէս Կասիոս Դիոնի նկարագրութենէն պայծառ չի հասկցուիր, որ այս ճակատամարտին հայ հետեւակ գունդերն ալ իրենց մասնակցութիւնը բերած ըլլան։ Մանաւանդ թէ ճակատամարտիս ամբողջ նկարագրութիւնը բացարձակապէս կը մերժէ այդպիսի հնարաւորութիւն մը, քանի որ հոն ուղղակի ձգտում մը կ'ընդնշմարուի շեշտելու հայ հեծելազօրաց արընթացութիւնն ու անոնց՝ Հռոմայեցւոց բոլորովին անընդել ու անսովոր պատերազմելու ձեւը։ Հետեւաբար մենք իբր ստոյգ կարող ենք նկատել, որ երբ վերահասու եղաւ Տիգրան, թէ Լուկուլլոս իւր մայրաքաղաքին՝ Արտաշատի կը սպառնայ, իսկոյն իւր թեթեւաձի հեծելագունդերովը միայն հետամտեցաւ Հռոմայեցւոց, ու անոնց գետէն անցքը խափանելու համար՝ աջ եզերքը ճակատ յօրինեց։ Սակայն մինչեւ որ Լուկուլլոսի այս զինուորական շարժումներէն անոր Արտաշատի վրայ չուելու մտադրութիւնը հասկցուելով՝ Տիգրան հռոմէական բանակը հետապնդելու ելաւ՝ ուշ էր արդէն, վասն զի այնքան յառաջացած էին արդէն Հռոմայեցիք, որ

անհնար էր թէ կարենար Հայ Հետեւակազօրն անոնց Համահաս ըլլալ։

Հետեւաբար Արածանւոյ ճակատամարտը սոսկ ձիաւորներու ընդհարում մըն էր՝ մղուած Հայոց կողմէ, առանց Հայ Հետեւակազօրաց մասնակցութեան. ուստի եւ Մոմզէն[1], ըստ պատճառ մը չունի կարծելու թէ՝ «Հայ Հետեւակազօրն ալ ներկայ էր, սակայն կարելի չեղաւ զայն ճակատեցնել»։ Ուսկէ՞ սակայն այս ենթադրութիւնը։ Մեր առջեւն եղող աղբիւրներէն ոչ մէկն այդ մասին խօսք կ՚ընէ։ Ես կը կարծեմ թէ այս ենթադրութիւնը հիմնուած է սխալ հասկացողութեան վրայ Կասիոս Դիոնի մէկ տողիքին, որ պատմագիրը՝ Հռոմէական այրուձիուն Հայոց Հետ ունեցած բախումներու միջոցին անոնցմէ կրած պարտութիւնները թուելէ յետոյ, վրայ կը յաւելու τῷ δὲ πεζῷ οὐδεὶς αὐτῶν ἐς χεῖρας ἦει. Ո՛վ չի տեսներ թէ Հոս այս վկայութիւնը Հռոմէական Հետեւակին Հանդէպ բռնուած է, որ թշնամի Հեծելազօրաց (= αὐτῶν) արագաշարժ սրընթացութեան պատճառաւ չէր յաջողած անոնցմէ ոչ մէկ զինուոր գերի բռնել[2]։

---

1 Römische Geschichte III, S. 75. (Տես Արթուն. Հայոց նախնական պատմութիւնը ըստ Մոմզէնի. Վաղարշապատ 1904. էջ 19.)

2 Կը խօսի Աստուրեան, անդ էջ 66 ծնթ., Մոմզէնի թէր ելլելով, երբ՝ առանց գրական ոեւէ մէկ ապացոյց մէջբերելու, կը վճռէ. «Նոյնպէս իրաւունք չունի այս տարբեր Հասկընալու Հակառակ Մոմզէնի, որ Դիոնի պատմութիւնը շատ ճիշտ Հասկցեր է»։ Եւ սակայն Աս-

Արդ ուրեմն գետին հանդիպակաց եզերքն երկու ճակատի վրայ շարուած՝ Հռոմայեցւոց կը սպասէին հայ հեծելազօրներ միայն։ Կենդրոնը ճակատեցուցած էր Տիգրան իր մարտընտիր անձնապահ ձիաւորներու բազմաձեռն գունդերը. իսկ մարդական աղեղնաւորները և վրացի նիզակաւորները. հեծելազօրները առաջին գծին վրայ։ Տիգրան իր բոլոր նիզակակիցներէն գլխաւորաբար այս երկու զօրագունդերու վրայ էր որ մեծ վստահութիւն ունէր, և այս պատճառաւ ալ անոնց վիճակած էր Հռոմայեցի հեծելազօրուգը կեղծ փախուստով մարտավայրէն հեռացընելու, և զայն վայրավարին ցրուելու կարեւորագոյն պաշտօնը։ Այս կերպ կարծեմ միայն կարելի պիտի ըլլայ մեկնել Պլուտարքոսի մէկ տեղեկը, ուր նա այս երկու զօրաբաժիններն, իր լաւագոյն նիզակակիցներ, մէկ շունչով գովելէ ու գրուատելէ յետոյ, զանոնք՝ իրենց այս արագ արագ փախուստ տալուն համար, խստիւ կը պախարակէ։

Ճակատամարտն սկսաւ հռոմէական այրուձիուն Մարդացւոց ու Վրաց վրայ գործած յարձակմամբը։ Լուկուլլոս նախ յարձակելու հրա-

---

տուրեան ինչն ե․ա տարրեր գաղափար մը յայտնած ըլլալոր․ երբ նոյն տեղը կ'ըսէ․ «Ցատափանգագման տանն հայկական այրու ձին հռոմէականը նեղը խոթեց, բայց հեծեակներու հետ բախելէ հետք կեցաւ, և ամէն տանն հա րաշուեցաւ»։ — Ընդհակառ է ենթադրել, որ հայ հեծելակազօրք ներկայ եղած ըլլայ, և ամբողջ ճակատամարտին տեւողութեան պարագայեա դիտողի դիրքին մէջ ամփոփուած կեցած ըլլայ ձեռքերը ծալլած։

մամ տուած էր իր հեծելազօրաց, որպէս զի անոնք իր լեգէոններուն անցքը պաշտպանեն, որ եւ յաջողութեամբ վերջացաւ մէր վերը յիշած կարգաւ, արագ եւ անթերի։ Հոս, ապահովաբար, կարելի է ենթադրել Պլինի 5°Դ գլխուն մէկ տեղերը, ուր յիշատակուած դէպքը հեծեալ աղեղնաւորներու միայն կրնայ պատշաճիլ, եւ ուր, առաջին անգամ ըլլալով, Հռոմայեցւոց դէմ՝ կը ճակատի մարդական գունդը, որուն պատերազմելու նորաձեւ եղանակը բոլորովին անծանօթ էր Հռոմայեցւոց, ու զարմանքը շարժած էր անոնց։ Յորչափ այս երկու թշնամի հեծելագունդերն առանձին իրարու կը բախէին՝ մարդական ու վրական գունդերն իրենց դիրքերն հերթաբար կը պաշտպանէին. սակայն երբ հետեւակներէ բաղկացած հռոմէական վաշտերն եւս գետին աջակողմն անցնելով կռուին խառնուեցան, հայ հեծելագունդերն, իրենց կանխաւ որոշած հրամանին համաձայն, իսկոյն փախուստ տուին՝ երկու զանազան ուղղութեամբ, թշնամի հեծեալներէ խուսափ. հետապնդուած. եւ այսու ճամբայ բացին Հայոց տուար բանակին թշնամւոյն վրայ գրոհ տալու։ Մարդացիք իրենց անտարբեր արագութեամբն ու ճկնութեամբը կրցան՝ առանց վիրաւոր տալու, միշտ խուսափիլ իրենց վրայ արձակուած նետերէ. մինչդեռ իրենք՝ իրենց փախուստի միջոցին, ձիու նաւէն երեսնին դէպի հետամուտներուն դարձուցած, Հռոմայեցւոց վրայ՝ թոյնի մէջ մխուած սլաքաւոր նետեր կը տեղացընէին առատաբանաբար։ Այս

նաւերուն ծայրերը կրկնապատիկ էին. մին բու-
նին վրայ հաստատուած էր անշարժ, իսկ միւսը
շարժական, եւ առաջին սլաքին վրայ ագուցուած։
Եթէ վիրաւորեալի մը մարմինէն այսպիսի նետ մը
բռնութեամբ հանուելու ըլլար՝ շարժական սլաքը
— որ շատ փոքր էր — մարմնոյն մէջ մնացած կը
մնար անպատճառ, անհնարին վէրք պատճառելով
անոր, որ անբուժելի կը մնար միշտ. նոյն իսկ եթէ
սլաքարգել խոցուածքն անհնարին եղած ըլլար,
սակայն դարձեալ մահն անխուսափելի կ'ըլլար։

Արդ, երբ ձիաւորներու ընդհարումն այս-
պէս ճակատէն սկսելով երկու թեւերու վրայ
եւս տարածուեցաւ, հայ ու մարական այրուձին
ընդոստ ընթացքով հռովմէական ճակատին առա-
ջին գծին վրայ սկսաւ յարձակիլ, ան յուսով,
որ մարդական ու վրական հեծեալները՝ որոնք
նոյն միջոցին հռովմէական ճակատի թեւերուն հետ
կը զարնուէին, թշնամւոյն հեծելազօրը պար-
տութեան մատնելէ ետք՝ նոյնին զօրավիգ եղող
հռոմայեցի վաշտերու վրայ եւս կողմնակի յար-
ձակում կը գործեն։ Զայս կանխած ըլլալու էր
յամենայն դէպս Լուկուլլոս, որ վերջապահները
փողերն հնչեցնել տալով՝ ռազմագօտիէն հե-
տացուց իր այրուձին, մասամբ մը զայն բնա-
ջնջուելէ փրկելու համար, եւ մասամբ մ'ալ
թշնամւոյն այս ահեղի յարձակման թափը՝ հա-
կայարձակմամբ խորտակելու դիտաւորութեամբ։
Իսկ ինքն իր վաշտերուն գլուխն անցած, առա-
ջ, այլ գնացքով, առաջապահականներուն հեծելա-
գունդերու վրայ քալեց, որոնք, ստուարաթիւ

հայ ազատագունդերու հետ, Տիգրանի անձնական պաշտպանութեան յատկացուած էին։ Անոնք սակայն հազիւ թէ հեռուէն նշմարեցին Հռոմայեցի հետեւակներու այս աներկիւղ գրոհն իրենց վրայ, սարսափէ բռնուած, ու դեռ տակաւին լեգէոնականք իրենց սուրերը չմերկացուցած՝ խուռն դարձուցին իրենց երիվարներն ու փախուստ տուին ռազմադաշտէն, առանց կանգ առնելու։ Ըստ Պլուտարքոսի, այս փախուստն գիշեր մ'ամբողջ տեւած կ'ըլլայ, մինչեւ որ Հռոմայեցիք թշնամի սպաննելէ դադրելով, իրենց ձեռքն ինկած գերին ու աւարը հաւաքարշ ընելէ կը հրաժարին։ Ըստ Լիւիոսի (առ Պլուտարքոսի) Հայերն այս ճակատամարտին մէջ թէեւ շատ քիչ կորուստ կ'ունենան, մեռեալ կամ գերի, քան Տիգրանակերտի ճակատամարտին մէջ, սակայն ասոր փոխարէն մեծ թիւ կը կազմէ կորուստն ազատորդիներու եւ զօրագլուխներու։ Զարմանալի ալ չէ սակայն այս երեւոյթը, եթէ նկատի առնունք այն պարագան որ հայ հեծելագունդերն կազմուած էին գլխաւորաբար ազատորդիներէ, մանաւանդ որ վերջին զօրաժողովին լաւ ընտրութիւն ալ եղած էր անոնց մէջ. մինչդեռ նախընթաց ճակատամարտին, հետեւակազօրաց աշխարհախումբ բազմութիւններ ի զուր զոհուած էին հռոմէական սուրին։

Շատ տարօրինակ կը հնչէ Պլուտարքոսի քով միայն յիշատակուած սա մէկ վկայութիւնը, թէ հայ, պոնտացի ու ատրպատականցի երեք դաշնակից արքաներէն Միհրդատ կ'ըլլայ առա-

ջինը որ ռազմադաշտէն կը փախչի, որ եւ ո՛չ իսկ կարող կ'ըլլայ հռոմայեցի զօրաց աղաղակներուն տոկալ։ Աւի պարզապէս խեղաթիւրել է եղելութիւնները, մինչդեռ իրաց արդիւնքը ցարդ բոլորովին ներհակն ապացուցած էր։ Այդպիսի վատաբարութիւն մը, եւ այն՝ երեք դաշնակիցներէն ամենակարողին վերագրել ուզելն ուղղակի կը հակառակ ակնյայտնի իրականութեան, նա՛ մանաւանդ Միհրդատի — բիւրաւոր արիւթներու մէջ — իր զօրաց գլուխն անցած՝ թշնամիներու վրայ քալելն, եւ մղած անթիւ ու անհամար պատերազմներուն մէջ շատ ստէպ առած վէրքերը տեսնելէ յետոյ[1]։ Այս հակիրճ, սակայն շատ ուշագրաւ տեղեկութիւնը, որուն ակնաղբիւրը Լիւիոս է, եթէ բոլորովին ջնջուելու արժանի ալ չըլլայ, գոնէ պէտք է ուրիշ՝ յամենայն դէպս մեզ անյայտ պատճառ մ'ունեցած ըլլայ։

Աւելորդ չեմ նկատեր հոս ալ եւս շեշտել, որ հռոմէական հետեւակազօրաց միջնամարտիկ գումարտակին կողմէ Հայոց վրայ եղած յարձակման մը մասին Դրումանի եւ Ռայնախի պատմածները մեր աղբիւրներու վկայութեանցը համապատասխան չեն։

Հնար է կարծել թէ Լուկուլլոս զէնքի յաջողութիւն ունեցած, եւ իր միջնամարտիկ հետեւակաց գումարտակն իբր ընդդիմամարտ՝ քալեցուցած ըլլայ վրական ու մարական հեծելա-

[1] Այս մասին, ի միջի այլոց, տես նաեւ Ապպիանոս, Միհրդ.. գլ. 88/89. Դիոն. գիրք ԼԵ. գլ. 13. Պլուտարքոս, Պոմպէոս, գլ. 42.

գունդերուն վրայ, ի պաշտպանութիւն Հռոմէա-
կան աջակ այրուձիոյ, որով եւ Դրուսանի վար-
կածն ուղիղ եղած կ'ըլլար[1]. զայս պէտք էր սա-
կայն նախ փաստացիօրէն ապացուցանել, ինչ որ
բացարձակապէս անկարելի է, առ ի չգոյէ Հա-
ւաստի տեղեկութեանց։ Լուկուլլոսի զայս նա-
խատեսելով՝ իր թեւերուն սպառնացող թշնամի
հեծելազօրաց դէմ՝ պահեստի գունդ կազմած
ըլլալը Պլուտարքոսի առ πρὸς τὰς κυκλώσεις
τῶν πολεμίων խօսքէն կը հետեւցուի։ Այսու-
հանդերձ շատ խնդրական կը մնայ այդ ծրագրին
ուէ առթիւ գործածութեան գրուիլը։ Իրաց
ընթացքէն միայն դատելով, ես կը կարծեմ
թէ աւելորդ իսկ էր այդ։ Բացայայտ է թէ Հայ
հեծելագունդերը Հռոմէականներուն առջեւէն
փախուստ տուած էին, ու չկայ տեղ մը յիշատա-
կուած, որ անոնք հակայարձակողականի անցնե-
լով՝ իրապէս յետս մղած ըլլան Հռոմայեցիները.
թէեւ վերջնոյս վիրաւորեալներուն թիւը շատ
աւելի եղած էր։ Վերին արդէն ըսեր էինք թէ
Հայոց ծրագիրն էր այս։ Հոս եւս ահա հապճեպով
եղած որոշումը կասեցուցած էր գործադրութիւնը
ծրագրին, եւ, բաց աստի, կրցած էր Լուկուլլոս
դիպող ատենին եւ կոչել իր հետամուտ ձիա-
ւորները. այնպէս որ անոնք դեռ բոլորովին
անվթար՝ կարող էին Հռոմէական փաղանգին
երկու թեւերը պաշտպանել։ Յետոյ արդէն հե-
տեւակազօրաց նախամարտիկ գունդին գործած

---

1 Gesch. Roms IV. S. 152.

յարձակմամբը թշնամին այնպէս մը վհանդուած էր, որ միջնամարտիկ գունդին նոր յարձակման տեղի չկար ամենեւին։

Շատ աւելի անըմբռնելի կը մնայ ինծ Ռայնախի[1] վարկածը, որ ուղղակի միջնամարտ գունդին կու տայ զՄիհրդատ ի փախուստ դարձընելու պատիւը։ Մեզի ծանօթ աղբիւրներէն ոչ մէկուն քով սակայն ամենադոյզն յիշատակութեան մ'իսկ կը հանդիպինք Միհրդատի կողմէ եղած ոեւէ շարժումի մը, որուն դէմ միջնամարտ գունդը գործածել հարկ եղած ըլլայ։ Իսկ եթէ Պլուտարքոսի վկայութեանը վրայ բացարձակապէս կառչած՝ հաստատ մնալ կ'ուզուի այն ենթադրութեան վրայ, որուն համաձայն, իբր թէ Միհրդատ հռոմէական հետեւակազօրուն յարձակմանցը դիմանալ չկարենալով փախուստ տուած ըլլայ, այդ պարագային ոչինչ ընդդէմ է կարծել նոյնքան իրաւամբ նաեւ ենթադրել, թէ Միհրդատ ուղղակի նախամարտիկ գունդին առջեւէն փախած ըլլայ։ Ռայնախի կազմած ռազմավարական ծրագրին համաձայն՝ ուզած կ'ըլլայ Միհրդատ թիկունքէն Հռոմայեցւոց վրայ իյնալ. գործողութիւն մը, որ, ըստ ինքեան, շատ ալ օգտակար կրնար եղած ըլլալ. ափսո՜ս սակայն, որ այդպիսի ենթադրութիւն մը արդարացընող ոեւէ պատմական գոյութիւն չունի, նա՛ թէ Արածանիով իսկ Հռոմայեցւոց թիկունքն ըստ բաւականի լաւ պաշտպանուած էր։

---

[1] Տես. էջ 164 եւ 165։

Նա, իմ մասիս, շատ աւելի կը մտածէ կարծել, թէ Միհրդատ հօն եւս՝ ինչպէս Տիգրանակերտի քով, երբեք պատերազմական եղած չէր Տիգրանի, եւ թէ նա՝ ինչպէս յառաջ, նմանապէս եւ այժմ, հայկական ուժերն ու երկրորդ կիսաբաժնին — որուն կորիզը կը կազմէր բականդակ հետեւակազօրը — ընդհանուր հրամանատարն էր։ Արդ, Լուկուլլոսի չուին նպատակն իմացուելով երբ Տիգրան իւր ձիաւորներովը զայն հետապնդելու ելաւ, եւ ի վերջոյ Արածանւոյ ձախակողմն անոր դէմ ճակատեցաւ, ապահովաբար Միհրդատ եւս իւր զօրաբանակովն անոր հետեւած ըլլալու էր։ Արդ, շատ հաւանական է որ մինչեւ վերջնոյս ռազմադաշտ հասնիլն՝ որոշիչ ճակատն արդէն մղուած վերջացած ըլլար, եւ, այս պատճառաւ, Միհրդատ ուզած չըլլար իւր հետեւակազօրն անօգուտ յարձակման մը մղել, այլ զայն ապագային աւելի ազդեցիկ կերպով գործածելու նպատակաւ՝ առանց պատերազմելու, հեռացած ըլլար ռազմաճակատին քովերէն։ Այս հաւանական միջադէպն անշուշտ առիթ տուած կրնար ըլլալ Նիկոսի ծանօթ քննադատութեան, որով կը գրոմէր նա զՄիհրդատ թէ "տոկալ չկարենալով հռոմայեցի զօրաց աղաղակներուն՝ փախած է ռազմադաշտէն"։ Գուցէ թէ Մոմսէն եւս իւր վերոյիշեալ խօսքերովն այսպիսի կամ նման կարծիք մը յայտնել ուզած ըլլայ. այդ պարագային սակայն, պէտք չէր անհատական կարծիք մը՝ իբր հաստատուն իրողութիւն մը, վճռականօրէն ներ-

կայացընել։ Այս բոլորն, ի հարկէ, ենթադրութիւններ են լոկ, որոնց ստիպուած ենք մենք դիմել մեր աղբիւրներուն անբաւականութեան եւ որոշ տեղեկութեանց չգոյութեան պատճառաւ։

3.

*Յառաջխաղացութիւն եւ ըմբոստութիւն հռոմէական բանակին:*

Այսպէս թէ այնպէս, Լուկուլլոս յաղթութիւն մը եւս շահեցաւ դաշնակիցներուն վրայ, որոնց — ինչպէս արդէն տեսանք — մեռեալներովն ու վիրաւորներովը խռնուած էր ռազմադաշտը։ Այս ճակատամարտին մէջ Հռոմայեցւոց եւս ունեցած կորուստներուն թիւն ահաւոր համեմատութիւններու հասած էր։ Պլուտարքոս, ըստ իւր բարի սովորութեան, անոնց վրայէն, ընականաբար, լռութեամբ կ'անցնի. մինչդեռ Կասիոս Դիոն բացորոշ կը խոստովանի Արտաշատու ճակատամարտին մէջ անոնց տուած ահաւոր կորուստը, եւ վիրաւորեալ ու անկարող զինուորներու չափազանց այս բազմութիւնը գլխաւոր պատճառ կը նկատէ նա Լուկուլլոսի՝ Հայկական արշաւանքն ընդհատելով՝ փութով ետ դառնալ ստիպուելուն։ Հռոմայեցւոց կրած այս մեծ կորուստը, ի հարկէ, այնքան պիտի չկարենար ընկճել հռոմայեցի հրամանատարը, եթէ նա՝ այդպիսի արիւնահեղ ճակատամարտի մէջ շահուած յաղթութենէ մը յետոյ, կարող ըլլար անխափան

իր կէտ նպատակին հասնիլ։ Այս սակայն չյաջողեցաւ։ Այո՛, յաջողեցաւ Լուկուլլոս իր թշնամին ճակատելու տանիլ՝ անոր մայրաքաղաքին պաշտպանելով. յաղթեց անոր թէեւ՝ դժուարամարտ պատերազմի մը մէջ. վանեց վկանդեց Հայ հեծելագունդերը ձիգ ժամանակ, ու վարատեց վայրավարածին ցրուեց զանոնք, եւ սակայն, ի վերջոյ, չյաջողեցաւ այնպէս ուժասպառ ընել զանոնք, որ անգամ մը եւս չկարենային անոնք համախմբուիլ ու իր բանակին յառաջխաղացութեանն արգելք ըլլալ։ Դարձեալ Միհրդատի հետեւակազօրաց գումարտակն իր բոլոր կազմածքին անվթար ու պատրաստ կեցած էր, որ — իր ծրագրին միշտ հաւատարիմ — երկրայական ճակատներէ շարունակ խուսափելով՝ պատուհասէր էր միշտ Հռոմէական բանակին։

Այսպէս ուրեմն իրաց վիճակը ծայրայեղօրէն անպաստ ըլլալով Հանդերձ Հռոմայեցւոց, Լուկուլլոս անդրդուելի հաստատամտութեամբ իր չուն շարունակեց՝ դիմագրաւ դիմելով իր առաջադրած նպատակակէտին։ Այս պարագան միայն ինքնին զիս առաւելապէս կը հաստատէ իմ այն համոզման մէջ, թէ Հայաստանի երկրորդ մայրաքաղաքն Արտաշատ այնքան ալ շատ հեռու չէր կրնար եղած ըլլալ Արածանւոյ ճակատամարտին թատերաբեմէն, ինչպէս Մոմզէն[1],

[1] «Ան առաջ եկաւ շուրջ ամառուան ընթացքին մէջ դէպ Հայաստանի Արտաշատ, ու վերջացուց արշաւանքը». Մոմզէն, Röm. Gesch. III, էջ 75. (Տե՛ս Հայոց նախնական պատմութիւնը ըստ Մոմզէնի, էջ 19).

Ռուֆինոսի[1] եւ այս վերջնոյս հետեւելով նաեւ Գարագաշեան[2] կ'ուզեն զայն ներկայացնել։

Այսպէս է որ Հայաստանի աշխարհագրական դիրքին ու անոր մեթոդոլոգիային հանգամանքներու մասին Հռոմայեցւոց ունեցած ծանօթութիւնները շատ թերի էին, նոյն իսկ դեռ մինչեւ Անաստասիոսի օրերը. այսու հանդերձ եւ չեմ՝ տարակուսիր որ Լուկուլլոսի նման զգուշաւոր ռազմավար մը առանց տեղական պայմաններու մասին կանխաւ ճշգրիտ տեղեկութիւններ առնելու՝ այսպիսի ծանր ու վտանգներով լի շուքի մը որոշում՝ առած ըլլար. մանաւանդ թէ Տիգրանի վաղեմի մաճորտերուն հետ իր մշակած բարեկամական յարաբերութիւններու եւ դաշնագրութիւններու շնորհիւ՝ շատ ալ հաւանական էր որ, անոնց յաւագոյն ուղեցոյցներն իր տրամադրութեան տակ դրուած ըլլային։ Վասն զի անմտութիւն եղած պիտի ըլլար Լուկուլլոսի կողմէ, եթէ Սեպտեմբերի երկրորդ կիսուն, երբ հասարակօրէն Հայաստանի խստաշունչ ձմեռն սկսած կ'ըլլայ արդէն, ուզած ըլլար հոն զինուորական գործողութեան մը ձեռնարկել, ու տաժանագոյն շուքի մը մղել իր զինուորները, որոնք առանց որոյ արդէն շարունակ իրեն նորանոր հոգեր կը պատճառէին։ Վասն զի պէտք ենք գիտնալ որ բանակին մէջ ծագած ապստամբութիւնը մէկէն երեւան չեկաւ, այլ աստիճանաբար զարգացաւ։ Ի հարկէ, հետա-

[1] Անդ. էջ 365։

[2] "Արտաշատ էր տակաւին հեռի, եւ ամառն Հայոց մէջ էր ի կատարած»։ Ի. էջ 149։

թեանց շատ մը դէպքեր հրամանատարին ականջը հասեր էին, եւ կատարելապէս իրազեկ էր նա բանակին մէջ անցքի ունեցող անցուդարձերուն, նա մանաւանդ որ ինքն ալ արդէն կանխաւ անոնց հետ անախորժ խնդիրներ ունեցեր էր, ու հազիւ հազ յաջողեր՝ զանազան խոստումներով, զանոնք այս նոր արշաւանքին շահիլ։ Աւելցնենք ասոնց վրայ այժմ նաեւ պաշարին անօրանալը, ծանրակշիռ պարագայ մը ինքնին, որ այս վերջերս յաւելապէս շափազանց շատ զգալի եղած էր բանակին մէջ։ Արդ, այս ամէն զօրեղագոյն պատճառները բաւական էին, կարծեմ, գլուխ կուլլա, — որչափ որ ալ նա իւր բարեգուշակ աստղին վրայ զօրաւոր հաւատք ունեցած ըլլար, — լիովին համոզելու, թէ իւր այս ձեռնարկն ի յառաջագունէ իսկ ձախողման դատապարտուած պիտի ըլլար. եթէ, քանի մը օրուան ընթացքին մէջ, չկարենար իւր նպատակին հասնիլ։

Հիւանդներն ու վիրաւորները, որոնք չուելու արգելք կարող էին ըլլալ, եւ թողուլ՝ մեկնելու վրայ մտածելն բացարձակապէս անհնար էր։ Որչափ որ ալ ճամբարն ամրացած ըլլար, այսու հանդերձ Միհրդատի յարձակմանը պիտի չկարենար տոկալ։ Իսկ հռոմէական բանակը, որ բարձրաբերձ լեռներով բաժնուած էր անկէ՝ դժուարաւ պիտի կարենար օժանդակել անոր իւր մարտիկ գնդերէն կարեւոր մաս մը դարձնել վրայ տալով, եթէ՝ յաջողութեան վրայ քիչ շատ վստահ, ընդդէմ Միհրդատի պաշտպաններու ելլէր դաշտ։ Հետեւաբար Լու-

կուլլոս անպատճառ միասին տարած ըլլալու էր իւր բոլոր վիրաւորները, զորոնք առանց մեծ վնասի այն ատեն միայն հնար էր փոխադրել, երբ կարուելիք ճանապարհն երկայնաձիգ չէր։ Հետեւաբար, Արտաշատ՝ Արածանիէն առ առաւելն 6—7 օրուան հեռաւորութիւն մը կրնար ունեցած ըլլալ։ Այս՝ համեմատաբար կարճ ճանապարհն առանց վտանգի կարել կարենալու յուսով, վերցուց Լուկուլլոս իւր բանակերդը ճակատամարտէն անմիջապէս յետոյ, ու ձմեռուան գիշերահաւասարի միջոցներուն մէկնեցաւ Արածանիոյ ափերէն, որպէս զի Ջրաբաշխի վրայով անցնելով, ուղղակի Եփրատի աւազանն իջնէ։

Հայկական բարձրաւանդակին Եփրատի ձորէն անջատող բարձր լեռնագօտւոյն շարունակական այս եղեւէջքը՝ Լուկուլլոսի իւր զինուորներուն ցարդ ընել հրամայածներուն ամենատաժանելին էր։ Սեպտեմբերի վերջին երրեակին[1] սկսած էր արդէն սառահարթին վրայ ձիւնել, եւ առուակներն ցողեղեամբ պատրուած էին անտառներու ծառերն ու թուփերը. իսկ գետերն ու ջրաշեղջերը սառի նուրբ խաւով մը ծածկուած։ Այսպիսի սառնասաստ ցրտութեան ու ձմեռնային եղանակին այլքան դժուարութեան, բնականաբար, վարժ չէին կրնար ըլլալ արեւախառնեայ զաւակները, ու այս պատճառաւ սաստիկ կը նեղուէին ցուրտէն։ Ամբողջ օրն իրենց թրջած զգեստներուն մէջ մնալ ստիպուած էին անոնք,

[1] Ὥρα δ' ἰσημερίας φθινοπωρινῆς, Plut. Luc. c. 32. [illegible]

եւ երկինքէն մեղմով տեղացող ձիւնի փաթիլները մինչեւ իրենց ոտքերը տամկացուցած էր զանոնք։ Այս արգահատելի վիճակի մէջ, սափրուած էին, գիշերները, խեղճ ու ողորմելի կերպով խոնաւ գետնի վրայ, գետնախշտի հանգչիլ։ Խմելու ջուրն անգամ այնքան սառնապատ էր, որ կենդանիները կը դժկամակէին զայն խմել. Իսկ զինուորները պէտք էին զայն, իրենց գործածութեան համար, նախապէս տաքցնել ու խմել։ Բացի այս ահաւոր տառապանքներէ, կիսով չափ միայն կցած գետակներու՝ վրայով անցքն եւս անպարտելի դժուարութիւններ պատճառեց Հռոմէական բանակին։ Գետերու վրայ կազմուած սառոյցի նուրբ խաւերը զինուորներու եւ ձիաններու բեռան տակ շատ ստէպ խորտակուելով, իրենց սուր ծայրերովը գլխաւորաբար ձիերը կարեվէր կը խոցէին՝ կտրելով անոնց ոտքերուն կարթերը. Նմանապէս զինուորներն չէին կրնար առանց վէրք ստանալու այդ շատ վտանգաւոր անցքերէն պրծիլ։

Այսպիսի նեղութեանց ու տաժանաց ներքեւ Հռոմայեցի զինուորներու դժգոհութիւնը, որ արդէն անթեղուած էր՝ մէկէն բոցավառ բռնկեցաւ։ Դժկամակութեամբ միայն ու ակամայ անոնք այս նոր արշաւին հաւանութիւն տուեր էին, որով եւ շուտ միջոցին իրենց տաղտուկն ու դժգոհութիւնը զանազան առիթներու առեն չքաշուեցան յայտնել իրենց զօրավարին. Իսկ այս անգամ անոնք պոռթկացին եւ մինչեւ իսկ սուանգանեցին իրենց հրամանատարին խիստ հրամաններուն։ Ըստ Պլուտարքոսի, Հռոմէական

բանակին մէջ ծագած այս ապստամբութիւնը բուն իսկ պատճառն եղած կ'ըլլայ Լուկուլլոսի ետ դառնալ ստիպուելուն, եւ այսու միանգամայն անոր մեծ ուժով սկսած պատերազմական ծրագիրներուն վերջնականապէս ձախողելուն. մինչդեռ Ապպիանոս ու Կասիոս Դիոն՝ Հռոմայեցւոց համար այս սաստիկ շատ անպատուաբեր իրողութեան վրայէն լռութեամբ անցնելով՝ կը շարադրեն միայն մասամբ մը վերահաս ձմեռը[1] եւ մասամբ մ'ալ վերատուչներու մեծ թիւին հետ՝ պաշարին եւս անօսրութիւնը[2] ցոյց տալ իբր իրական պատճառ հռոմէական բանակներուն նահանջին դիմելուն։ Այս ամէն պատճառները սակայն, այո՛, յինքեան բաւական ծանրակշիռ. գոյութիւն ունէին արդէն, երբ Լուկուլլոս՝ Արտածանւոյ քովերէն սկսած էր իւր չուն շարունակել դէպ Արտաշատ։ Եթէ նոյն ատեն Լուկուլլոս զանոնք այնքան ծանր չէր համարած, որ իւր չուէն ետ կենալ ուզէր, այժմ առաւել եւս յանձն պիտի չուզէր առնուլ հրաժարիլ անկէ, վասն զի քանի մը օրուան ճամբայ կտրած էր արդէն, ու իւր նպատակին աւելի եւս մօտեցած։ Հետեւաբար ուրիշ պատճառներ փնտռուելու է Լուկուլլոսի այս նահանջին արդարացնող. պատճառներ, զորս կրցած չըլլայ Լուկուլլոս նախատեսել։ Համակարծիք եմ յայսմ Ասատուրեանի[3] որ համառօտիւ վերլուծելէ յետոյ այն բոլոր դրդա-

---

[1] Appianus, Mithr. c. 87.

[2] Դիոն, գիրք ԼԵ. գլ. 6.

[3] Ընդ. էջ 88/89.

պատճառները, որոնք կրնային արգելած ըլլալ Լուկուլլոսի վրայ, կ'եզրակացընէ. «Ինձ կը թուի թէ կրնանք ընդունիլ որ Լուկուլլոսի յառաջխաղացումն ի խոր Հայս այնչափ դիւրին գործ մը չէր, եւ թէ յաղթութիւնները միշտ իր տրամադրութեան տակ չէին։ Բայց ձմեռն, որ Հայաստանի մէջ երբեմն յունիս, յուլիս, օգոստոսին չակիր, Լուկուլլոսի զօրքերին իրենց սպարապետը յետս դառնալու ստիպելու համար ունէին ուրիշ պատճառներ, որոնք պատմագիրներէն անկար շեշտուած են»։

Թէ այս խռովութիւնը Սալլուստիոսի՝ Պլուտարքոսի աղբիւրին մէկ գիւտը չէ, բացորոշ կը տեսնուի Կիկերոնի վասն ընդհանուր հրամանատարութեան Պոմպէի ճառէն[1], ուր նա յաղթական Լուկուլլոսի հասցէին եւս քանի մը գովասանական խօսքեր հիւսելու պարտականութիւնը չի մերժեր թէեւ, սակայն այդ ամբողջ ճառին մէջ յայտնի ձիգ մը կ'ընդնշմարուի, Պոմպէոսի հակառակութեամբ զԼուկուլլոս աւելի ստորադաս ներկայացընելու. եւ այս պատճառաւ պիտի չուզէր նա, բնականաբար, Լուկուլլոսի վրայէն լռութեամբ անցնիլ, եթէ մանաւանդ հայկական արշաւանքներուն ձախողանքը՝ պարագաներու անտեղեակ ընդհանուր հրամանատարութեան մը սխալ հաշիւներուն վերագրել հարկ ըլլար։ Սակայն նա իրեն բնածին ճարտարութեամբ, Հռոմայեցւոց այնքան անհաճոյ այս իրողութեան վրայէն թեթեւ մը անցնելով հանդերձ, սաստիկ

[1] Գլ. Ց. § 23.

գանէ կ՚ըսէ. «Պատերազմի Թատերավայրը Հռոմէ շատ հեռու գտնուելուն, եւ միանգամայն զինուորներն իրենց սիրելիներուն անտեղեկութեանը կարօտացած ըլլալուն՝ անոնք պահանջեցին ետ դառնալ, ու մերժեցին աւելի յառաջ երթալ»։ Ցեսայ զգուշաւորութեամբ մ՚ալ վրայ կը յաւելու «plura non dicam» (աւելին չըսեմ համար), ընականաբար, որպէս զի Հռոմայեցւոց համբաւը հրապարակաւ խայտառակ չընէ։ Կիկերոն թէեւ ընդհանուր ըմբոստութեան մը խօսքը չ՚ըներ, սակայն շատ դիւրաւ կարելի է զայն տող ընդ մէջ կարդալ ու գուշակել։ Ցամենայն դէպս Կիկերոնի մը բերնէն այսպիսի խօսքեր չէին լսուեր, եթէ երբեք Լուկուլլոս, իր զինուորներէն, հակառակ իր կամաց, առիպուած չըլլար յետս նահանջելու։

Անոնք իրենց պահանջը նախ օրինաւոր ճամբով ձեռք բերել փորձեցին. եւ այս նպատակաւ իրենց սպաներէն կազմուած պատգամաւորութիւն մ՚ալ հրամանատարին ղրկեցին, խնդրելով անկէ որ մ՚ալ դադրեցընէ յառաջխաղացութիւնն ու ետ դառնալու փողերն հնչեցընէ։ Սակայն հրամանատարէն ստացած մերժողական պատասխանին վրայ՝ խռովեցան, եւ, գիշերախառն, աղաղակ բառնալով՝ իրենց վրաններու առջ խումբ խումբ ժողվուեցան եւ անվերջանալի կերպով, ամբողջ գիշերը, գոռացին։ Լուկուլլոս հասկըցաւ թէեւ այս ծանօթ ազդանշանին իմաստը, սակայն սկզբան մեծ կարեւորութիւն չուզեց ընծայել անոր։ Սակայն երբ

ունէր, նոր յաղթութեան մը յուսով, մեկնած էր, գարնան, դէպի խորագոյն գաւառները Հայաստան աշխարհի։ Լուկուլլոս սակայն այդքան ալ դիւրագին պիտի չկարենար ապստամբ զինուորները՝ իրենց անհնչացած հանգստական ձմեռոցները։ Կար դեռ Միջագետքի մէջ, Տիգրիսի աջակողմեան եզերքը հիմնուած ամուր բերդաքաղաք մը՝ Մծբին (Antiochia Mygdonia)[1], որ տակաւին Հայոց ձեռքն էր։ Հոն, այս քաղաքին մէջ, Տիգրանի մէկ եղբայր՝ Գուրաս իշխանին հրամանատարութեան ներքեւ կը գտնուէր ստուարաթիւ բերդապահ գունդ մը, որուն պաշտօնն էր, ռազմագիտօրէն աւագ կարեւորութիւն ունեցող այս սահմանաբերդը, զոր ժամանակին Տիգրան Պարթեւներէ խլած էր՝ անոնց դէմ պաշտպանել[2]։ Զինուորական խորհրդատուի Հանգամանքով տրուած էր Գուրասի, — որ, ի Հարկէ, իբր եղբայրը ինքնակալին, լոկ անուանապէս վերին հրամանատարի տիտղոսը կը կրէր, — պատերազմագէտն Կալլիմաքոս, որ Ամիսոսի ամրութեանց հրամանատարութեանը միջոցին իր ցոյց տուած անվեհեր ու յամառ դիմադրութեամբը մեծ համբաւ շահած էր[3]։ Նա ապահովաբար Հոն եւս, ինչպէս երբեմն յԱմիսոս, քաղաքին հերոսական պաշտպանութեան Հոգին եղած ըլլալու էր։

---

1 Strabo. XVI. 1, 23 (747) եւ Plut., Luc. c. 32 ուր նաեւ յաջորդները։

2 Կասիոս Դիոն, գիրք ԼԵ. գլ. 6։

3 Plut., Luc. c. 19; Appianus, Mithr. c. 83; Memnon, c. 45.

Մծբինի մէջ ամփոփուած մեծագանձ հարստութիւններն, ինչպէս նաեւ ուսմանց անբաւ մթերքն որդէն ցանկալի կ՚ընէին զայն Հռոմայեցւոց։ Յաւելուն տանց վրայ նաեւ փառատենչիկ նկարագիրը Լուկուլլոսի, որ կը փափագէր վերջին յաղթանակ մը եւս շահած՝ իր քաջագործութեանց ասպարէզէն հեռանալ։ Արդ, այս դիտաւորութեամբ առաջնորդուած, անցաւ շուտ մը Տիգրիսը, ու շեշտակի Մծբինի վրայ քալեց, որպէս զի ռազմագիտական օրինօք զայն շրջապատէ ու պաշարէ։

Կարծուածին չափ ալ սակայն դիւրին պիտի չըլլար այդ պաշարումը։ Որչափ որ ալ Պլուտարքոս, որ պատերազմին այս միջադէպին վրայէն համառօտիւ միայն կ՚անցնի, կ՚ըսէ, թէ Լուկուլլոս կարճ պաշարումէ մը յետոյ քաղաքը յարձակմամբ առաւ, սակայն Կասիոս Դիոնի[1] նկարագրութենէն աւելի կը տեսնուին պաշարման այլեւայլ դժուարութիւնները։ Ինչպէս վերն ըսած էինք, քաղաքը շատ ամուր շինուած էր եւ երկպատիկ թանձր պարիսպներով շրջապատուած, որոնք խրամով մ՚իրարմէ անջրպետուած ըլլալով՝ զայն գրեթէ անառիկ կ՚ընէին, բաւական որ բերդապահ զինուորներն պարսպապանց չդաւաճանէին, ու բերդերու վրայ աշալուրջ հսկէին։ Յորչափ ամառուան տաք եղանակը կը տիրէր հոն, զինուորներն իրենց պարտականութեանցը մէջ թերացած չէին։ Ձմեռ կ՚ուզէ անշուշտ հասկը-

[1] Դիոն ԼԵ. ԳԼ. 6.

ցընել Կասիոս Դիոն երբ կ'ըսէ. ἐν μὲν τῷ θέρει οὐδὲν ἐπέρανεν (այսինքն Լուկուլլոս)։ Սակայն իրաց ընթացքէն միայն դատելով, մենք հոս բնաւ չենք գտներ, որ Տիգրանի պաշարումն ամառուան եղանակին ինկած ըլլայ. վասն զի Լուկուլլոս աշնան արեւադարձի միջոցներուն, որ է ըսել՝ Սեպտեմբերի վերջին երրեակին մէջ էր, երբ Հայաստանի ներս, նաչխարհէն եւ նահանջել սկսաւ։ Մենք հետեւաբար Տիգրանի պաշարման սկզբնաւորութիւնը Հոկտեմբերին սկիզբ ենք ընդունիլ, որ միջոցին այս երկիրին կլիման դեռ խիստ շատ տաք կ'ըլլայ[1]։ Հետեւաբար ոչ մէկ յաջողութիւն կրցած էր ձեռք բերել Լուկուլլոս Հոկտեմբեր ամսոյն մէջ, ցորչափ հայ պահակախումբին աշալուրջ կը հսկէր, եւ հետեւաբար կը պաշտպանէր քաղաքին պարիսպները։ Սակայն երբ գառնաշունչ ձմեռը մերձենալով քաղաքին վրայէն ցուրտ եւ փոթորկալից հովեր սկսան անցնիլ[2], պաշտպանուածները կարծեցին թէ այլ եւս ամէն վտանգ անցած է, եւ թէ Հռոմայեցիք առանց բան մը վճարած ըլլալու՝ իրենց պաշարումը պիտի վերցընեն եւ ետ քաշուին։ Այսպիսի ինքնախաբութեամբ սկսան պահակները տակաւ

---

1 Տես կերմանութեան աստիճանացոյցը Պրոֆ. Հայդերիխի Gesch. des alten Morgenlandes, էջ 33. ուր Մուշ ալ՝ որուն բարեխառնութեան աստիճանն, իբրեւ 180 ոտք. հեռաւորութեան մը վրայ գտնուող Տիգրանէ բնականաբար շատ չի կրնար խոտորիլ. Հոկտ. մէջ 22. 45 կ. ցոյց տրուած է։

2 Հմմտ. յաջորդներու մասին Կասիոս Դիոն, գիրք ԼԵ. գլ. 7 եւ Պլուտ. Լուկ. գլ. 32։

առ տակաւ իրենց պարտականութեանցը մէջ թերանալ։ Այս շատ նպաստաւոր պարագան դարձեալ չկրցաւ Համայեցւոյն ուշակալու աչքերէն, որ պատեհ առիթն առանց ձեռք է փախցընելու, փոթորկալից ու խաւարչտին գիշեր մը, երբ տիրող թանձր մթութեան ու անդադար անձրեւին պատճառաւ. քայլ մ'անդին չէր երեւար, ու բերդապահներէն շատերը՝ նոյն գիշերը Համայեցւոց կողմէ յարձակման մը սպասելով, իրենց կայանները լքած հեռացեր էին, Լուկուլլոս յանկարծ հրաման արձակեց իրեններուն՝ պարիսպներուն վրայ յարձակիլ խուռներամ։ Համայեցիք գրեթէ առանց նշմարուելու տիրացան արտաքին ամուր պարսպին, ուր քնացող պահակները սրախողխող սպաննելէ յետոյ՝ դէպի խորամը յառաջացան, որ զիրենք նեղ, ին կամ երկրորդ պարսպէն կ'անջատէր։ Հոս կամուրջները քանդուած գտան, որով խրամին մէկ կողմը մագլաններով ու ձիւղերով լեցնել սկսան, հանդիպակաց եզերքն անցնելու կարենալու համար։ Այժմ հասկցուեցաւ թէ որքան իրաւունք ունէր Լուկուլլոս, այսպիսի խաւարին ու անձրեւոտ գիշեր մ'ընտրելու։ Վասն զի երկրորդ պարսպին պաշտպաններուն լոյս օրով արձակած բուռն կրակին տակ մեծ կորուստով հազիւ թէ պիտի կարենային Համայեցիք խրամին հանդիպակաց կողմն անցնիլ. եթէ նոյն իսկ ետ մղուելով ընկրկելու չստիպուէին, ինչ որ շատ ալ անհաւանական չէր։ Այսպէս չարաղէտ գիշերուան մը մրրկամածին այդ աղջամուղջը, որով

*պաշարուած էր Մծբին, խափան եղաւ Հայ կո-րովաձիգ աղեղնաւորներու նշանառութեան, ու անոնց՝ թշնամիներուն վրայ անդադրուցած կրակը — Հաւանաբար Հրածորան կպրաձիւթ՝ ինչպէս Տիգրանակերտի պաշարման միջոցին, — անձրեւի կաթիլներուն տակ չիջաւ ապարդիւն։ Հռոմայեցիք առանց կորուստ մը ըրելու՝ անցան խրամը, եւ Համագունդ ու խուռներթաց յարձակմամբ տիրեցին նաեւ երկրորդ պարսպին, որ առաջնոյն չափ ամուր չէր։*

*Մծբինի անկումը, Տիգրանի՝ տարուեան շղթային Հարուածակողմն ունեցած այս վերջին բերդաքաղաքն եւս, բացի միջնաբերդէն, — ուր ապաստանած էին երկու Հրամանատարները՝ Խուրա եւ Կալլիմաքոս, — Լուկուլլոսի ձեռքն անցաւ։ Բախտի շարժման փոփոխման վրայ յոյսերնին դրած անոնք՝ երկար ատեն, բնականաբար, պիտի չկարենային դիմանալ Հոն։ Հետեւաբար Լուկուլլոսի դրած բոլոր պայմանները ընդունելով՝ անձնատուր եղան անպայմանս։ Խուրայի, Տիգրանի եղբօր Հանդէպ մարդասէր վերաբերմունք ցոյց տրուեցաւ Լուկուլլոսի կողմէ. սակայն Կալլիմաքոս, որուն դէմ անհաշտ ատելութեամբ լեցուած էր Լուկուլլոս, շղթայի զարնուեցաւ, առանց խիկ Հրամանատարէն ունկնդրուելու, արժանի Համարուելու, որուն թէեւ նա խոստացած էր թաքուն ապրանքի գանձերը ցոյց տալ։ Այս, բուն Պլուտարքոսի կարծեաց, պատիժն էր Կալլիմաքոսի, որ Ամիսոս քաղաքը Հրոյ ճարակ տալով, առիթ չէր ընծայած մարդասէրն Լուկուլլոսի*

քաղաքին յոյն բնակիչներուն հանդէպ իւր բա-
րեհաճ ու մարդասէր վերաբերմունքը ցոյց տայ։
Բայց թէ արդեօք այս էր խականն պատ-
ճառը, որուն համար այսպիսի անվայել ու անմար-
դի վարմունքի մը արժանացաւ Կալլիմաքոս, թէ
այսու յագուրդ տուած եղաւ Լուկուլլոս իր վրի-
ժառու զգացման, շղթայի զարնել տալով զօրա-
վար մը, որ զինքը — այլուստ մեծա բախտաւոր
եղող հրամանատար մը, — երկիցս կասեցուցած
էր իւր յաղթանակ ընթացքին մէջ, նախ Ամի-
սոսի առջեւ, եւ յետոյ այժմ ալ Մծբինի պա-
րիսպներուն շուրջ, իւր ճարտար ու անվեհեր
պաշտպանութեամբն այս երկու քաղաքներուն։
Այս խնդիրը վճռական կերպով կը լուծուի Պլու-
տարքոսի իսկ վկայութեամբ։ Նա 19րդ գլխուն
մէջ բացորոշապէս կ'ըսէ, թէ Կալլիմաքոս իւր
հերոսական դիմադրութեամբը Հռոմայեցւոց մեծ
վնաս պատճառած էր, որուն համար նա յետոյ
իրեն արժանի պատիժը գտաւ (ὧν ὕστερον
ἔδωκε δίκην)։ Դիտումնաւոր հրկիզման մը խօսքը
միայն ինքը կ'ընէ։ Եթէ երբեք Կալլիմաքոս այդ-
պիսի ծայրայեղ միջոցի մը դիմած էր, զայդ,
ապահովաբար, իւր նահանջող բերդապահ գուն-
դին պաշտպանութեան համար կրնար ըրած ըլ-
լալ. բան մը՝ որ շատ ալ բնական է, ու հետե-
ւաբար դիւրաւ արդարանալի։ Սակայն նոյն ինքն
Պլուտարքոսի՝ վերոյիշեալ նոյն գլխուն մէջ տու-
ած անդրադարձն անեղեկութիւններէն բացորոշ կը
տեսնուի, որ բուն իսկ Հռոմայեցիներն էին
գլխաւոր պատասխանատու հրկիզման քաղաքին.

եթէ ոչ դիտմամբ՝ այլ գոնեայ անուշադրու-թեամբ, կատարուած կողոպուտի միջոցին[1]:

Հոս եւս ահա բացայայտ կը շեշտուի Պլու-տարքոսի՝ իր պատմութեան հերոսը պանծացը-նելու ձգտումը, որ կը ջանայ անոր քինայոյզ նախանձախնդրիր այս արարքն իբր արդար պատիժ որակել. առանց սակայն մեզ գծելու որ նա այսու ինքնիրեն հակասած կ'ըլլայ.

Գրաւուած քաղաքէն առատ ինկած աւարու-պաշարը թոյլ տուաւ Լուկուլլոսի իր ձմեռոցը կրկին հաստատել հոն, ուր նա, նախորդ տարին, դադար առած նստած էր. այն տարբերութեամբ, որ այս անգամ՝ Տիգրանի երկու եղբայրներուն վրայ ալ բանակեցաւ, այսինքն գրաւուած Մծբինի ու բարեկամ՝ Կորդուաց երկրին մէջ:

Միգդոնացւոց մայրաքաղաքին առումը, որ վերջին յաղթութիւնն եղաւ Լուկուլլոսի, կարելի է վերջաւորութիւնը նկատել նաեւ անոր հայ-կական արշաւանքներուն: Այս յիշատակելի դէպ-քին յաջորդող խռովարարութիւնք՝ Լուկուլլոսի համար պարզապէս ձախողանք եղան ու ծանր յուսախաբութիւնք, որով նա իր տարիներու ընթացքին մէջ աշխարհակալած հողամասերը, համեմատաբար շատ կարճ ժամանակամիջոցի մը մէջ մին միւսին ետեւէն դարձեալ թշնամիին թողուլ ստիպուեցաւ, վասն զի նախ՝ չյաջողեցաւ իր ըմբոստ զինուորներուն սէրն ու վստահու-թիւնը վերաշահիլ, եւ երկրորդ՝ չկրցաւ հասնի

[1] Հմմտ. Նաեւ. Աղբատուր, Պատմ. Հայոց. Դ. 51:

մէջ իրեն ոխերիմ՝ հակառակորդ կուսակցու-
թեան հանած հզօր հոսանքին դէմ մաքառիլ,
որ ամէն ապօրէն միջոցներով ջանահնար կ'ըլլար
իւր տապալումը փութացնել:

Արդ, որովհետեւ յաջորդ տարիներու մէջ
տեղի ունեցող պատերազմներու թատերաբեմը
Հայաստանի հողէն դուրս՝ կրկին ի Պոնտոս կը
փոխադրուի, այս պատճառաւ մենք ալ հոս վեր-
ջակէտ կը դնենք մեր ներկայ ուսումնասիրու-
թեան զուտ պատմական բաժնին:

---

## Գլուխ Ջ.

*Տեղագրական մաս երկրորդ տարւոյ*
*պատերազմներուն եւ զօրաշարժերուն:*

### I.

*Մշոյ դաշտավայրը:*

Երբ ես 68 Դ. տարւոյն զօրաշարժերուն եւ
պատերազմական գործողութիւններու այս եր-
կրորդ մասին զուտ տեղագրական նկարագրու-
թեանն սրտիւ կ'անցնիմ, բնաւ յոյս մը չունիմ,
թէ պիտի կարենամ անսխալական արդիւնք մը
ձեռք բերել. Ինչու որ, ինչպէս արդէն կանխաւ
ըսեր էի, այս երկրորդ տարւոյ դէպքերու մասին
խօսող մեր բոլոր աղբիւրները մերձաւորապէս խիստ
բաւարար չեն առ այդ: Մեր ունեցած տեղեկու-

թիւ դրական անցեալութիւններն եւ անցերու-դիրքերը, այնպէս ինչպէս կը ներկայացընեն մեզ ուղեգիրները, մի առ մի քննելէ յետոյ միայն կարող ենք լոկ ենթադրաբար ընդունիլ այն ինչ որ մեզ ամէնէն աւելի հաւանական կը թուի։

Արդ, որպէս զի Լուկուլլոսի հետեւած ուղին որոշ չափով մը գծել կարենանք հոս պէտք ենք նախ՝ որոշակի գիտնալ թէ ուսկէ սկսաւ նա իւր չուն (մեկնակէտը), եւ երկրորդ՝ թէ ուր ժամանել էր իւր նպատակակէտը։ Այս երկու կէտերը կանխաւ որոշելէ յետոյ միայն կարող ենք մի առ մի հետապնդելու ելնել այն բոլոր հնարաւոր ճամբաները, որոնց վրայէն կարող էր իւր բանակը շարժած ըլլալ Լուկուլլոս։ Դարձեալ, զօրաշարժերու եւ ընդհարումներու անցուդութեան չափերը, եթէ անոնք ցոյց տրուած են մեր աղբիւրներու մէջ, մեծ արժէք կրնան ունենալ խնդրոյ առարկայ եղող ճամբաներու ստուգութեան համար։

Լուկուլլոսի մեկնակէտի մասին ըսելիքս նոյն է, ինչ որ վերեւ, Մշոյ դաշտին վրայ տեղի ունեցած կռիւներու եւ զինուորական գործողութիւններու նկարագրութեանս առթիւ ըսեր էի արդէն։ Լուկուլլոս, ինչպէս վերը տեսանք, այն դաշտավայրին հասաւ Նփրկերտի կիրճին վրայով, եւ Հաւանականագոյնս Օգոստոսի առաջին օրերուն։ Ասոր յաջորդեցին յետոյ բազմաթիւ, սակայն համակ ապարդիւն յառաջամարտիկ կռիւներ երկու հայ գումարտակներու՝ Միհրդատի Հեռաւորագոյնեայ ու Տիգրանի հեծելագունդե-

րու գէմ, որոնց հետեւանքն եղաւ Մշոյ դաշտին աւերումն ու հայ բանակի շահամարտներուն գրաւումը։ Հաւսկ յետոյ, պատերազմները դադրեցան Միհրդատեան ճամբարին պաշարմամբն ու Տիգրանի օժանդակ հեծելագունդերու Հռոմայեցիներն ի բաց վանելու փորձովը, առանց սակայն հոն եւս որոշիչ ճակատ մը գալու։

Մոմզէն[1] այս ամէն կռիւները անհաճոյ փորձեր մը կը նկատէ հռոմէական բանակին խաղացքը կասեցնելու, որ թէեւ այսու դանդաղ ընթացք մը կ'առնու, սակայն միշտ ալ յառաջ կը շարժի։ Նա համակարծիք չեմ կարող ըլլալ այսպիսի ենթադրութեան մը։ Պատերազմներու առաջին շրջանին մէջ Լուկուլլոս դիտաւորութիւն ունեցած չէր երբեք Արտաշատի վրայ քալել։ Նա այն ատեն միայն ստիպուեցաւ այս նոր ծրագրին դիմել, երբ տեսաւ թէ այլապէս անհնար էր Հայերը ճակատ տալու ստիպել, որ կարենար որոշիչ ճակատամարտի մը մէջ անոնց զինուորական ույժը վերջնականապէս զարնել խորտակել։ Բայց այլ եւս շատ ուշ էր, մանաւանդ թէ, ինչպէս վերեւ տեսեր էինք, չափազանց խիստ ուշ։ Հետեւաբար այս ամէն կռիւներն ոչ թէ յառաջխաղաց արշաւանքներ էին, այլ՝ ընդհակառակն, անդրադիր յետանյառաջ խաղացումներ Հռոմայեցւոց, որոնք որոշ ծրագրի մը համաձայն նահանջող թշնամին հետապնդել կը ջանային ի զուր. ու երբ այս փորձն եւս ձախողե-

1 Röm. Gesch., S. 75. (Հմմտ. Հայոց նախնական պատմութիւնը ըստ Մովսէսի, էջ 19։)

ցու, այն տանն միայն երկրորդ զօրաբանակին վրայ դրոշ տուին, առանց սակայն, այս անգամ՝ եւս, ոեւէ չօշափելի արդիւնք մը ձեռք բերել կարենալու. բայց, ինչպէս տեսանք, երկիրը քանդելէ ու շտեմարաններու մէջ համբարուած հարուստ մթերքը յափշտակելէ։ Այս սակայն, իմ կ'ըմբռնմամբ, Հռոմէացւոց համար ողջմտութիւրէն յառաջխաղացութիւն մը չէր կրնար նշանակել։ Ի հարկէ, երբ Աշոյ ընդարձակ գաւառագետինն ամայացուեր եղաւ, ճակատամարտէն հեռացնելէ դէպի Շատախի բարձունքը փոխադրուեցաւ, ուր մթերք ու առատութիւն անվթար մնացած էր։ Մենք սակայն այս կարգի տեղափոխութիւնները չենք կարող ծրագրեալ յառաջխաղացութիւններ նկատել։

Իմ կարծիքս, թէ միհրդատեան ճամբարին պաշարում մը յանկարծ Աշոյ գաւառաբանին վրայ չէր կրնար աւելի ունեցած ըլլալ, կը հաստատէ Ապպիանոսի[1] վկայութեամբը, որուն համաձայն պոնտացի արքայն իր զօրաբանակը ἐπὶ λόφου (= բլրան մը վրայ) կենդրոնացուցած կ'ըլլայ, ինչ որ բնականաբար յարձակողին դիւր մը կ'ենթադրէ ըլլալ ամրացեալ ճամբարի մը համար։ Այդպիսի բլուր մը սակայն, որ բառ բացականի ընդարձակ եւս եղած ըլլալու էր յաճախագունդ բանակի մը իբր բանակատեղի ծառայելու, բառ Բելքի[2], ո՛չ ուրիշ կարելի է գտնել

[1] Mithr. c. 87.

[2] Zeitschr. für Ethnologie, XXXI (1899), S. 663.

Մշոյ դաշտին վրայ, զոր նա "առանց ամենադոյզն բարձրաւանդակին՝ սեղանի մը նման միահարթ" կ'որակէ։ Հոն անեանուած բազմաթիւ բոլորակաձեւ թումբերը կամ բարձրացուած հողակոյտերը պարզապէս հին Հայոց արքայական գերեզմաններ կը համարի նա, որոնք, ի հարկէ, բացարձակապէս չէին կրնար իբր բանակատեղի ծառայած ըլլալ բազմաձեռն բանակի մը։ Եւ որովհետեւ նա մէկ խօսքով "դաշտագետնին բազմաթիւ հարաւակողման եզերքներն իբր հաւաքավայր կամ բանակատեղի ծառայելու ընդունակէն բոլորովին անյարմար կը նկատէ", մեզ կը մնայ ուրեմն Միհրդատի բանակեալը "հիւսիսային եզրալերանց լայնատարած հովիտներէն միոյն" մէջ կամ թէ նոյն իսկ վրան որոնել[1]։ Շատախի այս լեռնաշղթաները Ռեւքի նկարագրութեան համաձայն՝ "բազմաթիւ զուգահեռագիծ լեռնաշղթաներէ կազմուած են՝ շարունակ բարձրութեամբ լեռնաշարերով, որոնք լայնանիստ ուղաձեւ հովիտներով իրարմէ կ'անջատուին, անեղխա առ ի չեղ ընթացող ձորերէ ընդհատուած"։ Այս լեռնաղներու վրայով ընթացող լեռնանցքը դէպի Սիղի փոքրիկ դաշտավայրը, եւ անկէ դէպի աւելի հիւսիս Բուլանըխի աւելի ընդարձակ դաշտավայրը մանաւոր դժուարութիւն մը չի ներկայացըներ, եւ "հնար է անկէ բաղձացուած ուղղութեամբ երթալ անարգել"։ Հետեւաբար ես անպատեհութիւն մը բնաւ չեմ

[1] Ընդ. էջ 662։

առնենք, եթէ մենք Միհրդատի ճամբարին այս բլրաշղթաներէն միոյն վրայ, մերձաւորապէս Լիզ գիւղին քովերը կեդրոնացած ընդունինք, որով միանգամայն Լուկուլլոսի զօրաշարժին մեկնակէտն եւս մերձաւորապէս որոշուած կրնանք համարել։

2.

*Խաղացք Հռոմէական բանակին դէպի Արածանիոյ աւազանը։*

Լուկուլլոսի այս զօրաշարժին նպատակակէտն էր ուրեմն Արտաշատ, Հայաստանի երկրորդ մայրաքաղաքը, որ Երասխի հովիտը զետեղուած էր, եւ որուն դիրքն ու շինութեան ոճը նկարագրած է մեզ Ստրաբոն[1]։ Եւ աւելորդ կը համարիմ Արտաշատի ճիշդ դիրքին մասին հոս ընդարձակօրէն խօսիլ, ան քիչ շատ ծանօթ է մեզ. Քաղաքը կը հանգչէր Երասխի միջին ընթացքը կազմող Զանգու (Հրազդան) եւ Վէդի գետերուն բերաններուն մօտերը։ Եւ այսքանն արդէն լիովին կը բաւէ մեզ հռոմէական բանակին հետեւած ճամբաները մանրամասնօրէն հետազօտելու, վասն զի այն վերոյիշեալ գետերն իրարմէ գրեթէ 20 քմ. հեռաւորութեամբ միայն Երասխի ջուրերուն կը խառնուին[2]։

---

1 XI, 14, 6 (529).

2 Հնախոյզ գիտուններէ ոմանք այժմեան Գառնի գետին քովի Արտաշար գիւղը նոյն կը համարին Նախկին Արտաշատի հետ, ինչ որ, եթէ ոչ բոլորովին սաղդ, շատ ալ հաւանական է։ Տես այս մասին աւելի ընդարձակ Lehmann-

Արտաշատի գրաւած այս դիրքը սակայն բացէ ի բաց կը մերժէ Նփրատ-Արածանիի վրայով Լուկուլլոսի անցքին ու միանգամայն Արածանիոյ ճակատամարտին թատերաբեմը Մելազկերտի քով — ուր զայն կը փոխադրէ Ռայնախ[1] — անդի ունեցած ըլլալու ենթադրութիւնը։ Այն ուղին, որ Մելազկերտէ սկսելով՝ Նփրատէ կ'անցնի, Կոլուշլուի՝ և աւելի անդին Կինիչի կամ Գէօկ-սուի վրայով դէպի Հասանկալա կ'երկարի, ու կը յանգի Երասխի վերին ընթացք, ը. այս ուղին շատ պիտի յարմարէր եթէ Արտաշատն այն կողմերը փնտռել սխալուած ըլլայինք։ Այլապէս, այս ճանապարհին գործածութիւնը, մեր կարծիքով, բոլորովին անիմաստ ձեռնարկ մը եղած պիտի ըլլար, և ռազմագիտօրէն անմեկնելի մանուածապատ շրջան մը։ Մելազկերտի անցքարանէն անդին, Նփրատի աջակողմեան եզերքը, ուրիշ ոևէ ճամբայ նշանակուած չգտնուելով Կիպերտի քարտէսին վրայ, կ'երևի թէ նա բնաւ գոյութիւն ունեցած չէր։

Հոս, այս անուղին վրայ ճակատ մղուած ըլլալու ենթադրութեան դէմ, մեր յառաջ բերած վերոյիշեալ պատճառներէն զատ, կան նաև երկու կարևոր առարկութիւններ. նախ՝ Արտաշատի մեծ հեռաւորութիւնը, որ ենթադրութիւնն ես իմ վերը յառաջ բերած փաստերովս հերքած ու ջրած ըլլալ կը կարծեմ, և երկրորդ՝

Haupt, Armenien einst und jetzt, I, էջ 178 և շարունակութիւն։

[1] Անդ. էջ 366. ծնթ.

այս կէտին հաւակացութիւնը վերջին պատե-րազմներու թատերաբեմն, ինչ որ միհրդատեան ճամբերին պաշարման հետ չէ կարելի միաբա-նել։ Հետեւաբար, պէտք ենք, Պլուտարքոսի[1] համաձայն, հետեւակագունդ զօրաց առ նուազն չորեքօրեայ գնացքի հեռաւորութիւն մ'ենթա-դրել երկու կէտերու. համար եւս, թէեւ վարը պիտի ջանամ փաստացիօրէն ապացուցանել, որ այդ հեռաւորութեան սահմանը ենթադրուա-ծէն շատ աւելի ընդարձակ եղած ըլլալու էր։ Չորեքօրեայ գնացք մը, եթէ օրական միջին հա-շուով միայն 20 քլմ. դնենք, մօտաւորապէս 75 քլմ.ի հեռաւորութիւն մը կ'ենթադրէ։ Ըն-հնար է յետոյ ընդունիլ, որ Լուկուլլոս թշնա-միներուն հետապնդումն այնքան թուլացուցած ըլլայ, որ անոնք ի վերջոյ յաջողած ըլլան զինքը կանխել ու մինչեւ իսկ իրեն ընդդիմադրել։ Յա-մենայն դէպս ասոր մէջ մեքենայութիւն մը կա-րելի էր թէ նշմարուէր՝ լարուած Հայոց դէմ, զանոնք ճակատի հրապուրելու, եթէ երբեք նա գետէն անցքն արգիլուած ըլլար. եւ սակայն այսպիսի ենթադրութիւն մը հաւանական չեմ գտներ։ Պէտք չէ մոռնալ Միհրդատի նենգայու-թիւնը, որ իւր հետեւակազօրաց կարող էր, ա-ռանց դժուարութեան, ճակատամարտին մաս-նակցիլ։ Վերջապէս իրերու այս կերպ դասաւո-րումով. բանակատեղւոյն վրայ մղուած կռիւնե-րուն թատերաբեմը կրկին Մշոյ դաշտը առ-նուած պիտի ըլլայինք փոխադրել, ինչ որ մենք

[1] Luc. c. 31.

տարամերժներ էինք վերեւ։ Եթէ վերին Երասխի հովիտը Հայաստանի էր նպատակը Լուկուլլոսի, Մուշէ սկսեալ՝ Կերասիի վրայով դէպի Կինիչ բացուող այնպիսի հեշտ եւ մերձաւոր ճամբայ մը պիտի ունենար նա իւր առջեւ, որ բոլորովին անիմաստ բան եղած պիտի ըլլար, եթէ զայն լքէր, ու Մելագկերտի վրայով չուել Նախիջեւանէր։ Իսկ եթէ Լիզ գիւղն ընդունինք բանակատեղւոյն վրայ մղուած կռիւներու իբր մերձաւոր թատերաբեմ, այդ պարագային յամբագնաց ընթացքով չորս օրուան զօրաչուի պէտք պիտի ըլլար մինչեւ Արածանի։ Յաւելունք ասոնց վրայ սա պարագան ալ, որ Մելագկերտի քով Եփրատ ա՛յնքան անկաւաջուր եւ անանցանելի եղած ըլլալու էր, որ, Ինչպէս Պլուտարքոսի տուած նկարագրութենէն կ'ենթադրուի, Լուկուլլոս կրցած կ'ըլլայ, առանց դժուարութեան, իւր բանակը ճակատ կազմած գետէն անցընել։ Ուստի եւ այս ամէն պարագաները ցոյց կու տան, որ մենք ճակատամարտին վայրը Արածանիէն անդին, աւելի հեռուները պէտք ենք որոնել։

Հոն Հասնիլ կարենալու Համար, Կիպերտի քարտէսին Համաձայն, Լիզէ մինչեւ Մելագկերտ մէկ, իսկ անկէ անդին զանազան ուղղութեամբ երկու տարբեր ճամբաներ կը բացուին մեր առջեւ։ Այս վերջիններէն միայն մէկը խնդրոյ առարկայ կրնան ըլլալ հոս, վասն զի անոնք ուղղակի Արածանւոյ վրայէն կ'անցնին[1]։ Մին Եփրատ-

[1] Plut. Luc. c. 31: Arsanias, ὃν ἐξ ἀνάγκης διαβητέον ἦν τοῖς Ῥωμαίοις τὴν ἐπ' Ἀρταξάτων πορευομένοις.

Արածանիայ գետաձորին կամ Մուրադ-չայի եր-
կայնութեանը եւ Ալա-դաղի (= Ծաղկաց լ.)
արեւմտեան ստորոտէն դէպի Կարաքիլիսա կ'ա-
ռաջնորդէ, մինչ միւսը՝ նոյն լերան արեւելեան
կողմէն դէպի Դիադին կ'երկարի։ Երկու վայրերն
ալ վերին Եփրատի վրայ կը գտնուին, ու գե-
տին այժմու ամփոփական անցարաններն կը կազ-
մեն, իրարմէ 60 քլմ. հեռաւորութեամբ[1]։ Առա-
ջինը Մելազկերտէ սկսելով 90 քլմ. է, իսկ եր-
կրորդը՝ 120 քիլոմեդր։ Երկուքն ալ օրոգրու-
թեան ու դիւրագնացութեան տեսակէտով հա-
մանման են իրարու։ Հետեւաբար անոնց հան-
գամանքէն դատելով՝ անհնար է ստուգել թէ
այդ երկուքէն որո՞ն նախապատուութիւն կրնար
տուած ըլլալ Լուկուլլոս։ Զայս որոշել կարենա-
լու համար պէտք էնք հոս նկատի առնուլ մեր
աղբիւրներու մէջ նշանակուած ժամանակի յի-
շատակութիւնները։

Առ այս ամենայարմար ու մեր ներկայ
խնդրոյն միմիակ դիպուած յիշատակութեան մը կը
հանդիպինք Պլուտարքոսի քով՝ իր 31րդ գլխուն
հետեւեալ տողերուն մէջ. Ἐπὶ ταύτην (= Ար-
տաշատ) τοῦ Λουκούλλου βαδίζοντος οὐκ ἠνέσχε-
το Τιγράνης ἀλλὰ τὴν δύναμιν ἀναλαβὼν ἡμέρᾳ
τετάρτῃ παρεστρατοπέδευσε τοῖς Ῥωμαίοις, ἐν
μέσῳ λαβὼν τὸν Ἀρσανίαν ποταμόν… (= Մինչ

(= … զԱրածանի գետ, ընդ որ հարկ իսկ էր անցանել Հռովմայեցւոց առ ի խաղալ գնալ յԱրտաշատ)։

1 Յաջորդ թիւերը կլոր հաշուով նշանակուած են Հ. Կիպերտի քարտէսին վրայէն առնուելով։

յայս քաղաք (յԱրտաշատ) դէմ եղեալ գնայր Լուկուլլոս, Տիգրան ոչ եւս կարէր հանդարտել, այլ չու արարեալ խաղայր ամենայն զօրութեամբ իւրով, եւ յաւուրն չորրորդի բանակէր յայնկոյս գետոյն՝ յանդիման Հռոմայեցւոց...)։ Այս վկայութեններն բացայայտ կը հասկըցուի, որ Տիգրան իւր գրոհէն շատ օր յետոյ հեռահաս կ'ըլլայ Հռոմայեցւոց, ու դէմ յանդիման անոնց, Արածանւոյ գետոյն եզերքը բանակ զարկած կը նստի։ Հոս, ամէն բանէ յառաջ, սա կէտը ստուգուելու կարօտ է, թէ արդեօք Լուկուլլոսի զօրաշուն Տիգրանի գրոհին հետ միաժամանակ տեղի ունեցած էր, թէ՞ ոչ։ Ընդդիմամարտ երկու զօրաբանակներու Արածանւոյ քով հանդիպը կ'երեւի թէ միաժամանակ տեղի ունեցած է. մանաւանդ թէ Տիգրան սակաւ ինչ ուշացած ըլլալու է, որ Պլուտարքոս այսպէս մասնաւորաբար կը շեշտէ անոր՝ Հռոմայեցւոց դիմաց բանակած ըլլալուն պարագան։ Այս կ'ենթադրէ անպատճառ, որ Հռոմայեցիք արդէն Արածանւոյ քով հասած ըլլալու էին, եւ իրենց բանակեղին կառուցման սկսեր, եւ կամ թերեւս աւարտեր՝ վերջացուցեր իսկ էին զայն։ Հակառակ պարագային Պլուտարքոս անշուշտ պիտի ըսէր, թէ Տիգրան Հռոմայեցւոց կը սպասէր, եւ կամ թէ Հռոմայեցիք Տիգրանի դիմաց բանակեցան։ Այդ միեւնոյն վկայութեամբ ալ տեղի չի ձգեր ենթադրելու, թէ Լուկուլլոս շատ աւելի կանուխ հասած ըլլալով՝ ստիպուած էր մէկ կամ քանի մը օր սպասել Տիգրանի գալստեան։ Հետեւա-

բար երկու զօրաբանակներուն եւս Արածանւոյ քով ժամանումը կարող էնք իբր միաժամանակ տեղի ունեցած նկատել, ու Հայ բանակին քանի մը ժամ ուշացած ըլլալուն պարագան, իբր աննշանակ դէպք մը, հաշուի չառնուլ։

Բայց ասոր, որովհետեւ Տիգրանի կիսարաժինը միմիայն այրուձիէ կը բաղկանար, կը հետեւի որ նա՝ Համայեցւոց, իրենց հետեւակներովն ու աղխովը միասին, կարել կրցած ճամբուն կրկինը կարող էր հեշտիւ կարել անցնիլ նոյնքան ժամանակամիջոցի մը մէջ։ Նոյն իսկ եթէ երկու բանակներու ժամանումը միաժամանակ տեղի ունեցած ըլլար, կը նշանակէ թէ Տիգրան կամ կրկնապատիկ ճամբայ կարած էր, եւ կամ թէ ժամանակին կէսը միայն գործածած. հետեւաբար, եթէ Տիգրան չորեքօրեայ ճամբայ կարած էր՝ Լուկուլլոսէ չորս օր յետոյ միայն կրնար ճամբայ ելած ըլլալ։ Հօս եւս ահա աներկբայօրէն ի դէպ կու գայ երկու ծայրայեղներու միութիւնը, ինչ որ յաջորդ տողերուս մէջ կը յուսամ թէ պիտի կարենամ ապացուցանել։

Շաբաթներ տեւող յետսեւյառաջ խաղացումներէ յետոյ, վերջապէս Լուկուլլոս՝ որոշիչ ճակատի մը գալու նպատակաւ, Միհրդատն իր ճամբարին մէջ կը պաշարէ. ասոր վրայ Տիգրան իր բանակը յառաջ կը շարժէ Համայեցւոց թիկունքին սպառնալով։ Ի պաշտպանութիւն իր գունդին՝ Լուկուլլոս թշնամւոյն վրայ իր հեծելազօրը կ'արձակէ։ Տիգրան այս անգամ եւս ա-

ռանց սուրը պատեանէն հանելու եւս կը քաշուի, սակայն չի դադրիր Հռոմայեցիները նեղելէ։ Այս դէպքին վրայ Լուկուլլոս այդ յանդուգն որոշումը կու տայ՝ թշնամին իւր կռնակը թողլով, անոր երկրորդ մայրաքաղաքին վրայ քալել։ Բայց որովհետեւ Տիգրան իւր բանակովը հռոմէական բանակատեղիէն շատ հեռու կը գտնուէր, — վասն զի Լուկուլլոս չէր թողուր անոր իրեն մօտենալ[1], — ընտկանապէս երկար ժամեր անցած ըլլալու էին, մինչեւ որ Տիգրան Հռոմայեցւոց նահանջին մասին տեղեկութիւն առնուլ կարենար։ Նա սակայն անանց խոհական դիտաւորութեանն այն ատեն միայն կրցած կ՚ըլլայ վերահասու ըլլալ, երբ անոնք քանի մը օրուան ճամբայ յառաջացած էին արդէն Արտաշատի ուղղութեամբ։ Ցորչափ Լուկուլլոս դեռ իւր բանակը յառաջ շարժած չէր, կարող էր Տիգրան շատ բան իւր մտքէն անցընել ու նախատեսել իսկ շատ մը անակնկալներ. սակայն նա չէր կրնար երբեք գուշակել, որ Լուկուլլոս առանց կարեւորութիւն ընծայելու հայ բանակին անսպառ ուժին, կարող ըլլար անյուր յանդգնութիւնն եւս ունենալ Հայաստանի խորերը մխրճուելու. կանխապէս տեսնելէ հոգը մանաւանդ Հռոմայեցւոց շարունակական յետսեւյառաջ խաղացումները։

Մինչդեռ հռոմայեցի զօրավարն Արտաշատի վրայ անարգել կը յառաջանար (βαδίζοντος), Տիգրան իւր մայրաքաղաքին մասին մտա-

1 Appianus, Mithr. c. 87: ἀρίστους τῶν ἱππέων προύπεμψε προσωτάτω συμπλέκεσθαι τῷ Τιγράνῃ.

տանջուելով՝ մեկ կէսի վրայ կը կեդրոնացընէր իր հեծելազօրը, զոր անտարակոյս իրարմէ հեռու անջատ խումբերու բաժնած էր. վասն զի անտած էր փորձով, որ համախումբ գրոհով չէր կրնար Հռոմայեցւոց շատ մեծ վնաս հասցընել։ Այս եւս ահա բաւական ժամանակ կորսնցընելէ յետոյ՝ վերջապէս հետահաս կ'ըլլայ Հռոմայեցւոց, անոնց դէմ իր մայրաքաղաքը պաշտպանելու։ Այս ամէն պարագաները կշռելէ յետոյ, մենք Լուկուլլոսի համար երկու օրուան յառաջապահութիւն կրնանք ընդունիլ. վասն զի երբ անոր այս զօրաշունին ու անոր խակական նպատակին առոյգ լուրը Տիգրանի ականջը կը հասնի, հաւանաբար երկրորդ օրուան առաւօտը ծագած էր, կամ թէ նոյն իսկ առաւօտեան մօտ էր։

Արդ ուրեմն, ենթադրելով որ Հռոմայեցիք իրենց այս շուքին համար ամենակարճ ճամբան կ'ընտրեն, կը հետեւի թէ Հայք՝ զանոնք յառաջելու համար, խոտորնակի ճամբով երկայն շրջան մ'ընել ստիպուած կ'ըլլան. վասն զի, բնական է որ, հալածելու համար, ինչպէս Լուկուլլոս, միեւնոյն ճամբան միայն հնար էր գործածել, բայց ոչ՝ եթէ յառաջել կամ առաջքն առնուլ էր իրենց կէտ նպատակին։ Դիւրին է այլ եւս երկու զօրաբանակներու արագընթացութեան տարբերութիւնը՝ հեծելազօրաց ընթացքին երկարագոյն ճանապարհովն ու նուազագոյն ժամանակամիջոցովն իրարու այնպէս միարանել, որ, ի վերջոյ, երկու Հակառակորդ կողմերը միաժամանակ նոյն կէտը ժամանած ըլլան։ Եւ երբ

ռազմադաշտին քովէն երկու հաւասարապէս դիւրագնաց ճամբաներու դէպի Արտաշատ վերին հովիտն երկարելը կը տեսնենք, սխալած չենք ըլլար, եթէ ենթադրենք որ զօրաբանակներէն իւրաքանչիւրն իրեն առանձին ճամբայ մ'ընտրած ըլլալու էր։ Կը մնայ մեզ այժմ ստուգել, թէ որ ճամբով կարող էին քալած ըլլալ Հռոմայեցիք։

Այս վախճանաւ պէտք է նախ տեսնենք թէ Հռոմայեցիք մերձաւորապէս որքան ճանապարհ կրնային կտրած ըլլալ։ Այս նկատմամբ կրնայ մեզ նպաստել Քսենոփոնի Բիւրուն Նահանջը, որ Ա. գրքին առաջին հինգ գլուխներուն մէջ իւր չուի մասին այնքան բազմապիսի տեղեկութիւններ կը հաղորդէ, որ յոյն ու պարսիկ միացեալ բանակներուն միջին արդիւնքը կարող ենք նոյնին միջոցաւ մերձաւորապէս ճշդել, Եւ որովհետեւ, գլխաւորապէս այս վերջինները ըստ արեւելեայց սովորութեան, շատ աղխ մասին կը կրէին, բնականաբար չէին կարող արտակարգ արագութեամբ յառաջ խաղալ, նոյն իսկ եթէ Կիւրոս ստիպուած ըլլար իւր բանակին ընթացքը կարելի եղածին չափ փութացնել։ Այսպէս չէր սակայն յոյն վարձկանազօրը, որ իւր սպառազինութեամբն ու տոկունութեամբը հռոմէական լեգէոնականներուն գրեթէ կը հաւասարէր։ Հետեւաբար արդիւնքը կարող ենք երկուքին համար եւս նոյն նշանակել, որով կ'ունենանք՝ 22 օթեւաններով 80 չուական օր, որոնց միջոցին 502 հրասախ երկարութեամբ

ճամբայ կտրուած կ'ըլլայ[1]։ Հետեւաբար, իւրաքանչիւր օրուան վրայ կ'իյնայ հաշուով 6 հրասախ, կամ մէկ հրասախը 5,4 քիլ.[2] հաշուելով, կ'ունենանք միջնաւորապէս 32 քիլ.։ Եթէ նկատողութեան առնունք որ միահարթ դաշտագետնի վրայէն Յոյներն օրական մինչեւ 54 քիլ. ճամբայ կը կտրէին[3], մինչդեռ Հռոմայեցիները գրեթէ միշտ զինուորական ճամբաներէ ապահովուած ըլլալով անցնելով, եւ առանց իսկ օր մը գանէ անհրաժեշտ դադարն առնել կարենալու՝ շարունակաբար քալելով՝ հազիւ թէ կարենային միջին հաշուով օրական 25 քիլ. ճամբայ կտրել։ Բայց որովհետեւ մենք, ինչպէս վերը տեսանք, Հռոմայեցւոց համար վեցօրեայ չու ենթադրեր էինք, հետեւաբար պէտք էին առնենք այդ հաշուով միջնաւորապէս 150 քիլ. ճամբայ կտրուած անցած ըլլալ։ Եթէ աւելի Հայաստանի քարտէսն աչքէ անցընենք, հոն պիտի տեսնենք որ Լիզէ մինչեւ Արեղազկերտ 50 քիլ., անկէ մինչեւ Կարքաթիկոս 90 քիլ. եւ մինչեւ Դիադին 120 քիլ. է։ Ուրեմն այս երկու ճամբաներէն մին՝ ընդ ամէնը 140 քիլ. է, իսկ միւսը 170 քիլ.։ Առաջնոյն երկայնութիւնը մեր հաշուոյն ճշգիւ կը համապատասխանէ, մինչդեռ երկրորդին համար օրա-

---

[1] Քննուած է մինչեւ I, 5, 5 (մինչեւ Πύλαι).

[2] Համմ. Լեման-Հաուպտի Kongressvortrag (հատ. Թ., էջ 400, ծնթ.) արդիւնքը, ուր ճշգրտապէս 1 հրասախ — 30 "օլիմպիական" ստադիոն, իւրաքանչիւր ստադիոն 600 ոտնաչափ — Հռոմէական ոտք հաշուով, որ ըսել է — 5,3586 քիլ.։

[3] Անաբ. I, 2, 11։

կան 30 քլմ. չու կը պահանջուի։ Սակայն, 6 օր անցած այսպիսի չու մը, ու անոր անմիջական կերպով յաջորդող ճակատամարտ մը մարդկային չափազանց ճիգ ու տոկունութիւն պիտի պահանջէին[1]։ Հետեւաբար, երկայնութեան տեսակէտով, Եփրատի հովտին երկայնութեան բացուող ճանապարհը միայն, զոր Ռեկլիւ[2] «հարթ ու համեմատաբար աւելի դիւրագնաց» կ'անուանէ, հոս մեր քննութեան առարկայ կրնայ ըլլալ։

Մեր վարկածին թեր կ'ելլէ ուրիշ պարագայ մը եւս. այս է՝ Արածանեայ կամ Մուրադ-չայի ափերուն հանգամանքը՝ երկու ճամբաներու բերաններուն մօտ, Կարաքիլիսայի ու Դիադինի քովերը։ Այս մասին Ռեկլիւ[3] կը տեղեկացնէ որ Եփրատի յանկարծ դէպ արեւմուտք շեղումէն յետոյ, ուր նա դէպի հարաւ տարածուող լեռնակողերն ընդմիջելով՝ իրեն ճամբայ բացած կը սուրայ, «իր մինչեւ այդ տեղն ունեցած միատարր ափերը յանկարծ դժուարանալով եզրերու կը փոխուին»։ Ասկէ ուրեմն երկու բան կը հետեւի. նախ՝ թէ Կարաքիլիսայի քով գետափերը միահարթ են, ինչպէս նաեւ ճակատամարտին նպաստաւորութիւնը կ'ենթադրէ, ու երկրորդ՝ թէ Մուրադ-չայի վրայով անցքն ու ճակատամարտը գետի հարաւային արեւելքին վարովը չէր կրնար

1 Յոյներն կրնէր որ շարունակաբար քալելով 162 քլմ. կտրելէ եաք՝ հինգ օր դադար ունեցան, եւ միշտ հինգ կամ վեց օր յաջորդաբար չու ելէ՝ յետոյ՝ երկու կամ երեք օր հանգիստ կ'ունենային ընդհանրապէս։

2 Ընդ. Էջ 666։

3 Ընդ. Էջ 666։

տեղի ունեցած ըլլալ, ինչու որ հոն գետեզերքն ապլեփ է ու դժուարամատոյց: Այս կէտը միայն բաւական էր հերքելու Ռոյնախի կարծիքը, եթէ միայն կարենայինք ապացուցանել, թէ ափերու այս գահավիժութիւնը մինչեւ Մելազկերտ, եւ գետ անկէ ալ անդին նոյնպէս կը շարունակուի, առանց հարթ ու միատարր ափերու փոխուելու: Այս նկատմամբ եւս իրերը շատ եւ շատ նպաստաւոր են մեր առաջին ճամբուն համար:

Խնդիրը ամբողջ կը տարբերի, եթէ գետէն անցքը Դիադինի քով տեղի ունեցած ըլլայ: Քօխ ու տեղւոյն մասին աւագագոյն Ա. Գ. Մաքինտօշի[1] ուղեգրական ուսումնասիրութիւններէն քաղելով հետեւեալ նկարագրութիւնը կու տայ. «Դիադին կը հանդչի դժուարամատոյց ափերուն վրայ Մուրադ-չայի, որ հոս նեղ կիրճէ մը դուրս կը հոսի»: Ու յետոյ քիչ մ'աւելի անդին[2]. «Ճամբան դէպ զառիվայր դիւրին մը վրայէն նեղ կիրճի մ'եզերքը կ'առաջնորդէ, ուսկէ Մուրադ-չայը կը հոսէ: Ժայռերու մէջէն առահեւ մը գետը ծամածուռ ճամբաներով դէպի խոնարհ կ'իջեցընէ ու գետին հանդիպակաց եզերքը կը հանէ»: Այս տեղագրութիւնն ուրեմն բնաւ համապատասխան չենք գտներ այն միահարթ ու տափարակ գետափին, որ Պլուտարքոսի քով յիշատակուած կը գտնենք: Հոս, հետեւաբար, չէր կրնար ճակատամարտ մը տեղի ունեցած ըլլալ: Դժբախտաբար ոչ ուրիշ կը հանդիպինք տեղե–

1 K. Koch. Die kaukasischen Länder, էջ 229.
2 Նոյն. էջ 230.

կութեան մը, թէ մինչեւ ուր կ'երկարին այս դժուարանց ափերը, եւ թէ արդեօք անոնք քաղաքէն քիչ մ'անդին արդէն հարթ եւ հաւասար եզերքներու փոխուած չե՞ն ըլլար։ Յամենայն դէպս Լուկուլլոս եթէ այս ճամբով Արածանի հասած ըլլար, ստիպուած պիտի ըլլար շա՛տ ու չափէն աւելի շատ քիլոմեթր գետն ի վար չուել, մինչեւ որ հասնէր տեղ մը, ուր ափերն աւելի մատչելի ըլլալով յարմարութիւն ընծայէին գետէն անցնելու։ Այսու սակայն, արդէն իսկ երկար ճամբան աւելի եւս երկարած պիտի ըլլար։ Նա համոզուած եմ որ Լուկուլլոս առաջին ճամբան միայն կրնար ընտրած ըլլալ, եւ այսպէս Արածանւոյ հովիտին մէջէն գետն ի վեր չուելով՝ վեցերորդ օրն Արշակերտի դաշտը հասնիլ ու Կարաքիլիսայի շրջակայքը գետին եզերքը բանակիլ։

Այս պարագաներու մէջ Տիգրան, բնականաբար, ստիպուած պիտի ըլլար, կամայ թէ ակամայ, միւս ճամբան ընտրել, գիտնալով հանդերձ անոր անյարմարութիւնն եւ անով աւելորդ ու մանուածապատ շրջաններ ընելու ստիպումը։ Նա սակայն պէտք ենք զայն ենթադրել, եթէ երկու բանակներու միեւնոյն կէտի վրայ միաժամանակ հասած ըլլալու պարագան կ'ընդունինք։ Տիգրան ուրեմն նախապէս մինչեւ Դիադին 170 քլմ., եւ անկէ ալ անդին մինչեւ Կարաքիլիսա գրեթէ դեռ 60 քլմ. ճամբայ կարած կ'ըլլար։ Դիադինի քովէն գետէն անցնիլն անհրաժեշտութիւն մը չէր Տիգրանի համար, որովհետեւ,

քանի որ Կարապիլիոս երթալ էր անոր նպատակը, կարող էր ձախակողման ափին երկայնութեանն այնքան յառաջ շարժել իւր բանակը, մինչեւ որ միասարքը գետնի վերածուող ափերն իրեն դիւրութիւն ընծայէին գետէն անաշխատ անցնիլ կարենալու։ Եւ զայս իրագործած կրնար ըլլալ նա Հաւանականագոյնս Համալեցիներէ շատ Հեռու գտնուող վայր մը, եւ յետոյ աջակողման եզերքն անոնց դիմաց բանակած։

Սորեմ Ցիգրան ասիպուած կ'ըլլայ գրեթէ 230 քլմ. ճամբայ ընել, որոնցմէ թերեւս քանի մը քիլոմետր խնայած ըլլայ Դիգրիսի անցքէն խուսափելով, եւ առր հետեւութեամբ նաեւ ճամբուն կազմած անկիւնը համառօտելով։ Այսու ուրեմն հայ հեծելազունդն իւր շորեքօրեայ գնացքի միջոցին օրական միջին հաշուով 57,5 քլմ. կրնար շատ դիւրաւ կտրած ըլլալ, եթէ միայն նկատենք, — զոր մենք հայկականներուն մասին կարող ենք պարահովապէս ենթադրել, — վարժ ըլլալին ճամբաներու անհարթութեան եւ կլիմայական պայմաններուն, նկատելով մանաւանդ որ ստուարագէն հետեւակ յոյն զօրականը կրցած էր վրայէ վրայ երեք օր անդադար քալելով օրական 54 քլմ. ճամբայ կտրել։ Յառաջ բերած այս ամէն պատճառներէս կը հետեւի որ Կարապիլիայէ անդին գտնուող վայր մը պէտք ենք փոխադրել Արածանւոյ ռազմադաշտը, որով միանգամայն կը յուսամ ապացուցած ըլլալ երկու հակամարտ բանակներու շուքին եւ ժամանակի մէկ կէտի վրայ իրարու

Հանդիպելով դէմ առ դէմ բանակած ըլլալուն Հնարաւորութիւնը։ Հոս, այս անգ միայն Մուրադ-չայ իր աջակողման եզերքին վրայ ընդարձակ դաշտավայրին մը կը պարզէ, ուր կարելի է առանց լեռնաշղթաներէ խանգարուելու, ամբողջ գիշերն ու ճակատամարտի ամբողջ տեւողու-թեանը, Հայ Հեծելազօրն անարգել Հետա-պնդել։ Ասկէ անդին, դէպի Արածանի եղած Հեռաւորութիւնն այնչափ էր[1], որ Լուկուլլոս Աղըր-դաղ լեռնաշղթան կարել անցնելէ ետք, կարող էր քանի մը օր միայն տեւող չուով անոր բերդերուն առջեւ բանակ զարկած նստիլ։

2.

*Չու Հռոմայեցւոց, յետ ճակատամարտի, մինչեւ Մծբին։*

Ալաշկերտի դիրքէն ու վերին Մուրադի գետաձորէն սկսեալ խրամէ տարբեր ուղղու-թեամբ երեք ճանապարհ կիրճեր Աղըր-դաղի վրայով Երասխի Հովիտը կ'իջնեն, եւ Մերձա-ւորապէս այն մարզը, ուր պէտք է թէ ընդունինք Արտաշատի դիրքը։ Ասկէ կը բացուի առաջին կիրճը, որ Կարաքիլիսէէ դէպի Կաղզուան կ'եր-կարի (55 քլմ.), երկրորդ մը՝ Դիադինէ դէպի Կուլփ (130 քլմ.), եւ վերջապէս երրորդ մը՝ Բայազիդէ դէպի Իգդիր, որուն երկայնու-թիւնը՝ Դիադինէ սկսելով, նոյնպէս 130 քլմ

[1] Ուղղագծաչափական օդային գծով. 120—130 քլմ.-Հեռու։

է։ Հարց է այժմ թէ այս երեքէն որ կիրճն նախընտրած կրնար ըլլալ Լուկուլլոս։ Խնդիր մը, զոր մերձաւորապէս իսկ ստուգել անհնար է, այս մասին խօսող, ոեւէ յիշատակութեան մը գոյութիւն չունենալուն պատճառաւ։ Այսչափը միայն սակայն ստոյգ կարելի է համարիլ, որ Լուկուլլոս մինչեւ Արղը-գաղ յառաջացած էր արդէն, երբ լեգէոնները հեստութեան ու ըմբոստութեան երեւան՝ տալով իր նպատակին հասնելու, եւ դառնալ ստիպուեցաւ։

Արդեամբք ալ, Պլուտարքոսի 32րդ գլխուն մէջ հռոմայեցի զինուորներուն տաժանաբայլ ու քրտնաթոր չուերու մասին եղած նկարագրութիւնը ինքնին իսկ կը համապատասխանէ այնպիսի բարձրավայր լեռնագօտւոյ մը, որ, հանգոյն հաստատուն միջնորմի մը, կը բարձրանայ ընդ մէջ Նիփատի ու Եփրատի, բաժնելով այսպէս իրարմէ անոնց հովիտները։ Անկայննկատելով այն պարագան որ զօրաց այս ըմբոստութիւնն ոչ թէ յանկարծ՝ այլ մի քանի օր յետոյ միայն կը պատահի (οὐ πολλὰς οὖν ἡμέρας ἀκολουθήσαντες τῷ Λουκούλλῳ μετὰ τὴν μάχην)[1], կարող ենք, կարծեմ, պարզուանի կիրճը մէկզի թողուլ. վասն զի եթէ Լուկուլլոս այդ ճամբով չուած ըլլար, դիւրաւ պիտի կարենար, երեք օրէն, Եփրատի հովիտը մտնել, որով միանգամայն զօրաց տաժանքն ու տառապանքը գոնէ որոշ չափով մը խնայուած պիտի ըլլային անոնց։ Այդ

1 Ոչ բազում ինչ աւուրս, յետ ճակատուն, զհետ գնացեալ զՂուկուլլոսի։

վիճխարի լեռնաշղթային անցնելով եթէ ան-
գամ մը Նորանիի՝ համեմատաբար ջերմագոյն
հովիտը մտնէին Հռոմայեցիք, անտարակոյս պիտի
նախընտրէին անոնք երթալ Արտաշատը գրաւել
ուելի՝ քան թէ այսքան տառապանքէ յետոյ,
առանց բան մը վճարած ըլլալու, եկած ճամ-
բուն դառնութիւնները կրկին անգամ վրայէ
վրայ ճաշակել։

Տարբեր է սակայն խնդիրը միւս երկու
կիրճերու նկատմամբ։ Հօս նախ հարթայատակ
դաշտագետնի մը վրայէն երեք օր շարունակ
քալելով կարելի է, չորրորդ օրը միայն, լեռ-
նուղին մտնել։ Այսու ահա որոշ կը հաս-
կըցուի, թէ ինչու զինուորները՝ լեռան գա-
գաթը դեռ չհասած, սոսկացած կ'ըլլան զԼու-
կուլլոս ետ դառնալ։ Ուրիշ փաստ մը եւս
Եթէ Լուկուլլոս Կաղղուանի ճամբով չուած
ըլլար, եւ նահանջելու համար եւս անտա-
րակոյս միեւնոյն ճամբան բռնած պիտի ըլլար.
վասն զի ուրիշ ո՛եւէ ճամբով դառնալ ու-
զելն իրեն ահագին շրջան մ'ընել պիտի նշա-
նակէր, որմէ իրաւամբ խուսափել ստիպուած էր
նա, թշնամւոյն երկրին խորերէն որչափ հնար է
շուտ դուրս ելլելու եւ իր ըմբոստ գունդերը
ջերմագոյն գաւառներ առաջնորդելու հոգէն
մղուած։

Թէ Լուկուլլոս իսկապէս տարբեր ճամբով
դարձած էր՝ ուղղակի կը հետեւի Պլուտարքոսի
32րդ գլխուն սա տեղիքէն. ἀπῆγεν αὐτοὺς ὀπίσω
κατ' ἄλλας ὑπερβολὰς διελθὼν τὸν Ταῦρον

*նէն[1]։ Այս տակայն վերջին Ուրարդի ձորէն բացուող ճամբայ մը միայն կրնար եղած ըլլալ, որ Վանայ լճին արեւելքէն շրջապատոյտ կ'երկարի դէպի Հարաւ։ Այս հաւանականութիւնն արդէն Ռայմանի ուշադրութենէն չէր վրիպած[2], եւ թելադրած էր անոր ուղղամտեղին Մելազկերտի քովերը փոխադրել։ Այսու հանդերձ տակայն դարձեալ ստիպուած պիտի ըլլար Լուկուլլոս ահագին շրջան մ'ընել։ Հոս ակնյայտնի կը տեսնուի, որ Վանայ լճին արեւելքէն շրջապատոյտ բալորող ճամբաներէն՝ Դիադինի, կամ լաւ եւս ուղղակի Իգդիրէ մեկնելով Բայազիդի դաշտագետինը կարող երկրորդ կիրճին ճամբան միայն ամենայարմարը կրնար եղած ըլլալ Լուկուլլոսի նահանջին համար։ Անկէ անդին նա իր արշաւադրութեան ատեն կ'ունենար զանազան ճամբաներ, որոնց վրայէն — առանց շատ մեծ շրջան մ'ընել ստիպուելու — Տիգրիս հասնելով, կարող էր դայն հանել Մուսուլի եւ կամ Ջեզիրէ-իբն-Օմարի (= Սափիէ) քովէն։ Թէեւ Սեպտեմբերի կէսէն մինչեւ Հոկտեմբերի կէսը Տիգրիսի ջուրերը կը նուազին[3], տակայն եւ այնպէս Մուսուլի քովէն գետն — ըստ բերանացի վկայութեան Լէման-Հաուպտի — բացարձակապէս անանցանելի ըլլալուն, հնար էր դայն հանել Ջեզիրէ-իբն-Օմարի քովէն, ուր Տիգրիս՝ բաղմաթիւ ճիւղերու*

---

[1] Խաղաղացոյց գետոց յետոյ, եւ ընդ այլ ճանապարհ ելանց ըստ Տաւրոս։

[2] Անդ, էջ 366. ծնթ.։

[3] Հմմտ. Կաուլէն, Assyrien u. Babylonien, էջ 10։

բաժնուած, կը շարունակէ հոսիլ։ Անկէ ուրեմն կը հետեւի թէ Համայեցիք այս քաղաքին քաղէն միայն կարող էին գետին հանդիպակաց եզերքն անցնիլ։ Անգամ՝ մը որ գետն անցան, ալ այնուհետեւ բաց էր իրենց առջեւ Մծբինի ճամբան։

Այսու ուրեմն կ'որոշուի հռոմէական լեգէոններու, Վանայ լճին արեւելքէն, շրջապատոյս նահանջին ելակէտն ու վերջակէտը գլխաւորն։ Վերին Մուրատի հովտէն (Դիադինէ) եւ Բայազիդի դաշտավայրէն դէպի Ջեզիրէ-իբն-Օմար տանող բազմաթիւ ճամբաներ կան։ Դժբախտաբար սակայն այդ ճամբաներու հանգամանաց, ու զօրաբանակներու համար անոնց անցանելի կամ անանցանելի ըլլալուն մասին ճառող ուղեգրական վստահելի աղբիւրներ մեզ կը պակսին։ Այս պատճառաւ ես երբեք ի վիճակի պիտի չըլլայի հռոմէական բանակի նահանջին համար հաւանականագոյն ճամբան մատնանիշ ընել, եթէ Լեման-Հաուպտ իր ուսումնական արշաւանքի միջոցին անձամբ տեսածներն եւ իր գիտական հետազօտութիւններու արդիւնքն ինձ եւս ազնուաբար հաղորդած չըլլար։

Հայաստանի այն մասին համար մեր տրամադրութեան տակ կ'ունենանք, հետեւաբար, հետեւեալ ճամբաները, որոնց ուղղութեան հետեւիլ կարենալու համար անհրաժեշտ է աչքի առջեւ ունենալ Լինչի ու Կիպերտի քարտէսները հաւասարապէս, վասն զի շատ կէտերու մէջ մէկը միւսով կարելի է լրացնել։ Հոս ես հետեւո-

բար պիտի նշանակեմ հետազօտութիւններուս զուտ արդիւնքը՝ քաղուած կրկին քարտէսներու համեմատութենէն։

1. Կըզըլդիզէյէ[1] Վ.անի, Բաշկալայի, Ջուլամերկի վրայով ուղղակի դէպի Ջեզիրէ։ Այս ճամբան Վ.ան հասնելէ յառաջ երկուքի ճիւղաւորուելով՝ մին ուղղակի արեւելեան եզերքէն Վ.անայ լճին շրջապատոյն կը բոլորէ, մինչ երկրորդը դէպ արեւելք երկարելով Առճակ[2] (Թըր. Էրճէք) լճին եզերքը կը քերէ։ Երրորդ ճիւղ մը եւս դեռ աւելի դէպ արեւելք երթալով՝ երկրորդին հետ կը միանայ Առճակ լճին քով։

2. Մինչեւ Ջուլամերկ 1ի հետ համաշաւիղ. անկէ անդին Դաւուդիյէի կամ Ամադիյէ-Դաւուդիյէի վրայով դէպի Զախոյ, ու դեռ աւելի անդին դէպի Ջեզիրէ։

3. Մինչեւ Վ.ան (տե՛ս 1), յետոյ ուղղակի դէպի Ջուլամերկ, իսկ անկէ ալ անդին 1 եւ 2։

4. Կըզըլդիզէյէ սկսեալ Սէրայի վրայով դէպի Բաշկալա, ու յետոյ 1 կամ 2, եւ կամ

5. Դիզայի, Նէրայի վրայով դէպի Ռեվանդուզ, եւ անկէ կամ Պեշկանի ու Բաշհեշիկայի՝ եւ կամ Արբելայի (Թըր. Էրբիլ) վրայով դէպի

---

[1] Եւ այս վայրը կ'ըմբռնեմ իրր եզակէտ. նախ՝ վասն զի նա Դիադինի ու Բայազիդի մէջն կը գտնուի, եւ երկրորդ՝ վասն զի Դիադինէ ու Բայազիդէ մեկնող բոլոր ճամբաները, որոնք մեր խնդրոյն հետ ուղղակի աղերս ունին, Կըզըլդիզէի ճամբաներուն կը միանան։

[2] Վ.անայ լճէն իրր 30 քըմ. դէպ արեւելք կը տարածուի Առճակ լիճը. այսպէս կոչուած մերձակայ Առճակ քաղաքին անունով։

Մուսուլ։ Մուսուլէ անդին Պէյշաբուրի վրայով դէպի Ջեզիրէ։

7. Կըզըլդիզէ - Խոյ - Դիլման - Ուրմիա - Ուշնուէ՝ Քէլիշին կիրճի վրայով դէպի Ռեւանդուզ, ու յետոյ 4 կամ 5։

8. Մինչեւ Դիլման, յետոյ Սալմաստ-թաղէր կիրճ-Դէյր-Բաշկալա, եւ անկէ անդին 1 կամ 2։

Պաշտպանողի համար այս ութ ճամբաները միայն ունէր լուծելու իր արժանաւորութեան ներքեւ. եւ ենթադրելով իսկ թէ փոքրիկ շեղումներ եւս կարենար ըրած ըլլալ նա իր շուրի միջոցին, այսու հանդերձ այդ յեռնակողմերու գետերին ընտութենէն միայն դատելով, անհնար էր որ այս հաղորդակցութեան գծերէն դուրս՝ հնութեան մէջ, ուրիշ ճամբաներ եւս գոյութիւն կարենային ունեցած ըլլալ։ Այս պատճառաւ ներուի ինձ, ուսումնասիրութեանս ընթացքին մէջ, այժմեան աւորական անուններր գործածել։

Ճամբաներու այս ցանկէն մենք նախ եւ յառաջ կը ջնջենք այն ճամբաները, որոնք Ռեւանդուզի վրայով դէպի Մուսուլ կամ Պէյշաբուր կ'իջեցնեն, զորոնք Լեման-Հաուպտ, որ անձամբ կտրած է զանոնք, բացարձակապէս անանցանելի կը գտնէ Ռեւանդուզէ դէպի Մուսուլ, Երբելա կամ Պէյշաբուր շուտ զօրաբանակի մը համար։ Քէլիշինի համեմատաբար շատ աւելի հեշտ կիրճին վրայով Ռեւանդուզ դալ ուղղը Ներա, Դիզա եւն. կը հասնի, որ է ըսել Վա-

նայ լծին հիւսիսակողմերը՝ եւ ոչ թէ Տիգրիսի եզերքը։ Բաց աստի, այս երեք ճամբաներն ամէնէն երկարագոյններն են. վանէն 5ը՝ 687 քլմ., 6ը՝ 622 քլմ., իսկ 7ը՝ մինչեւ 725 քլմ.՝ յարաբերաբար 660 քլմ. է։ Հետեւաբար Քէլիշինի վրայով զօրաշու մը դէպի Ռեվանդուզ անհնար է մտածուիլ։

Թիւ 1 ճանապարհն, ինչպէս վերեւ տեսանք, երեք առաջքով դէպի Վան կը յառաջանայ։ Այս ճամբան, ըստ երեւութին, շատ դիւրացնաց կը թուի ըլլալ, թէեւ զերծ չըլլայ բարձրագագաթ բազմաթիւ լեռնակողերէ, զորս հարկ է անպատճառ վերելակել. այսպէս գլխաւորաբար միջինճամբան, որ 7345 եւ 6120 անգլ. ոտք[1] (=2277 եւ 1897 մետր) բարձր կիրճերու վրայով կ'անցնի։ Անհամեմատ դժուարութիւնը սակայն Վան-Բաշկալա օթեւանին վրայ ծանրացած է, զոր լաւ ուսումնասիրած է Լեման-Հաուպտ։ Հոս, Վանի քով նախ 7080 ոտք (=2195 մ.) բարձրութեամբ կիրճէ մը հարկ է անցնիլ, որ յիշեալն շատ դժուար չէ. յետոյ սակայն պէտք է բարձրանալ 9070 ոտք (=2811 մ.) բարձրութեամբ Զուխ կիրճը, որուն անցքն արտաքոյ կարգի դժուարին է։ Այս ահաւոր կիրճը Լեման բացարձակապէս անանցանելի կը նկատէ բանակի մը համար, եւ այսու իսկ արդէն այդ ճամբան եւս մեզ համար իր նշանակութիւնը կորսնցուցած կ'ըլլայ։ Երրորդ

---

[1] Բարձրութիւններու այս չափերն ըստ Լինչի են՝

ճիւղը՝ Պաշկալա-Ջուլամերկ, կատարելապէս անցանելի է։ Այս ճամբան, որ մանաւանդ դժուարութիւն մը չի ներկայացըներ, կը քերէ մեծ Զարի ձորին երկայնութիւնը։

Անըմբռնելի է ինձ Ջուլամերկէ մինչեւ Ջէզիրէ ուղղագիծ ճանապարհը, որ միայն Կիպերտի քով կը տեսնուի։ Զգիտեմ ինչ պատճառի համար Կիպերտեան քարտէսը այդ երկրամասին՝ առանց լեռները նշանակելու, սպիտակ թողուցեր է։ Մինչդեռ Լինչի քարտէսին վրայ նետուած հարեւանցի ակնարկ մը բաւական է ցոյց տալու, որ այդ կողման կուտակուած բարձրութիւններուն մէջէն ճամբայ մը երեւակայել իսկ անհնար է։ Ենթադրելով իսկ թէ 427 քլմ. եղած ըլլար այդ անյայտ ու անստոյգ ճամբուն երկայնութիւնը, մենք դարձեալ պիտի չկարանէինք զայն անյարմար նկատել՝ բնութեան հոն ներկայացուցած անյաղթելի դժուարութեանց պատճառաւ։

Թիւ 3 ճանապարհն ալ գրեթէ նոյնքան դժուարանցանելի է։ Ասոր սկիզբն ու կատարածը 1ի հետ կը նոյնանայ, միջինը՝ Վան-Ջուլամերկ, ինչպէս նաեւ կատարածը՝ Ջուլամերկ-Ջէզիրէ այնպիսի անվարուն լեռնակողմերէ կ'առաջնորդեն, որ զօրաբանակի մը չուի մասին խօսք ընել կարելի չէ։

Թիւ 2ին առաջին մասը՝ մինչեւ Պաշկալա, չենք կրնար նկատի առնուլ, թիւ 1ի նկատմամբ վերը մեր յառաջ բերած պատճառներու հետեւութեամբ. իսկ Պաշկալայէ-Ջուլամերկ գիծը

տեսանք արդէն թէ մեծ դժուարութիւն չէր յարուցանել։ Նոյնը կարող ենք ըսել նաեւ անոր վերջին մասին նկատմամբ։ Մինչդեռ Ցուլամերկ-Դաւուդիյէ ուղղակի ճամբան մեծ մասամբ լեռնուղին բաղկացած է, դէպի Ամադիյէ՝ ու ստի ալ անդին դէպի Դաւուդիյէ տանող ճորուղին ամբողջապէս փարուն է, եւ ոչինչ ունի տաժանելի, ինչպէս որոշ կը տեսնուի Լինչի քարտէսէն, եթէ վերին Մեծ Զաբի ձորին դիրքն հոն մի անգամ աչքէ անցընենք։ Զախոյի վրայով դէպի Ջեզիրէ երկարաձգուող ճանապարհը նմանապէս շատ բանուկ կ'երեւայ, եւ գրեթէ հանգիստ։ Ուստի եւ Բաշկալա-Ցուլամերկ-Ամադիյէ-Դաւուդիյէ-Զախոյ-Ջեզիրէի վրայով չու մը անկարելի չ'երեւար, եւ այս պատճառաւ, ի միրձուստ քննութեան արժանի է։ Արդ, այս ճամբուն երկայնութիւնն 245 քլմ. է։ Տարբեր պէտք է սակայն կշռել դէպի Բաշկալա ծրագրուած զօրաշու մը, զոր, ինչպէս տեսանք, Վանի վրայով կարելի չէր արդիւնաւորել։

Մինչեւ ցարդ մեր քննութեան ենթարկած այս զանազան ճամբաներու մէջէն ուրեմն Արզըլդիկէյէ Սէրայի վրայով դէպի Բաշկալա տանող 4րդ ճամբան է ամենահեշտագոյնը։ Սակայն այս ճամբան Վանէ մեկնող ճամբուն Շուշմայերգի մօտ միանալով՝ Զուխ կիրճէն անցք մը կը պայմանաւորէ նմանապէս։ Մէկ խօսքով, որովհետեւ մեր 5, 6 եւ 7 ճամբաները՝ ուղղակի Ոսկեվանդուղի հետ հաղորդակցութեան գիծ ըլլալնուն համար, մէկդի թողուլ ստիպուած

էինք, հետեւաբար մեզ կը մնայ դեռ վերջին ճանապարհն եւս հօս քննութեան առնել։

Թէեւ խոտոր ու երկայնաձիգ, սակայն աներկբայաբար շատ աւելի բանուկ է մէկալներէն այս ճանապարհը։ Դա համաշաւիղ է Բայազիդ-Սուրմա ատաղմուղւոյն մինչեւ Գիլման, ուսկէ անդին Սալմաստի եւ 8100 ոտք (2511 մ.) բարձրագիր՝ այլ ոչ դժուարագնաց, Թաղիք կիրճին վրայով դէպի Դէյր ու Բաշկալա կ'երկարի։ Այս կիրճին ներկայացուցած ճամբան ա՛յնքան աւելի դիւրագնաց է, որքան Դէյր ինքնին բարձրագիր ըլլալուն՝ ճամբան եւս աստիճանաբար ու կամաց կամաց դէպի Բաշկալա կը խոնարհի։ Այսու ուրեմն կ'ունենանք դէպի Բաշկալա երկարաձգուող ամենալաւ եւ միանգամայն դիւրագնաց ճանապարհը։ Նա ունենալէ յետոյ թէ Բաշկալայէ ալ դեռ անդին զօրաբանակներու համար անցանելի ճամբայ մը կ'երկարի դէպի Ջէզիրէ, կարող ենք անվարան ընդունիլ, որ Լուկուլլոս ամէն պարագայի մէջ այս ճամբան միայն կրնար ընտրած ըլլալ։ Նո՛յն իսկ եթէ նա 500—520 քլմ. երկայն եղած ըլլար, այսու հանդերձ ստիպուած էր հռոմայեցի զօրավարն ամէն բանէ յառաջ այնպիսի ճամբայ մը ընտրել, որուն վրայէն կարենար իր վաստակաբեկ ու անգոհ բանակը կարելի եղածին չափ քիչ յոգնութեամբ քալեցնել։ Արդեամբք ալ պահանջուած ամէն պայմաններուն լիովին կը համապատասխանէր մեր այս ճամբան։

Բաց աստի, միջավայրի պայմաններուն լիա-

կատար ծանօթութենէ զուրկ անձի մը համար՝ — որ բնականաբար աւելի պիտի նախընտրէր մանուածապատ շրջաններ ընել, քան թէ դժուարանցանելի կիրճերու մէջ մխրճուիլ, — այս ճամբան է միմիակ ընտրելին։ Նա խորանխոտ գետնի մը վրայով Թենդուրէք բարձր լեռն արեւելքէն շրջապատոյտ դառնալէ յետոյ՝ մեր երկու քարտէսներուն վրայ որոշ նշանակուած ձորէ մ'անցնելով դէպի Խոյ կը դիմէ ուղղակի։ Յետոյ մինչեւ Դիլման փոքրիկ բարձրութենէ մը կ'անցնի, որուն՝ — առանց մեծ շրջան ընել սախպուելու, — կարելի է, ըստ Կիպերտի քարտէսին, մինչեւ իսկ շուրջը դառնալ։ Դիլմանէ սկսեալ արեւմեան ուղղութեամբ նա գրեթէ ուղիղ գծով դէպի Թաղէր կիրճը կը շարունակուի, որ Հարաւին ու Քէլէկոյ լեռներու միջեւ ակներեւ պարկէն մը կը ձեւացընէ բարձր լեռնաշղթային վրայ, որ ջրաբաժան է ընդ մէջ Ուրմիոյ լճին եւ Զարի, եւ այսու միանգամայն Տիգրիսի։ Քաշկալայէ դէպի հարաւ-արեւմուտք երկարող Զարի ձորը դարձեալ բնութեան կողմէ մատնանշուած միմիակ յարմարագոյն ճանապարհն է, որ կարճարերձ լեռներու վրայով Զարի մէկ օժանդակը՝ Պարաշայի ձորը կը հանէ, եւ անկէ ալ ի վերջոյ Խարբուրի հովիտը՝ աւելի դէպ արեւմուտք։

Այսպէս ուրեմն մերձաւորապէս 500 քլմ. շուելէ յետոյ կը հանի Լուկուլլոս Տեղկրէ[1]։ Այս

[1] Անկէ անդին մինչեւ Մծբին դեռ 100 քիլոմեթր պիտի քալէին Հռոմայեցիք, որով ընդ ամէնը իրր 500 քլմ. ճամբայ կտրած կ'ըլլային անոնք։

Թուին առաջին ակնարկով թերեւս քիչ մը չափազանցուած երեւայ. սակայն եթէ նկատի առնունք, որ Հռոմայեցւոց ներկայ պատերազմին սկիզբը գործածած ճամբան Ջեզիրէ սկսելով իբր 480 քլմ. երկայն էր, ի հարկէ 20 քլմ.ի չնչին տարբերութիւնը ընաւ նշանակութիւն չի կրնար ունենալ: Հետեւաբար, Վանայ լճին արեւելեան կողմէն երկարող մեր այս ճամբուն խոտորնակ եղած ըլլալուն խօսքն ընելն իսկ աւելորդ կը համարիմ ես, քան որուն՝ դէպի Հայաստան արշաւանքի համար գործածուած ճամբէն 20 քլմ. միայն աւելի երկայն էր: Արդ, եթէ օրական չուելու միջին արդիւնքն — անհրաժեշտ դադարի օրերն եւս միասին հաշուելով — 20 քլմ. դնենք, կարող էր Լուկուլլոս՝ ըմբոստութեան պատերազմէն հինգ կամ մինչեւ վեց շաբաթ յետոյ, առանց նեղուելու, Մծբին մտանել: Իսկ եթէ դիւրացնող ճամբաներու վրայէն չուն առաւել եւս փութացնելով՝ օրական արդիւնքը մինչեւ 25 քլմ.ի բարձրացնէր, կարող էր նա նոյն իսկ մէկ ամսէն իր նպատակին հասնիլ: Եթէ ուրեմն հռոմէական նահանջը Սեպտեմբերի 25ին տեղի ունեցած էր, հնար էր հետեւեալ ամիսը՝ Հոկտեմբերին, ինքըն Մծբինի պաշարման ձեռնարկել, ինչ որ լիովին կ'արդարացընէ մեր վերեւ յայտնած կարծիքը: —

Մծբինի գրաւումէն՝ իր այս վերջին յաջողութենէն յետոյ, Լուկուլլոս իր բանակովը,

*ինչպէս տեսանք, հոն ու դրացի կորդուաց երկրին սահմաններուն մէջ ձմերեց, եւ այսու վերջացան հայ-լուկուլլեան համբաւաւոր պատերազմներն, ու հռոմէական լեգէոններու այս առաջին արշաւն դէպի Հայաստան։*

---

# ՑԱՆԿ ԱՆՈՒԱՆՑ

(ա. — ամրոց. — գ. — գիւղ. — գա. — գաւառ. — լ. — լեռ. — կ. — կիրճ. — տ. — տեղի. — ք. — քաղաք.)

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՀԱՏՈՒԱԾ Ա.

## ՀԱՅԱՍՏԱՆ ՏԻԳՐԱՆԻ ՕՐՈՎ՝ ՊԱՏԵՐԱԶՄԷ ՅԱՌԱՋ



## ՀԱՏՈՒԱԾ Բ.

## 69Ի ՊԱՏԵՐԱԶՄԻ ՏԱՐԻՆ

### *Գլուխ Ա.*

### *Մինչեւ Տիգրանակերտի պաշարումը.*

## Գլուխ Բ.

*Լուկուլլոս Տիգրանակերտի առջեւ:*



## Գլուխ Գ.

*Ճակատամարտին, ու Տիգրանակերտի գրաւման հետեւանքը:*



## ՀԱՏՈՐԻԿ Գ.

### 68Ի ՊԱՏԵՐԱԶՄԻ ՏԱՐԻՆ

## Գլուխ Դ.

*Պատրաստութիւնք երկու թշնամի բանակներու, եւ արշաւանք Լուկուլլոսի դէպի հայկական բարձրաւանդակ:*

## Գլուխ Է.

*Պատմական մաս զօրաշարժերու եւ ընդհարումներու։*



## Գլուխ Ը.

*Տեղագրական մաս երրորդ տարւոյ պատերազմներու եւ զօրաշարժերու։*



---

